## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10 էջ, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6 էջ, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը:

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին:

Նույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8 ՕԳՈՍՏՈՍ · 1967
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов»-теоретический и политический журнал ЦК КП Армении



Государственная БИБЛИОТЕКА СССР им. В. И. Ленина

27259


## Բովանդակություն




digitised by A.R.A.R.@

Содержание



# ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԵԾ ՈՒԺԸ

Կոմունիստական շինարարության բազմաբեղուն առօրյայով խանդավառված Սովետական Միության աշխատավորները, կատարելով իրենց պատմական միսիան, եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդների, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման, ամբողջ առաջադեմ մարդկության հետ միասին ըստ ամենայնի նախապատրաստվում են հանդիսավորությամբ տոնելու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակը: Դա քաղաքական խոշոր նշանակություն ունեցող իրադարձություն է, որը սովետական ժողովրդին, աշխարհի բոլոր առաջադեմ մարդկանց թևավորում է հանուն նորանոր սխրագործությունների, հանուն կոմունիզմի, սոցիալիզմի, դեմոկրատիայի, ապատության ու խաղաղության:

Պատմական տոնի նախապատրաստման ամեն մի օրը լի է սովետական հերոս ժողովրդի մեծագործություններով, նոր հնգամյա պլանի, հոբելյանական տարվա սոցիալիստական պարտավորությունների իրագործման ուղղությամբ ձեռք բերված հաջողություններով, մեր բանվոր դասակարգի, գյուղացիության և ինտելիգենցիայի քաղաքական ու արտադրական բարձր ակտիվությամբ: Իրենց ստեղծագործական ուժերի ծաղկման ու հզորացման պայմաններում գնալով դեպի Մեծ Հոկտեմբերի 50-ամյակը, նրանք ավելի սերտորեն են համախմբվում կոմունիստական կուսակցության ու նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը: Հանձինս կոմունիստական կուսակցության, սովետական ժողովուրդը տեսնում է իր պայքարի և հաղթանակների կազմակերպչին, որն առաջնորդվել ու առաջնորդվում է Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքով:

Կոմունիստական կուսակցության անմիջական ղեկավարությամբ սովետական ժողովուրդը խոշոր հաջողություններ է ձեռք բերել ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության բոլոր բնագավառներում, ստեղծել է երկրի ամուր ու անխորտակ պաշտպանություն: Իր ղեկավարման սկզբունքը դարձնելով գիտության ու քաղաքականության օրգանական միասնությունը, կուսակցությունն ապահովում է երկրի անընդհատ վերելքը, ամեն ինչ անում ժողովրդի բարօրության համար, մասսաներին դաստիարակում հայրենասիրության, կոմունիզմին նվիրվածության ոգով: Կուսակցությունն իր ուժերը քաղել ու քաղում է ժողովրդից, իսկ ժողովուրդը վստահել ու վստահում է նրան, որի փորձված ղեկավարությամբ կոմունիզմ է կառուցում:

Քաղաքական այս կարևորագույն սկզբունքները պարզորոշ շարադրված են ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի հավանությանն արժանացած Մեծ Հոկտեմբերի 50-ամյակին վերաբերող Կենտրոնական կոմիտեի Թեզիսներում: Ամ-



digitised by A.R.A.R.@

փոփելով Հոկտեմբերյան հաղթանակից հետո սովետական ժողովրդի անցած ուղու պատմական արդյունքները, այդ կարևորագույն փաստաթուղթը միաժամանակ ընդհանրացնում է նոր հասարակարգի կառուցման վիթխարի փորձը, սահմանում նրա զարգացման ներկա էտապի հիմնական խնդիրները:

«Անցած տասնամյակներում,—ասված է ՍՄԿԿ Կենտկոմի Թեզիսներում,— Հոկտեմբերյան հեղափոխության գործը պատմական համակողմանի ստուգում է անցել, ցույց է տվել իր անհաղթահարելի ուժը, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների անանց նշանակությունը ինչպես մեր երկրի, այնպես և ամբողջ մոլորակի ժողովուրդների համար: Այդ գործն ապրում է ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի և կոմունիստական շինարարության նվաճումների մեջ, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման, բանվորական շարժման հզոր թափի, ազգային-ազատագրական պայքարի մեջ: Մարքսիզմ-լենինիզմը դարձել է հողագնդի հարյուր միլիոնավոր մարդկանց մտքի տիրակալը, կոմունիստական շարժումը վերածվել է արդիականության ամենաազդեցիկ քաղաքական ուժի»: Հոկտեմբերյան հեղափոխության հիսնամյակի բարձունքից նայելով պայքարի ու կառուցման անցած ուղուն, սովետական ժողովուրդն իրավամբ հպարտանում է ձեռք բերված հաջողություններով և իր փորձված առաջնորդի՝ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ընթանում է հաղթանակից հաղթանակ:

❊❊❊

1917 թվականի հոկտեմբերին Վ. Ի. Լենինի գլխավորած բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ Ռուսաստանի բանվորների, գյուղացիների, զինվորների և նավաստիների զինված ապստամբության շնորհիվ հաղթանակած սոցիալիստական հեղափոխությունը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ: Այն վերջ տվեց կապիտալիստների ու կալվածատերերի տիրապետությանը, խորտակեց շահագործման ու ճնշման հասարակարգը և ամբողջ իշխանությունը հանձնեց աշխատավոր ժողովրդին: «Հեղափոխությունը,— ասված է Թեզիսներում,—հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա, ստեղծեց պետության նոր տիպ՝ սովետների սոցիալիստական հանրապետություն, դեմոկրատիայի նոր տիպ՝ դեմոկրատիա աշխատավորների համար: Դրանով իսկ ստեղծվեց էկոնոմիկայի և կուլտուրայի վերափոխման, բանվոր դասակարգի մեծ նպատակի՝ սոցիալիզմի և կոմունիզմի նվաճման առաջին և գլխավոր քաղաքական պայմանը»:

Այդ ամենը կատաղեցրին ներքին հակահեղափոխական ուժերին և միջազգային իմպերիալիզմին, որոնք միասնական ճակատ կազմած՝ բացահայտ կռվի դուրս եկան նորաստեղծ սովետական իշխանության դեմ՝ ցանկանալով օրորոցում խեղդել նրան: Հեղափոխության նենգ թշնամիները անհամար տառապանքներ բերին մեր ժողովրդին, բայց չկարողացան նրան հաղթել: Աշխատավորական լայն մասսաները վճռականորեն պաշտպան կանգնեցին հեղափոխության նվաճումներին ու պայքարում ծնված բանվորա-գյուղացիական կարմիր բանակի հետ միասին ջախջախեցին ներքին ու արտաքին թշնամիներին: Հանուն սովետական իշխանության, հանուն ազատության և երջանիկ ապագայի պայքարեցին սովետական բոլոր ազգերի ու ժողովուրդների աշխատավորները: Այդ սրբազան պայքարում նրանք ստանում էին միջազգային պրոլետարիատի, ամբողջ աշխարհի աշխատավորության եղբայրական օգնությունը: Սովետական երկիրը՝ ամբողջ աշխարհի աշխատավորության հույսն ու ապավենը, հերոսաբար դի-



մադրեց և հաղթեց թշնամուն, որով և ամուր հիմքեր ստեղծեց սոցիալիստական հասարակարգի կառուցման համար:

Սոցիալիստական շինարարության ճանապարհը լի էր լուրջ դժվարություններով, որոնց հաղթահարումը մեծ ջանքեր ու զրկանքներ պահանջեցին: Չպետք է մոռանալ, որ մենք խաղաղ շինարարություն ձեռնարկեցինք, երբ ավերված էր արդյունաբերությունը, երբ քայքայված էր գյուղատնտեսությունը:

Սովետական ժողովուրդը հերոսաբար հաղթահարեց այդ դժվարությունները և մեն-մենակ, իր սեփական ուժերով առաջ տարավ սոցիալիստական շինարարությունը: Այդ դժվարին գործում ժողովրդին առաջնորդում էր կոմունիստական կուսակցությունը, որը նրան զինեց սոցիալիզմի կառուցման լենինյան պլանով: Այդ պլանը նախատեսում էր երկրի ինդուստրացում, գյուղատնտեսության սոցիալիստական կոոպերացում և լայն մասշտաբներով կուլտուրական հեղափոխության իրագործում:

Կոմունիստական կուսակցությունը, բանվոր դասակարգը սոցիալիզմի կառուցման լենինյան կուրսը պաշտպանեցին և կենսագործեցին տապալված շահագործող դասակարգերի մնացորդների, «ձախ» և աջ օպորտունիստների դեմ մղված դասակարգային կատաղի պայքարում: Ջախջախելով ու դեն շպրտելով տրոցկիստների մանրբուրժուական ավանտյուրիզմը, աջ օպորտունիստների կապիտուլյանտությունը, կուսակցությունը սովետական ժողովրդին տարավ լենինյան ուղիով:

Ելնելով երկրի զարգացման ու նրա անկախության պաշտպանության շահերից, կուսակցությունը բոլոր միջոցները գործի դրեց *սոցիալիստական ինդուստրացումը արագ թափով առաջ տանելու համար:* Այդ գործում անգնահատելի դեր խաղացին ԳՈԷԼՌՕ-ի լենինյան պլանը և ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանները, որոնց իրագործմամբ Սովետական Միությունը դարձավ հզոր ինդուստրիալ տերություն: Սեփական միջոցներով կարճ ժամանակամիջոցում ստեղծվեցին արդյունաբերության միանգամայն նոր ճյուղեր, որոնց շնորհիվ արդյունաբերության համախառն արտադրանքը 1950 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճեց 7,7, իսկ արտադրության միջոցների արտադրությունը՝ 13 անգամ: Զգալիորեն մեծացավ նաև ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը:

Երկրի ինդուստրացման պլանի հաջող կենսագործումը պայմաններ ստեղծեց միլիոնավոր գյուղացիական մանր, փոշիացած ու հետամնաց տնտեսությունները սոցիալիստական հիմքերի վրա փոխադրելու համար: *Սոցիալիստական հիմունքներով գյուղատնտեսության վերափոխումն ամենաբարդ ու դժվարին խնդիրն էր պրոլետարիատի կողմից իշխանությունը նվաճելուց հետո:* Այդ կարևորագույն հեղափոխական խնդրի լուծման հիմքում դրվեց լենինյան կոոպերատիվ պլանը:

Գյուղատնտեսության կոլեկտիվացման շնորհիվ մանրապրանքային կացութաձևն իր տեղը զիջեց սոցիալիստականին: Կոլտնտեսություններում միավորված գյուղացիները բռնեցին սոցիալիզմի ուղին, որով ավելի ամրապնդվեց բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը: Կոլտնտեսային կարգի հաղթանակի շնորհիվ գյուղում տնտեսական հարաբերությունների հիմքը դարձավ սոցիալիստական սեփականությունը, խոշոր չափով աճեց գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, բարելավվեցին կոլտնտեսականների կուլտուր-կենցաղային պայմանները, բարձրացավ նրանց կենսամակարդակը:

Մեր երկրում սոցիալիզմի կառուցման կարևոր արդյունքներից մեկն էլ



digitised by A.R.A.R.@

*կուլտուրական հեղափոխության իրագործումն էր:* Այդ բնագավառում ևս կուսակցությունը հսկայական ջանքեր գործադրեց: Նա ղեկավարվում էր լենինյան այն ցուցումով, որ սոցիալիստական կուլտուրան կարող է ստեղծվել անցյալի հոգևոր ժառանգության, համաշխարհային մշակույթի բոլոր արժեքների յուրացման և քննադատական վերամշակման հիման վրա, շահագործող դասակարգերի հետադիմական գաղափարախոսությունը, անցյալի վերապրուկներն ու նախապաշարումները վճռականորեն հաղթահարելու միջոցով, աշխատավորներին գիտական կոմունիզմի գաղափարներով պինելով:

Չնայած միջոցների ու կադրերի խիստ պակասին, կուսակցությունն ու կառավարությունը կարողացան ստեղծել ժողովրդական կրթության նոր սիստեմ, որն ապահովեց բնակչության ընդհանուր գրագիտության, գիտության ու կուլտուրայի արագ վերելքը, աճող սերնդի՝ սոցիալիզմի ոգով դաստիարակությունը: Կուլտուրական հեղափոխության ծավալման շնորհիվ ստեղծվեց սոցիալիստական, իսկական ժողովրդական կուլտուրա և ձևավորվեց միլիոնավոր աշխատավորների սոցիալիստական գիտակցությունը:

Հոկտեմբերի հաղթանակով ՍՍՀՄ-ում փայլուն կերպով լուծվեց նաև ազգային հարցը: Լենինյան ազգային քաղաքականության իրագործմամբ հաստատվեց մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդների սոցիալիստական եղբայրությունը: Ցարական կառավարության դաժան պայմաններում ճնշված ազգերը կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության հոգատարության շնորհիվ ոչ միայն վերականգնեցին իրենց պետականությունը, իսկ շատերն էլ փրկվեցին ֆիզիկական բնաջնջումից, այլև վիթխարի քայլեր կատարեցին ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության զարգացման բնագավառներում: Սոցիալիզմը ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների համար փաստական հավասարություն ապահովեց տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքի բոլոր ասպարեզներում: Այդ գործում մեծ ու անգնահատելի դեր է պատկանում ռուսական բանվոր դասակարգին, ռուս ժողովրդին, որն անշահախնդիր օգնություն ցույց տվեց ՍՍՀՄ եղբայրական հանրապետությունների աշխատավորներին:

Սովետական իշխանության անցած տարիներին միութենական բոլոր հանրապետությունները, որոնք կամավոր կերպով միացել ու կազմել են աշխարհի ամենաբազմազգ հզոր պետությունը՝ ՍՍՀՄ-ը, ագրարային հետամնաց երկրից դարձել են ինդուստրիալ զարգացած երկրներ և դուրս եկել համաշխարհային ասպարեզ: Եթե այսօր Հայաստանը, Կիրգիզիան, Ուզբեկստանը, Վրաստանը և միութենական մյուս ազգային հանրապետություններն իրենց արդյունաբերական արտադրանքի շատ ու շատ տեսակներ արտահանում են կապիտալիստական առանյակ երկրներ և մրցում նրանց հետ, ապա այդ բանում պետք է տեսնել սովետական իշխանության, սոցիալիստական կարգերի մեծ ուժը, նրանց առավելությունը կապիտալիստականի հանդեպ:

Սովետական Միության զարգացման կեսդարյա փորձը լիովին հաստատեց ամենահեղափոխական դասակարգի՝ բանվոր դասակարգի մեծ ուժը, նրա պատմական դերը, որը սերտորեն դաշնակցած գյուղացիության հետ, ապահովեց սոցիալիզմի կառուցումը:

«ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման գլխավոր գործիքը,— ասված է Թեզիսներում,— պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն է: Պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը բանվոր դասակարգի դաշինքն է գյուղացիության հետ՝ բանվոր դասակարգի ղեկավար դերի պայմաններում: Սովետական պետությունն այն մեծագույն ուժն էր, որն ընդունակ եղավ կազմակերպելու միլիոնավոր մարդկանց ստեղծագործական աշխատանքը, ապահովելու նոր էկոնոմիկայի ու կուլտուրայի ստեղծումը, ժողովրդի բարեկեցության վերելքը»: Սովետական պետությունը ստեղծվել է ժողովրդի համար և անշեղորեն ծառայում է նրան: Հոկտեմբերի շնորհիվ տեր դառնալով պետության, սովետական ժողովուրդը հերոսության, հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքներին նվիրվածության անկրկնելի օրինակներ է տվել:

Այն ծանր պահին, երբ գերմանական ֆաշիզմը հարձակվեց մեր երկրի վրա, սովետական ժողովրդի հերոսությունը դրսևորվեց անօրինակ ուժով: Ֆաշիստների կողմից մեր 70 հազարից ավելի քաղաքների, ավանների, գյուղերի ու շեների՝ ավերակների վերածումը, ազգային հարստության մոտ 30 տոկոսը կորուստի մատնելը, 20 միլիոնից ավելի սովետական մարդկանց ոչնչացումը ծունկի չբերին բազում փորձություններով անցած մեր ժողովրդին: Սովետական ժողովուրդը և նրա փառապանծ զինված ուժերը, հանդես բերելով չտեսնված տոկունություն, ետ մղեցին և ապա իր որջում ջախջախեցին վայրի թշնամուն:

Կենտկոմի Թեզիսներում նշված է, որ «Իմպերիալիզմի և նրա առավել հրեշավոր ծնունդի՝ ֆաշիզմի հետ տեղի ունեցած ռազմական վիթխարի ընդհարումից հաղթանակով դուրս եկավ սոցիալիստական հասարակական ու պետական կարգը: Սովետական Միության ուժի աղբյուրները հանդիսացան սոցիալիստական էկոնոմիկան, հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնությունը, սովետական հայրենասիրությունն ու ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը, ժողովրդի համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը, սովետական ռազմիկների անօրինակ հերոսությունն ու արիությունը: Դա սոցիալիստական գաղափարախոսության հաղթանակն էր իմպերիալիզմի ու ֆաշիզմի մարդատյաց գաղափարախոսության նկատմամբ»:

Այդ հաղթանակի պայմաններում, Սովետական Միության անմիջական օգնությամբ, գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի դեմ հաղթանակ տարան և իրենց մոտ ժողովրդա-դեմոկրատական կարգեր ստեղծեցին Արևելյան Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրների ժողովուրդներ: Ազատագրված այդ երկրները բռնեցին սոցիալիզմի կառուցման ուղին, որով և ծնունդ առավ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը:

Հայրենական պատերազմի հաղթական ավարտից հետո կուսակցությունը, կառավարությունն ու սովետական ողջ ժողովուրդը եռանդուն ջանքեր գործադրեցին և կարճ ժամանակում վերականգնեցին ժողովրդական տնտեսությունը: Արդեն 1948 թվականին հիմնականում ձեռք բերվեց արդյունաբերության արտադրության նախապատերազմյան մակարդակը: Արդյունաբերության առաջատար ճյուղերի առավել զարգացման հետ միասին առաջ եկան այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են էլեկտրոնիկան ու ռադիոէլեկտրոնիկան, ատոմային արդյունաբերությունը և այլն:

Լուրջ դժվարությունների հաղթահարման գնով կարճ ժամանակում վերականգնվեց նաև կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան, որի շնորհիվ 1950 թվականին գյուղատնտեսության համախառն արտադրանքի արտադրությունը հասավ նախապատերազմյան մակարդակին: Բայց, ինչպես ասված է Թեզիսներում, հաջորդ տարիներին գյուղատնտեսության զարգացման տեմպերը դանդաղեցին և որոշակի դժվարություններ առաջացան հացահատիկի, մսի, կաթի և մյուս մթերքների արտադրության գործում: Այդ դժվարություն-





digitised by A.R.A.R.@

ների հաղթահարման համար ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1953 թ.) պլենումը վճռական միջոցառումներ մշակեց:

Մեր երկրի գյուղատնտեսության զարգացման գործում առանձնակի կարևոր նշանակություն ունեցան ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի և կուսակցության XXIII համագումարի որոշումները, որոնց իրագործման շնորհիվ արդեն զգալի հաջողություններ են ձեռք բերված սովխոզային ու հանրային տնտեսությունների ամրապնդման ու զարգացման, գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացման և գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում:

Հիսուն տարվա ընթացքում տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերված հաջողությունների համար մենք առաջին հերթին պարտական ենք կոմունիստական կուսակցությանը, որը երկիրը տարավ դեռևս չտրորված ճանապարհներով, ապահովեց սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը և մեծ փորձ կուտակեց նոր հասարակարգի կառուցման գործում: «Երբ երկիրը ոտք է դրել մեծագույն վերափոխությունների ուղին,— ասել է Վ. Ի. Լենինը,— այն ժամանակ այդ երկրի և այդ երկրում հաղթանակած բանվոր դասակարգի կուսակցության վաստակը հանդիսանում է այն, որ մենք գործնականում ընդհուպ մոտեցել ենք այն խնդիրներին, որոնք առաջ դրվում էին վերացականորեն, տեսականորեն: Այս փորձը չի մոռացվի: Ինչ էլ կատարվելու լինի, որքան էլ ծանր լինեն ռուսական հեղափոխության և միջազգային սոցիալիստական հեղափոխության ելևէջները, այս փորձը չի կարելի խլել... Այդ փորձը մտավ պատմության մեջ իբրև սոցիալիզմի նվաճում և ապագա միջազգային հեղափոխությունն այդ փորձի վրա է կառուցելու իր սոցիալիստական շենքը» (Երկեր, հատ. 27, էջ 513):

***

Մեր երկրում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը տնտեսական, սոցիալական-քաղաքական և հզոր նախադրյալներ ստեղծեց կոմունիստական հասարակության կառուցման համար: Շարադրելով սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունները, ՍՄԿԿ Կենտկոմի Թեզիսները նշում են կոմունիստական շինարարության այն կարևորագույն խնդիրները, որոնք բխում են կուսակցության XXIII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1946 թ.) ու հետագա պլենումների որոշումներից:

Կոմունիզմը կառուցվում է միայն բարձր զարգացած էկոնոմիկայի հիման վրա: Այստեղից էլ *գիտության ու տեխնիկայի զարգացման, արտադրության մեքենայացման և ավտոմատացման, աշխատանքի արտադրողականության անընդհատ աճի հիման վրա կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը սովետական հասարակարգի գլխավոր տնտեսական խնդիրն է*, որի լուծման համար ստեղծվել են բոլոր անհրաժեշտ պայմանները:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ճանապարհին, մեր ժողովրդի գործադրած հերոսական ջանքերի շնորհիվ, Սովետական Միությունը նորանոր հաջողությունների է հասնում ու հաստատորեն առաջ ընթանում դեպի մեծ նպատակը: Բավական է ասել, որ ընթացիկ տարում մեր երկիրը հասավ տարեկան ավելի քան 100 միլիոն տոննա պողպատի արտադրության մակարդակին: Այդ և համանման բազմաթիվ վառ օրինակներն ասում են այն մասին, որ Սովետական Միության ինդուստրիան այժմ ի վիճակի է լուծելու արտա-



դրական ու տեխնիկական առավել բարդ խնդիրներ, ապահովելու երկրի ամբողջ էկոնոմիկայի զարգացման արագ տեմպեր:

Ինդուստրացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները հնարավոր դարձրին անշեղորեն բարձրացնելու կոլտնտեսությունների ու սովխոզների տեխնիկական զինվածությունը, զգալի չափով զարգացնելու գյուղատնտեսական արտադրությունը:

Հենվելով ծանր ինդուստրիայի զարգացման վրա, կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը կոնկրետ միջոցառումներ իրականացրին գյուղին անընդհատ հոսանքով տեխնիկա մատակարարելու համար: Դրա շնորհիվ 1966 թվականի վերջերին երկրի գյուղատնտեսությունն ուներ 1.600 հազար տրակտոր, 531 հազար հացահատիկի կոմբայն: Նույն թվականին երկրի գյուղատնտեսության ընդհանուր էներգետիկ հզորությունները նախահեղափոխական մակարդակը գերազանցեցին 10 անգամ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Թեզիսներում պարզորոշ շարադրված են տնտեսության և կուլտուրայի բոլոր մարզերում սովետական ժողովրդի ձեռք բերած վիթխարի նվաճումները, նվաճումներ, որոնք կոմունիզմի կառուցման գրավականն են:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացումը, ինչպես նաև աշխատավորների բարեկեցության բարձրացումը առավել արագ տեմպերով առաջ կընթանան նոր հնգամյակում, որի պլանային առաջադրանքները հաջողությամբ կատարվում ու գերակատարվում են:

***

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը չսահմանափակվեց միայն մեր երկրով. այն ամբողջ աշխարհում նշանավորեց կապիտալիզմից հեղափոխականորեն սոցիալիզմին անցնելու սկիզբը:

Անցած կես դարում անկասելիորեն զարգանում է համաշխարհային հեղափոխական պրոցեսը, որն իր մեջ ներգրավում է նորանոր երկրներ: Պատմության զարգացման օբյեկտիվ ընթացքը պարզորոշ ցույց է տալիս, որ առաջադիմական հեղափոխական ուժերը հետզհետե հզորանում ու նորանոր հաղթանակներ են տանում շահագործողական դասակարգերի, միջազգային ռեակցիոն իմպերիալիզմի դեմ:

*«Աշխարհի հեղափոխական նորացման գործը,*— ասված է Թեզիսներում,— *որն սկսվեց Հոկտեմբերով և մարմնավորվեց ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի մեջ, շարունակվում է ուրիշ երկրներում սոցիալիստական հեղափոխությունների հաղթանակներով: Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմվելը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո պատմական ամենախոշոր իրադարձությունն է»:* Համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրները, օգտագործելով ՍՍՀՄ-ի փորձը, հաջողությամբ սոցիալիզմ են կառուցում և տնտեսական աճի տեմպերով առաջ անցնում կապիտալիստական երկրներից:

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների միջև ստեղծվել է համագործակցության նոր ձև, որը հիմնված է փոխադարձ օգնության, շահավետության և եղբայրական անշահախնդիր հարաբերությունների վրա: Գոհունակությամբ պետք է նշել, որ ամուր կերպով դրվել է սոցիալիստական երկրը-



digitised by A.R.A.R.@

ների սերտ հարաբերությունների ու միասնության հիմքը, ստեղծվել են նրանց կոլեկտիվ տնտեսական, քաղաքական ու ռազմական համագործակցության տարբեր ձևեր, կուտակվել է միջազգային ասպարեզում սոցիալիստական պետությունների համատեղ գործողությունների մեծ փորձ: Նրանք իրենց գործողությունների ընթացքում ելնում են մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքներից:

Մեծ Հոկտեմբերը ուժգին հարված հասցրեց իմպերիալիստական գաղութային տիրապետության ամբողջ սիստեմին և հզոր խթան հանդիսացավ ազգային-ազատագրական շարժումների համար: Հոկտեմբերից հետո սկսվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը և այժմ իմպերիալիզմի լուծն են թոթափել ու իրենց ազգային պետություններն են ստեղծել ավելի քան 70 ազգեր:

Դա, ինչ խոսք, դուր չի գալիս իմպերիալիստներին, որոնք ամեն կերպ փորձում են շուռ տալ պատմության անիվը, կասեցնել և ապա ի չիք դարձնել ազգային-ազատագրական շարժումները, նորից վերականգնել գաղութակալության անարգ սիստեմը: Ռեակցիոն մութ ուժերը, որոնց գլուխ կանգնած են Ամերիկայի Միացյալ Նահանգները, այդ նպատակի համար դիմում են ստոր միջոցների և, նույնիսկ, բացարձակ պատերազմի: Այդ են ցույց տալիս ազատատենչ Վիետնամում ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիան, արաբական երկրների վրա իսրայելական կավթիչների հարձակումը, Կուբայի դեմ դավադրության նախապատրաստումը և այլն, որոնք խստորեն դատապարտվում են սոցիալիստական երկրների ժողովուրդների, ողջ աշխարհի առաջադեմ մարդկության կողմից:

Հոկտեմբերի գաղափարները, կոմունիզմի գաղափարները մեր ժամանակների առաջավոր գաղափարներն են, *ժամանակակից պատմության ստեղծագործական մեծ ուժը,* որը կվերափոխի ողջ աշխարհը, կբացառի պատերազմն ու թշնամությունը տարբեր երկրների միջև, բոլոր ժողովուրդներին կտա ազատ, բախտավոր ու խաղաղ կյանք:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի տոնակատարության նախապատրաստման այս օրերին Հայաստանի կուսակցական կազմակերպությունների կարևոր խնդիրն է՝ ագիտացիայի ու պրոպագանդայի բոլոր միջոցներով լայնորեն մասսայականացնել ՍՄԿԿ Կենտկոմի Թեզիսները, աշխատավորներին պարզաբանել մեր կուսակցության ու ժողովրդի կեսդարյա հերոսական պայքարի փայլուն արդյունքները, նրանց կազմակերպել ու ոգեշնչել միշտ դեպի առաջ գնալու, հոբելյանական տարվա սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարելու համար:



# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Հ. ԲԱՂՐԱՄՅԱՆ

ՍՍՀՄ Պաշտպանության մինիստրի տեղակալ, Սովետական Միության մարշալ

## ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ*



*Ռուսաստանի աշխատավորական մասսաները, կես դար առաջ, 1917 թ. հոկտեմբերին, Լենինի կուսակցության ղեկավարությամբ տապալեցին շահագործողներին և իշխանությունը տվին բանվորների, գյուղացիների ու զինվորների դեպուտատների սովետներին:*

*Հոկտեմբերից հետո ժողովուրդն առանց կանոնավոր բանակի կարողացավ համեմատաբար հեշտ կերպով ետ մղել հակահեղափոխության ներքին ուժերի հարձակումները և իշխանությունը պահել իր ձեռքում: Սակայն իմպերիալիստական ինտերվենցիայի սպառնալիքն օրակարգի հարց դարձրեց ժողովրդական կանոնավոր զինված ուժերի ստեղծումը:*

*Այս առթիվ Լենինն ասում էր, որ հեղափոխությունն այն դեպքում է միայն նշանակալից, երբ կարողանում է պաշտպանվել: Այն ժամանակ, երբ գերմանական միլիտարիստների ուժերը շարժվեցին Պետրոգրադի վրա, որպեսզի մեկ հարվածով խեղդեին հաղթանակած հեղափոխությունը, Վ. Ի. Լենինն իր «Ծանր, բայց անհրաժեշտ դաս» հոդվածում գրում էր. «Մինչև այժմ մեր առաջ կանգնած էին չնչին, արգահատելի, խղճուկ թշնամիներ (համաշ-*

* Ընկ. Հ. Բաղրամյանը այս հոդվածը գրել է մեր ամսագրի համար—խմբ.:



digitised by A.R.A.R.@

խարհային իմպերիալիզմի տեսակետից), ինչ-որ ապուշ Ռոմանով, պարծենկոտ Կերենսկի, յունկերների և բուրժուազիկների բանդաներ: Այժմ մեր դեմ ելավ կուլտուրական, տեխնիկապես առաջնակարգ ձևով սպառազինված, կազմակերպորեն հիանալի կարգի բերված համաշխարհային իմպերիալիզմի հրական: Նրա դեմ պետք է կռվել: Նրա դեմ պետք է կարողանալ կռվել (Երկեր, հ. 27, էջ 57):

Եվ իրոք, թշնամիներն ուժեղ էին և նրանց դեմ պետք էր կարողանալ կռվել: Իրադրությունը պահանջում էր անմիջապես ստեղծել մասսայական, կանոնավոր բանակ: Այդ խնդրի լուծման համար եղած պայմանները չափազանց անբարենպաստ էին: Սովետական պետությունը, որպես ժառանգություն, ցարական Ռուսաստանից ստացել էր հետամնաց և առաջին իմպերիալիստական պատերազմի հետևանքով քայքայված արդյունաբերություն, որը նոր բանակին չկարողացավ մատակարարել զենք և ռազմական տեխնիկա. տրանսպորտը կազմալուծված էր, գյուղատնտեսությունն՝ ավերված: Բանակի մատակարարման, հաշվառման և մոբիլիզացման, զորամասերի կառավարման ռազմական հին օրգանները ջարդված էին, իսկ նորերը հեղափոխությունը դեռևս չէր ստեղծել: Եվ այն, որ այդ պայմաններում մեզ այնուամենայնիվ հաջողվեց ամենակարճ ժամկետում ստեղծել կանոնավոր, մասսայական Կարմիր Բանակ, ապահովել նրան զենքով և ռազմական տեխնիկայով, աճեցնել առաջնակարգ ռազմական կադրեր և հաղթանակ տանել թշնամու նկատմամբ, հետևանք է մեր սոցիալիստական հեղափոխության մեծագույն ուժի, նրա առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի հանճարեղ իմաստության, նրա աճեցրած կոմունիստական կուսակցության անսահման հեղինակության՝ ժողովրդական մասսաների ամենալայն խավերում:

1918 թվականի հունվարի 23-ին[1] Ժողկոմխորհը Վ. Ի. Լենինի առաջարկությամբ հրապարակեց «Բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակի կազմակերպման մասին» դեկրետը: Նրա կազմավորումը ղեկավարելու համար Ժողկոմխորհը Ռազմական գործերի ժողովրդական կոմիսարիատին առընթեր հիմնադրեց համառուսաստանյան կոլեգիա Ն. Ի. Պոդվոյսկու գլխավորությամբ: Այդ կոլեգիայի աշխատանքը տեղերում սերտորեն շաղկապված էր բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների սովետների գործունեության հետ:

Նոր բանակի շարքերն ընդունվում էին բանվորները, աշխատավոր գյուղացիները և ուրիշի աշխատանքը չշահագործող բնակչության այլ խավերի ներկայացուցիչները: Այսպիսով, բանվոր դասակարգի դաշինքն աշխատավոր գյուղացիության հետ, բանվոր դասակարգի ղեկավար դերի՝ պրոլետարիատի դիկտատուրայի այդ հիմունքի պահպանմամբ, հիմք դարձավ նաև նրա բանակի ստեղծման համար:

Կարմիր Բանակն ստեղծվում էր որպես ժողովուրդների դաշինքի, բարեկամության բանակ, որպես նրանց իրավահավասարության, ազատության և անկախության ապահովման բանակ: Պրոլետարական ինտերնացիոնալիզմը դարձավ Սովետական Զինված Ուժերի անձնակազմի դաստիարակության կարևորագույն գաղափարական սկզբունքը:

Կարմիր Բանակի առաջին կորպուսը կազմավորեց Պետրոգրադի սովետը: Եվ նրան էր վիճակված անմիջապես դուրս գալ պաշտպանելու սոցիալիստա-

1 Տարեթվերը նշված են հին տոմարով:



կան հայրենիքը: 1918 թվականի փետրվարի 18-ին գերմանական բանակը սկսեց իր հարձակումը՝ նպատակ ունենալով գրավել Պետրոգրադը: Կարմիր Բանակի կամավորական զորամասերը և կարմիր գվարդիայի ջոկատները մարտի բռնվեցին գերմանական զավթիչների հետ և 1918 թվականի փետրվարի 23-ին Նարվայի և Պսկովի մոտերքում ուժեղ հարված հասցրին թշնամուն՝ փակելով նրա ճանապարհը դեպի հեղափոխական Պետրոգրադ: Կարմիր Բանակի առաջին հաղթանակի տարեթիվը, սովետական կառավարության 1919 թվականին ընդունած որոշումով, ամեն տարի փետրվարի 23-ը նշվում է որպես Սովետական Զինված Ուժերի ծննդյան օր:

Այսպես, ինտերվենտների դեմ մղվող մարտերում, քաղաքացիական պատերազմի բոցերի մեջ սկսվեց աշխարհում առաջին սոցիալիստական պետության Զինված Ուժերի մարտական ուղին: Արդեն 1918 թվականի մարտ ամսին անգլիական և ֆրանսիական ինտերվենտների ջոկատներն իջան սովետական հողի վրա: Ապրիլին և մայիսին նրանց միացան ամերիկացիները և ճապոնացիները: 1918 թվականի ամռանը ինտերվենտների զորքերի ներհոսը զգալի կերպով ուժեղացավ: Օտարերկրյա ինտերվենցիան ակտիվացրեց նաև ներքին հակահեղափոխության ուժերը: Նրանց ելույթի համար որպես ազդանշան ծառայեց չեխոսլովակյան կորպուսի խաբված զինվորների խռովությունը, որն ընդգրկեց մի ընդարձակ տերիտորիա՝ Վոլգայից մինչև Վլադիվոստոկ: Սրան հետևեցին Կրասնովի, Դենիկինի, Յուդենիչի, Կոլչակի սպիտակգվարդիական զորքերի ոտնձգությունները: Սովետների երկրի երիտասարդ Զինված Ուժերը ետ մղեցին կապիտալիստական պետությունների և սպիտակգվարդիական ստվար ուժերի երեք կոմբինացված արշավները:

Նոր բանակի բարոյական բարձր հատկանիշները, նրա գաղափարական կոփվածությունը ապահովում էր կոմունիստական կուսակցությունը: Քաղաքացիական պատերազմի տարիներին կուսակցությունը Կարմիր Բանակի շարքերն էր ուղարկել իր անդամների կեսից ավելին: Կոմունիստները ցույց էին տալիս հերոսության հիանալի օրինակներ թշնամու դեմ մղվող մարտերում:

Կուսակցությունը կարողացավ երկիրը վերածել միասնական ռազմական ճամբարի, որն ունակ էր դիմադրելու թշնամիների գերազանց ուժերին: Կարմիր մարտիկները ցուցաբերում էին հերոսության և նվիրվածության բարձր օրինակներ: Դրա համար ավելի քան 15 հազար կարմիրբանակայիններ, հրամանատարներ և քաղաշխատողներ պարգևատրվեցին Կարմիր Դրոշի շքանշաններով և պատվո հեղափոխական զենքերով: 430 մարդ ստացան կրկնակի կառավարական պարգևներ, Կարմիր Բանակի 55 զորավարներ պարգևատրվեցին եռակի, իսկ 10 ամենախիզախներ՝ Վ. Կ. Բլյուխերը, Ս. Ս. Վոստրեցովը, Յա. Ֆ. Ֆաբրիցիուսը, Ի. Ֆ. Ֆեդկոն, Ս. Ս. Կամենևը, Գ. Ի. Կոտովսկին, Ի. Պ. Ուբարևիչը, Գ. Դ. Խախանյանը, Ն. Վ. Կույբիշևը, Ի. Ի. Խորոնը արժանացան չորս շքանշանի: Մեր երկու փառապանծ հերոսները՝ Ս. Մ. Բուդյոննին և Ի. Ս. Կուտյակովը ունեին Կարմիր Դրոշի հինգ շքանշան:

Հակահեղափոխության և ինտերվենցիայի միավորված գերակշռող ուժերի վճռական ջախջախմանը նպաստում էր լենինյան իմաստուն ազգային քաղաքականությունը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության առաջին իսկ օրերին բոլշևիկները հայտարարեցին ո՛չ միայն ամեն մի ճնշման ու շահագործման, այլև ազգային անհավասարության վերացում: Ազգային քաղաքականության բնագավառում կուսակցության գլխավոր գիծը մնում էր ազգերի ինքնորոշման իրավունքը: Արդեն Հոկտեմբերյան զինված ապստամ-



digitised by A.R.A.R.@

բության հաղթանակից հետո կուսակցության առաջին գործնական քայլն էր
«Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայի» հրապարակու-
մը։ Այն Ռուսաստանի բոլոր ժողովուրդների աշխատավորներին համախըմ-
բեց բոլշևիկների շուրջը։

***



եղափոխական Ռուսաստանի ժողովուրդների աշխատավորները,
առաջավոր ռուս ժողովրդի գլխավորությամբ՝ ամենաակտիվ մաս-
նակցություն ունեցան սովետական իշխանության հաղթանակի
ապահովման գործում։ Արժանի ներդրում արեց նաև հայ ժողովուրդը։
Հայ ժողովրդի ականավոր զավակների թվում, որոնք առանձնապես աչքի
ընկան Ռուսաստանում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխու-
թյան հաղթանակի համար մղված պայքարում, մենք տեսնում ենք այնպիսի
փառապանծ հեղափոխականների և զորավարների, ինչպիսիք են Ա. Մյաս-
նիկյանը, Ստ. Շահումյանը, Ա. Միկոյանը, Կամոն (Ս. Տեր-Պետրոսյանը),
Բ. Բորյանը, Մ. Տեր-Հարությունյանցը, Վ. Ավանեսովը (Մարտիրոսյանը),
Գ. Խախանյանը, Հ. Բժշկյանը (Գայը), Հ. Հովսեփյանը, Գ. Ոսկանյանը և շատ
ուրիշներ։

Ներկայումս հազիվ թե գտնվի մեկը, որին ծանոթ չլինի այն աչքի ընկ-
նող դերը, որը կատարեցին հեղափոխության մեջ Ստ. Շահումյանը, Ա. Մյաս-
նիկյանը և Ա. Միկոյանը։

Մյասնիկյանը փայլուն կերպով ղեկավարել է հեղափոխական բանակնե-
րը Արևմտյան և Արևելյան ռազմաճակատներում։ Երբ Մոսկվային անմիջա-
կան վտանգ էր սպառնում, ՌԿԿ (բ) Կենտրոնական կոմիտեն նրա պաշտպա-
նությունը վստահեց փորձված լենինյան Ալեքսանդր Մյասնիկյանին։ Իսկ սո-
վետական իշխանության հաղթանակն Անդրկովկասում սերտորեն կապված է
մեծ Լենինի այնպիսի ականավոր աշակերտների և զինակիցների անվան հետ,
ինչպիսիք են Ս. Մ. Կիրովը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ա. Ի. Միկոյանը, Ստ. Շա-
հումյանը և ուրիշներ։ Կամ, հեղափոխական Պիտերում ով չգիտեր բոցավառ
բոլշևիկ, ՌՍԴԲԿ (բ) Պետրոգրադի կոմիտեի անդամ Բ. Բորյանին, որը խոշոր
դեր խաղաց զինված ապստամբության նախապատրաստման և իրագործ-
ման մեջ։

Առաջին, այսպես կոչված, «Հակահեղափոխության դեմ պայքարող դաշ-
տային շտաբը» գլխավորել է հայ ժողովրդի պանծալի զավակ Մ. Կ. Տեր-
Հարությունյանցը, որը կուսակցության Կենտկոմին առընթեր Ռազմական
կազմակերպության (Վոենկայի) անդամն էր։

Քաղաքացիական պատերազմի ականավոր հերոսների թվում մենք տես-
նում ենք հայ ժողովրդի պանծալի զավակներին՝ Գ. Խախանյանին և Հ. Բժըշկ-
յանին (Գային), որոնք եղել են Կարմիր Բանակի կորպուսների հրամանա-
տարներ։ Նույնիսկ հերոսներով փառաբանված այնպիսի մի դիվիզիայում,
ինչպիսին Չապաևյան դիվիզիան էր, Գ. Ոսկանյանը առասպելական փառքի
արժանացավ։

Ռուսական հողի վրա հանուն հեղափոխության հաղթանակի իրենց ար-
յունը թափելով, հայ ժողովրդի զավակները հավատում էին, որ դրանով իսկ
նրանք մոտեցնում են և իրենց բազմաչարչար ժողովրդի փրկության ժամը,
որի ազատագրման ուղին առանձնապես դժվարին էր։



Հայաստանի ամբողջ աշխատավոր ժողովուրդն ուրախությամբ ընկալեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության հաղթանակի լուրը։ Ես հիշում եմ, թե ինչպիսի ցնծությամբ ընդունեցին այդ լուրը Կարսի մարզի և Կարս քաղաքի աշխատավորները, որտեղ ես այդ ժամանակ զինվորական ծառայության մեջ էի։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի լուրը հուզմունքով և խոր բավականության զգացումով ընդունեցին նաև Ալեքսանդրապոլի աշխատավորները։ Քաղաքի ամբողջ քսանհազարանոց կայազորը հեղափոխության կողմն էր։ Բանվորների և զինվորների դեպուտատների Ալեքսանդրապոլի սովետի ճնշող մասը բոլշևիկների կողմն էր։ 1917 թվականի նոյեմբերի 10-ին ՌՍԴԲԿ քաղաքային կոմիտեն մասսայական միտինգ կազմակերպեց, որտեղ հանդես եկավ աննկուն բոլշևիկ Բ. Ղարիբջանյանը։ Այդ միտինգում միահամուռ բանաձև ընդունվեց՝ «Ձենքը ձեռքներիս կպաշտպանենք բանվորա-գյուղացիական կառավարությունը» նշանաբանով։

Շուտով մենք իմացանք, որ նման միահամուռ աջակցությամբ հանդես են եկել Հայաստանի բոլոր խոշոր քաղաքների և ավանների աշխատավորները։ Ստեղծվել էր ամենաբարենպաստ իրադրություն սովետական իշխանության հաղթանակի համար ո՛չ միայն Ռուսաստանի կենտրոնական շրջաններում, այլև Անդրկովկասում։

Սակայն դրան խանգարեց դաշնակների, մենշևիկների և մուսավաթականների գլխավորած հակահեղափոխական ուժերի միավորված ելույթն ընդդեմ սովետական իշխանության։ Այդ նրանք էին, որ օտարերկրյա ինտերվենտների առաջ ճանապարհ բացեցին դեպի Անդրկովկաս։ Սկսվեց աշխատավորների մասսայական բնաջնջումը։ Այդ ժամանակաշրջանը դիպուկ և պատկերավոր է բնորոշել Ա. Միկոյանը. «Կովկասում անկախ հանրապետությունների փոխարեն ստացվեց մի քարվանսարա մեծ ճանապարհի վրա, ավազակների կեղտոտ որջը, որտեղ, մերթ հերթով, մերթ միասին, իջևանում են իմպերիալիզմի դիշատիչները, քաղաքակիրթ բանդիտները՝ թուրքերը, անգլիացիները, ամերիկացիները և ամեն կարգի այլ սրիկաներ գալիս, տեր են կանգնում, բռնանում և անպատիժ անարգելով աշխատավոր մասսաներին, հեռանում են հարուստ ավար տանելով իրենց հետ»։

Սակայն մոտենում էր միջազգային իմպերիալիստական բանդիտների տիրապետության վախճանը։ Կարմիր Բանակը օգնության էր շտապում բոլշևիկների ղեկավարությամբ պայքարող Անդրկովկասի ժողովուրդներին։ 1920 թվականի սկզբներին դաժան մարտեր մղելով նա ազատագրեց Հյուսիսային Կովկասը։ 1920 թվականի հունվարին Հայաստանի տրոհված բոլշևիկյան կազմակերպությունները միավորվեցին որպես միասնական կոմունիստական կազմակերպություն, որը հռչակեց՝ «Դաշնակների իշխանության բռնի հեղափոխական տապալումն առաջնահերթ խնդիր է...»։

Արյունաքամ Հայաստանն, ինչպես նաև ողջ Անդրկովկասն այդ ժամանակ նմանվում էին վառոդով լեցուն մի տակառի, որը կարող էր պայթել ամենափոքր հեղափոխական կայծից։ Ահա թե ինչու բավական էր, որ Ա. Միկոյանի և Մ. Եֆրեմովի գլխավորությամբ Կարմիր Բանակի մի զրահագնացք ապրիլի 28-ին մտներ Բաքվին, որպեսզի Ադրբեջանի ամբողջ աշխատավոր ժողովուրդն անհապաղ թոթափեր մուսավաթիստների՝ միջազգային իմպերիալիզմի այդ կամակատարների ատելի լուծը։ Ժողովրդի հաղթանակն Ադրբեջանում խթանեց նաև Հայաստանի աշխատավորներին դիմելու զինված ապստամբության, որի դրոշն առաջինը բարձրացրին Ալեքսանդրապոլի աշխատա-



digitised by A.R.A.R.@

վորները (Նշված կայազորի կազմում այդ տարիներին վիճակվել էր ծառայելու նաև տողերիս գրողին)։

Ապստամբներին ղեկավարում էր Հայաստանի բոլշևիկների Ալեքսանդրապոլի քաղաքային կոմիտեն, որը գլխավորում էին Բ. Ղարիբջանյանը, Ա. Սևյանը, Թ. Մանդալյանը, Ա. Գրիգորյանը և ուրիշներ։

Ապստամբության շտաբը հաստատվել էր «Վարդան Զորավար» զրահագնացքում, որի հրամանատարն էր Ս. Մուսայելյանը։ Ապստամբության հաջողությանը նպաստում էր նաև այն, որ քաղաքի կայազորը վճռականորեն անցել էր ապստամբների կողմը։

Մեր սրտերը համակվեցին մեծ ուրախությամբ, երբ իմացանք, որ ապստամբություն է ծագել նաև Կարսում, Սարիղամիշում, Շամշադինում, Իջևանում, Զանգեզուրում, Քավթառլուի, Նոր Բայազետի և Ղամարլուի շրջաններում։ Սակայն ապստամբների մեկուսացված լինելու, միասնական պլանի բացակայության և պաշտպանողական տակտիկայի հետևանքով ապստամբությունը ճնշվեց։ Մասնակիցներից շատերը զոհվեցին, շատերին էլ հաջողվեց անցնել ընդհատակ։ Մեզ մեծ վիշտ պատճառեց, որ մահապատժի ենթարկվածների մեջ էին նաև ապստամբության ղեկավարները, ականավոր հեղափոխականներ և բոցավառ բոլշևիկներ Բ. Ղարիբջանյանը, Ս. Ալավերդյանը և Ս. Մուսայելյանը։

Աշխատավորները հարկադրված էին ժամանակավորապես նահանջել, բայց չհնազանդվել։ Նրանք պատրաստվում էին պատշաճ ժամին։ 1920 թվականի սեպտեմբերին՝ իմպերիալիստների կողմից Թուրքիայի և դաշնակցական ավանտյուրիստների միջև սանձազերծված պատերազմը անդունդի եզրին հասցրին հայ ժողովրդին։ Թուրքերն օկուպացրին Հայաստանի մեծ մասը և սկսեցին հայերի մասսայական բնաջնջումը։ Միայն Կարսում և Ալեքսանդրապոլում նրանք կոտորեցին 60 հազար և հայրենի վայրերից տեղահան արին 15 հազար մարդ։

Հայ ժողովրդի համար այդ ողբերգական պահին ռուսաստանյան և միջազգային պրոլետարիատի առաջնորդ մեծ Լենինը պահանջեց, որ անմիջական օգնություն ցույց տրվի եղբայրական հայ ժողովրդին։

1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի կոմունիստներն ապստամբության կոչ արին ժողովրդին։ Ղազախ-Շամշադինի շրջանում կազմվեց Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե՝ Ս. Կասյանի գլխավորությամբ։ Հաջորդ օրը Հեղկոմը հանդես եկավ մի դեկլարացիայով, որով հայտարարեց. «Հայաստանի ապստամբ աշխատավոր ժողովրդի կամքով ու ցանկությամբ՝ Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը այսօրվանից Հայաստանը հռչակում է Սոցիալիստական Խորհրդային Հանրապետություն»։

Օգնություն խնդրելու առթիվ հեղափոխական կառավարության դիմումը ջերմ արձագանք գտավ ռուս եղբայրների և անձամբ Լենինի մոտ։ Նրա առաջարկությամբ ՌՍՖՍՀ կառավարությունը հրաման արձակեց իր 11-րդ Կարմիր Բանակին՝ օգնության հասնել ապստամբ ժողովրդին։ Այդ բանակից անմիջապես առանձնացվեց զորքերի հարվածային մի խումբ՝ Վելիկանովի գլխավորությամբ։ Նրա առջևից հայկական հողը թևակոխեց հայկական հեղափոխական գունդը։ Համաժողովրդական աջակցության շնորհիվ շուտով հեղափոխական զորքերը մտան Երևան։ Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն։



Ի սրտե ուրախանալով, այդ կապակցությամբ Վ. Ի. Լենինը հեռագրել է Ս. Կասյանին. «Հանձինս Ձեզ ողջունում եմ իմպերիալիզմի լծից ազատագրված Սովետական Հայաստանի աշխատավորներին»։

Ժողովրդի հեղափոխական նվաճումների պաշտպանության համար անմիջապես կազմավորվեց Հայաստանի Կարմիր Բանակը։ Նրա կորիզը կազմեցին աշխատավորների ջոկատները և նախկին դաշնակցական բանակի հեղափոխականորեն տրամադրված գնդերը, որոնք անցել էին բանվորների և գյուղացիների կողմը։ Դժբախտաբար, նրա ուժերը դեռևս սակավաթիվ էին և թույլ սպառազինված։ Հրաձգային բոլոր զորամասերը մտնում էին երեք հետևակ բրիգադների մեջ։ Հեծելազորը բաղկացած էր երկու գնդերից, հրետանին՝ երեք դիվիզիոնից և հինգ առանձին մարտկոցներից, ինչպես նաև երկու զրահագնացքներից՝ «Ազատամարտ» և «Մուսայելյան»։

11-րդ Կարմիր Բանակն անմիջապես տրամադրեց հայկական Կարմիր Բանակին այն ամենն, ինչ անհրաժեշտ էր նրան։ Բայց շուտով, օգտվելով նրանից, որ Կարմիր Բանակի զորամասերի մեծ մասը օգնության ձեռք էին մեկնել Վրաստանի աշխատավորությանը՝ մենշևիկյան տիրապետությունը տապալելու համար, դաշնակցական բանդաները անգլիացիների և թուրքերի առատաձեռն օգնությամբ 1921 թ. փետրվարի 16-ին ննգադավությամբ հակահեղափոխական խռովություն բարձրացրին և զավթեցին Երևանը։

Ստեղծվեց բարդ իրավիճակ։ Կառավարական բոլոր հիմնարկները և Կարմիր Բանակի սակավաթիվ զորամասերը նահանջեցին դեպի Ղամարլու և Արարատ կայարան ու կտրվեցին երկրի հյուսիսից։ Սովետական և կուսակցական ղեկավարության եռանդուն գործունեության շնորհիվ ստեղծվեց Ղամարլուի նշանավոր ռազմաճակատը։ 45 օր ու գիշեր այդ ռազմաճակատի մեկուսացած սակավաթիվ զորամասերը՝ բանակի հրամանատար Մ. Վ. Մոլկաչանովի և կոմիսար Ի. Ա. Սվիրիդովի գլխավորությամբ ետ էին մղում գերակշռող դաշնակցական բանդաների գրոհներն՝ իրենց տրամադրության տակ ունենալով ռազմամթերքի և պարենի չնչին պաշարներ։ Եթե չլիներ աշխատավորների անձնազոհ աջակցությունը կարմիր ջոկատներին, նրանց համար դժվար կլիներ դիմանալ այդպիսի լարված դրության։

Ահա թե ինչ է հաղորդել կոմիսար Սվիրիդովը այն պայմանների մասին, որոնցում գտնվում էին հեղափոխական զորքերը։ «Սարսափ ու զարմանք է համակում քեզ դիտելով անմոռաց մի պատկեր, երբ տասը տանջված մարդիկ, ցնցոտիների մեջ շարժվող ստվերներ, բոկոտն, կապտած, դուրս ցցված այտոսկրներով, ձյունի վրայով մի գերան են քարշ տալիս, որը այլ պայմաններում ի վիճակի կլիներ հեշտությամբ անել մի պատանի միայն... Գյուղացիներն իրենց վերջին ուժերն էին լարում՝ պայքարելու դաշնակների դեմ»։

Ղամարլուի ռազմաճակատի մեկուսացած զորքերին հյուսիսից նորից օգնության են հասնում 11-րդ Կարմիր Բանակի զորամասերը։ Ապրիլի 2-ին Երևանում մեկընդմիշտ վերականգնվեց սովետական կարգը։ Մնում էր միայն Սովետական Հայաստանը ամբողջությամբ մաքրել դաշնակցական բանդաների վերջին մնացորդներից։

Այսպես, համատեղ մարտերում և զրկանքներում ծնվում և ամրանում էր հայ ժողովրդի մեծ ու անքակտելի եղբայրական դաշինքը ռուս ժողովրդի և մեր երկրի այլ ժողովուրդների հետ։



digitised by A.R.A.R.@

Սովետական պետությունը երկրի խաղաղ շինարարության անցնելուց հետո համաչափ կերպով կրճատեց Կարմիր Բանակը քանակապես։ 1924 թվականին նրա շարքերում կային 562 հազար մարտիկ։ Բայց մեր երկիրը գտնվում էր թշնամի կապիտալիստական պետությունների շրջապատում, որոնք անհամբեր սպասում էին պատեհ առիթի, որպեսզի նորից հարձակվեն նրա վրա։ Այդ պատճառով խաղաղ պայմաններում ևս շարունակվում էր Զինված Ուժերի ամրապնդումը, նրանց նախապատրաստումը գալիք մարտերին։

Ռազմական շինարարության հարցերին ամենալուրջ ուշադրություն նվիրեցին կուսակցության X, XI, XII համագումարները։ 1924—25 թթ. անցկացվեց Կարմիր Բանակի էական վերակառուցում։ Նրա կազմակերպական մակարդակը խիստ բարձրացավ։ Սակայն Զինված Ուժերի համար առաջավոր տեխնիկական բազայի ստեղծումը արգելակվում էր հետամնաց էկոնոմիկայի պատճառով։

Երբեք չմոռանալով Վ. Ի. Լենինի ցուցումները, կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը քիչ բան չէին անում երկիրը հնարավոր ագրեսիայի դեմ նախապատրաստելու համար։ Բավական է հիշել, որ 9 տարվա ընթացքում՝ 1928—1937 թթ. կատարվել են ժողովրդատնտեսության զարգացման երկու վիթխարի հնգամյա պլաններ։ Արդյունքը եղավ այն, որ ՍՍՀՄ-ը ագրարային երկրից դարձավ աշխարհի ամենահզոր արդյունաբերական տերություններից մեկը։ Այդ հնարավորություն ստեղծեց Սովետական Բանակը զինել մարտական նոր տեխնիկայով։

Հաշվի առնելով երկրորդ համաշխարհային պատերազմ սկսվելուց հետո արագորեն աճող նոր իմպերիալիստական ագրեսիայի սպառնալիքը, կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը լրացուցիչ միջոցառումների դիմեցին մեր հայրենիքի մարտունակությունը ապահովելու համար։ 1939 թվականից մինչև 1941 թվականի հունիսը մենք ստիպված էինք Զինված Ուժերի քանակը գրեթե կրկնապատկել։ Այդ կարճ ժամանակամիջոցում կազմավորվել են 125 միայն հրաձգային դիվիզիաներ։ Եվ վարմանալի չէ, որ Ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակման նախօրեին շատ զորամասերում և միավորումներում զգացվում էր ո՛չ միայն կադրերի, այլև սպառազինության, մարտական տեխնիկայի և տրանսպորտի որոշակի պակաս։ Այդ պակասն ավելի ևս խորանում էր այն հսկայական առավելություններով, որ ուներ այդ ժամանակ ֆաշիստական Գերմանիան։ Նախքան Սովետական Միության վրա հարձակվելը նա արդեն պատերազմ էր մղում Եվրոպայում, որի ընթացքում կարողացել էր լրիվ մոբիլիզացնել հսկայական ուժեր։ Հենվելով իմպերիալիստական մոնոպոլիաների առատաձեռն տնտեսական օգնության վրա, նրան հաջողվել էր ստեղծել վիթխարի ռազմական արսենալ։ Եվրոպական շատ երկրների օկուպացումը հիտլերյան Գերմանիային հնարավորություն տվեց արտադրել մեկուկես-երկու անգամ ավելի արդյունաբերական արտադրանք, քան Սովետական Միությունը։ Ընդ որում, նրա տրամադրության տակ էին նաև զավթած երկրների բանակների մարտական տեխնիկան և սպառազինության հսկայական պաշարները։

Հեշտ հաղթանակներով արբեցած, հիտլերյան Գերմանիայի պարագլուխները ձգտում էին իրենց «արշավանքը դեպի Արևելք» ավարտել վեց շաբաթվա



ընթացքում։ Այդ նպատակին հասնելու համար նրանք սովետական սահմաններում կենտրոնացրել էին 181 դիվիզիա և 18 բրիգադ, որոնց կազմում կար 50 հազար հրանոթ և ականանետ, ավելի քան 3700 տանկ և գրոհային հրանոթ, ավելի քան հինգ հազար ինքնաթիռ։

Ինչպիսի՞ պետություն, աշխարհում ինչպիսի՞ բանակ կարող էր դիմադրել նման հուժկու ռազմական մեքենային։

Պատերազմի առաջին իսկ օրերից սովետական մարտիկները ցուցաբերեցին ապշեցուցիչ դիմացկունություն և հերոսականություն։ Սակայն հարձակման մոմենտին ֆաշիստական բանակի հսկայական առավելությունները չէին կարող առաջին շրջանում չանդրադառնալ պատերազմի ընթացքի վրա։ Սովետական զորքերը ստիպված էին նահանջել։ Հիտլերականներն օկուպացրին մեր երկրի մի զգալի մասը։ Սովետական ժողովուրդը ստիպված էր պատերազմի առաջին շրջանում ըմպել պարտությունների և անհաջողությունների դառը բաժակը։ Բայց նա երբեք չէր կորցնում հաստատ հավատը հաղթանակի նկատմամբ։ Հաղթանակի հավատը ոգեշնչում էր մարտիկներին ռազմաճակատում, պարտիզաններին՝ օկուպացված տերիտորիայում, սովետական աշխատավորներին՝ թիկունքում։ Մեր կուսակցությունը, ժողովուրդը չերերացին թշնամու առաջ։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Ժողկոմխորհը մշակեցին՝ ժողովրդի բոլոր ուժերը թշնամու դեմ պայքարելու համար մոբիլիզացնելու ծրագիրը։ Այն շարադրված էր ՍՍՀՄ Ժողկոմխորհի և ՀամԿ(բ)Կ ԿԿ հունիսի 29-ի դիրեկտիվում, ինչպես նաև Ի. Ստալինի 1941 թ. հուլիսի 3-ի ռադիոճառում։

Կոմունիստական կուսակցությունը սովետական ժողովրդին բացատրում էր Հայրենական մեծ պատերազմի արդարացի բնույթը, հայրենիքը և սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու սրբազան պարտականությունը։ Նա դիմեց բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, սովետական մտավորականությանը կոչով՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար։ Ամեն ինչ հաղթանակի համար»։

Թշնամուն ջախջախելու համար երկրի բոլոր ուժերը ամենաարագ կերպով մոբիլիզացնելու նպատակով, Համ(բ)Կ ԿԿ, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը համատեղ որոշումով ստեղծեցին պաշտպանության պետական կոմիտե, որի ձեռքում կենտրոնացվեց երկրում ամբողջ իշխանությունը՝ պետական, ռազմական և տնտեսական ղեկավարությունը։ Ստեղծվեց Գերագույն գլխավոր հրամանատարության կայանը։

Կարճ ժամկետում կուսակցության ղեկավարությամբ ամբողջ երկիրը վերածվեց միասնական-մարտական ճամբարի, ժողովրդական տնտեսությունը վերակառուցվեց պատերազմի կարիքներին համեմատ։ Հաջողվեց սպառնալիքի տակ գտնվող շրջաններից էվակուացնել 1360 խոշոր ձեռնարկություններ, որոնք շուտով սկսեցին գործել ռազմաճակատի համար։ Եթե 1941 թ. առաջին կիսամյակում արդյունաբերությունը արտադրել էր 792 հազար հրացան, 11 հազար ավտոմատ և գնդացիր, ավելի քան 15 հազար հրանոթ և ականանետ, 1800 տանկ, 3950 մարտական ինքնաթիռ, մոտ 19 միլիոն արկ և ական, ապա երկրորդ կեսում նա տվեց մեկ և կես միլիոն հրացան և կարաբին, 143 հազար ավտոմատ և գնդացիր, ութ հազար մարտական ինքնաթիռ, ավելի քան 40 միլիոն արկ և ական։

1942 թվականի վերջին երկիրն արդեն ուներ կարգավորված և արագորեն



digitised by A.R.A.R.@

աճող ռազմական տնտեսություն։ Ամենայն աներկբայությամբ արտահայտվեցին տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունները, կուսակցության մեծագույն կազմակերպական դերը, սովետական մարդկանց աշխատանքային հերոսականությունը։

Կարմիր Բանակը, ունենալով կայուն և կազմակերպված թիկունք, անքակտելիորեն կապված լինելով ամբողջ ժողովրդի հետ, օրեցօր ամրապնդվում էր։ Լենինգրադի, Կիևի, Սևաստոպոլի և Օդեսայի հերոսական պաշտպանությունը, Սմոլենսկի շրջանում տեղի ունեցած կատաղի մարտերը ցույց տվին, որ «բլիցկրիգը» լրիվ տապալվեց։ Պատերազմը տևական բնույթ ստացավ։

Ֆաշիստական բանակի պարտությունը Մոսկվայի մատույցներում ցրեց նրա անպարտելիության մասին ստեղծված առասպելը։ Վոլգայի ափին տեղի ունեցած ցասումնալի մենամարտում մեր Զինված Ուժերը շրջապատեցին և ջախջախեցին ֆաշիստական զորքերի ամենաուժեղ խմբավորումներից մեկը։ Գերմանական հրամանատարության ձեռքից խլվեց ստրատեգիական նախաձեռնությունը։

Նորից նախաձեռնությունն իր ձեռքը վերցնելու ֆաշիստների հուսահատ փորձը 1943 թվականի ամռանը Կուրսկի աղեղում վերջացավ նոր խորտակիչ պարտությամբ։ Հիտլերականներին չօգնեց նաև Դնեպրի ափերին նրանց ստեղծած չարաբաստիկ «Արևելյան պատնեշը»։ Սովետական զորքերի խորտակիչ հարվածները հաջորդում էին իրար. ֆաշիստական զորքերի ջախջախումը Լենինգրադի և Նովգորոդի տակ, նրանց կրած դաժան պարտությունը Աջափնյա Ուկրաինայում և Ղրիմում, Բելոռուսիայում, Մոլդավիայում և Մերձբալթյան երկրներում։ Ֆաշիստական գազանը ոռնոցով ետ էր սողում դեպի իր որջը։

Բեռլինի համար մղվող ճակատամարտում սովետական զորքերի տարած փայլուն հաղթանակը ֆաշիստական Գերմանիային և նրա զինված ուժերին լիակատար պարտության մատնեց։

Հայտնի է, որ հիտլերյան Գերմանիայի նկատմամբ տարած հաղթանակը ձեռք էր բերվել հակահիտլերյան կոալիցիայի պետությունների՝ ՍՍՀՄ-ի, Անգլիայի, ԱՄՆ-ի և Ֆրանսիայի ընդհանուր ջանքերով։ Ֆաշիստական հորդաների դեմ մղվող պայքարում ակտիվորեն մասնակցել են Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի և այլ երկրների ժողովուրդները, իսկ պատերազմի եզրափակիչ էտապում՝ նաև Ռումինիայի, Հունգարիայի, Բուլղարիայի և Ֆինլանդիայի ժողովուրդները։

Սակայն արդարությունը պահանջում է ասել, որ հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմի հիմնական ծանրությունը իրենց ուսերին վերցրին մեր երկիրը և մեր Զինված Ուժերը։ Պատերազմի առաջին երեք տարիներին Սովետական Բանակի դեմ գործում էին ավելի քան 200 ֆաշիստական դիվիզիաներ, մինչդեռ անգլո-ամերիկյան զորքերի դեմ՝ մոտ 20 դիվիզիա։ Բացի գերմանական դիվիզիաներից, սովետա-գերմանական ռազմաճակատում պատերազմի առաջին երեք տարիներին կռվել են հիտլերյան Գերմանիայի սատելիտների ավելի քան 70 դիվիզիաներ։

Երկրորդ ճակատի բացումից հետո էլ սովետական զորքերի դեմ շարունակում էին կռվել 179 առավել մարտունակ գերմանական դիվիզիաներ, մինչդեռ Արևմուտքում նրանց թիվը հասնում էր միայն 119-ի՝ այն էլ ոչ լավագույնները։

Սովետական զորքերի փառավոր հաղթանակները ո՛չ միայն սովետական ռազմիկների և պարտիզանների մարտական վարպետության և մասսայական հերոսության, այլև բանվորների, կոլտնտեսականների, կոնստրուկտորների,



գիտնականների և ինժեներների անձնվեր աշխատանքի, ինչպես նաև գյուղատնտեսության աշխատողների աշխատանքային սխրագործության արդյունք էին։ Պատերազմի վերջում Սովետական Բանակը հիտլերյան բանակին ինքնաթիռներով գերազանցում էր քառապատիկ, իսկ տանկերով և ինքնագնացհրետանային սարքավորումներով՝ եռապատիկ։ Գյուղատնտեսության աշխատողները պատերազմի տարիներին Զինված Ուժերին և քաղաքների բնակիչներին տվել են 4312 միլիոն փութ հացահատիկ։

Սովետական ժողովրդի մեծ հաղթանակը Հայրենական մեծ պատերազմում սոցիալիստական սիստեմի առավելությունների վառ ապացույցն է։ Ահա թե ինչու Սովետական Միությունը պատերազմում ո՛չ միայն ռազմական, այլև տնտեսական հաղթանակ տարավ հիտլերյան Գերմանիայի նկատմամբ։

Դրա հետ միասին դա ամենամարդասեր մարքս-լենինյան գաղափարախոսության հաղթանակն էր ֆաշիստական մարդատյաց գաղափարախոսության նկատմամբ։ Հայրենական մեծ պատերազմը մի անգամ ևս ցուցադրեց լենինյան այն խոսքերի ճշմարտությունը, որ հաղթանակը ամեն մի պատերազմում վերջին հաշվով պայմանավորվում է այն մասսաների մարտական ոգով, որոնք արյուն են թափում ռազմադաշտում։

Այն գիտակցությունը, որ այդ պատերազմում մենք պաշտպանում էինք մեր ազատությունն ու անկախությունը, մեր մեծ հեղափոխության նվաճումները, սոցիալիզմի և կոմունիզմի, ամբողջ աշխարհի աշխատավորների ինտերնացիոնալ գործը, այդ ամենն առաջացնում էր սովետական մարդկանց մասսայական հերոսականություն։ Նիկոլայ Գաստելլոյի սխրանքը կրկնեցին 80 մարդ։ Ավելի քան 200 մարտիկ Ալեքսանդր Մատրոսովի օրինակով թշնամու դզոտի հրակնատը փակեցին իրենց մարմնով։ Հերոսություն էին ցուցաբերում ամբողջական ստորաբաժանումներ, զորամասեր և միավորումներ։ Գնդերին և դիվիզիաներին հանձնվել է ավելի քան 10.900 շքանշան։ Ավելի քան 11 հազար սովետական մարտիկներ արժանացել են Սովետական Միության հերոսի կոչման։ Միլիոնավոր սովետական մարդիկ պարգևատրվել են ՍՍՀՄ շքանշաններով և մեդալներով։

Հայրենական Մեծ պատերազմը հատուկ ուժով ցուցադրեց, որ առանց կոմունիստական կուսակցության կազմակերպական և ղեկավար ուժի մենք չէինք կարող հաղթանակել մի այդպիսի դժվարին ճակատամարտում։ Կուսակցության ղավակները եղել են ամենադժվարին տեղամասերում։ Եթե պատերազմի սկզբում Զինված Ուժերի շարքում 1300 հազար կոմունիստներ կային, ապա վերջում նրանց թիվը հասնում էր 3,5 միլիոնի, կամ կուսակցության ամբողջ կազմի 60 տոկոսը։

Սոցիալիստական սիստեմի տնտեսական և կազմակերպական հնարավորությունները, սովետական հասարակության գաղափարական և քաղաքական միասնությունը, սովետական հայրենասիրությունը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը, նրանց համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը, Սովետական Բանակի անօրինակ հերոսականությունը և արիությունը՝ ահա այն գլխավոր գործոնները, որոնք կանխորոշեցին սովետական ժողովրդի հաղթանակը Հայրենական Մեծ պատերազմում։

Սովետական Միության բոլոր ժողովուրդների անխախտ բարեկամության վառ արտահայտություն հանդիսացավ նրանց անձնվեր նվիրվածությունը թշնամու նկատմամբ տարվող մեծ հաղթանակի գործին։ Սովետական բոլոր ժո-



digitised by A.R.A.R.@

ժողովուրդների որդիներն ու դուստրերը՝ կռվելիս լինեին նրանք Կովկասում, ռուսական հարթավայրերում, Ուկրաինայի տափաստաններում, Բելոռուսիայի անտառներում, թե Մերձբալթյան լճերում, ամենուրեք նրանք կռվում էին այնպես, կարծես կանգնած էին իրենց հայրենի օջախի շեմին։ Սովետական Միության յուրաքանչյուր ժողովուրդ իր արժանի ավանդը ներդրեց ֆաշիստական ագրեսորի ջախջախման գործում։ Եվ ինձ համար միշտ էլ առանձնապես հաճելի է եղել նշել, որ Սովետական Հայաստանի ժողովուրդն էլ իր բոլոր ուժերը նվիրաբերել է այդ մեծ գործին։

Պատերազմի առաջին իսկ օրերից հայ ժողովուրդը տասնյակ հազարավոր իր որդիներին և դուստրերին ուղարկեց ռազմաճակատ՝ զենքը ձեռքին պաշտպանելու իրենց Սովետական հայրենիքը։ Պատերազմի ընթացքում հայ ժողովրդի գրեթե մեկ երրորդը անմիջական մասնակցություն ունեցավ այդ ահեղ գոտեմարտին։

Սովետա-գերմանական բազմահազար կիլոմետրով ձգվող հսկայական ռազմաճակատում՝ Արկտիկայից մինչև Սև ծով հանդիպում էինք հայ մարտիկների, որոնք իրենց կյանքը չէին խնայում ֆաշիստական զավթիչների դեմ մղվող մարտերում։ Հայ ժողովրդի զավակները եղել են նաև Բրեստի ամրոցի անմահ հերոսների շարքերում։ 1941 թվականի հուլիսին, երբ ֆաշիստական զորքերը խորացան Բելոռուսիայի հողում, հնագույն ամրոցի մի բուռը պաշտպաններ շարունակում էին հերոսաբար կռվել նրա փլատակներում՝ կաշկանդելով հակառակորդի հետևակային դիվիզիան։ Ամրոցի մարտիկների առաջին իսկ խիզախ հակագրոհը գլխավորեց կոմերիտականների առաջնորդ Սամվել Մաթևոսյանը։

Հայ ժողովրդի քիչ զավակներ չեն հռչակվել Մոսկվայի հերոսական պաշտպանության մարտերում։ Նրանցից մեկի մասին, այդ դժվարին օրերին, սովետական գրող Իլյա Էրենբուրգը հիացմունքով հաղորդել է. «Հայաստանի զավակը, հաղթանդամ, սևաչյա սերժանտ Հակոբյանը զոհվեց հերոսի մահով։ Տեսնելով, որ ֆաշիստները շրջապատել են լեյտենանտ Վասիլևին, Հակոբյանը գրոհեց թշնամիների վրա։ Նա սպանեց 16 ֆաշիստ»։

Լենինգրադի և Օդեսայի հերոս պաշտպանների մեջ լայնորեն հռչակվեց անվանի օդային աս, Սովետական Միության կրկնակի հերոս Նելսոն Ստեփանյանը։ Խիզախների խիզախը, ինչպես գովաբանում են նրան իր մարտական բարեկամները պատերազմի տարիներին, կատարել է 239 մարտական թռիչք, վայր է գցել 30 ֆաշիստական ինքնաթիռ, այրել է 85 տանկ և 13 ռազմանավ, ջարդել է 105 հրանոթ և մոտ 600 ավտոմեքենա։ Այդ փառաբանված հերոսը 1944 թվականի դեկտեմբերի 14-ին Լիբավայի շրջանում մասնակցեց կատաղի ճակատամարտին ընդդեմ թշնամու նավերի հսկայական քարավանի և նրանց պաշտպանող ֆաշիստական ինքնաթիռների։ Նելսոն Ստեփանյանը զոհվեց այդ մարտում։ Բայց թշնամու վրա թանկ նստեց նրա մահը. վայր գցվեց 21 ֆաշիստական ինքնաթիռ և խորտակվեց 4 ռազմանավ։

Ոչ միայն ցամաքի վրա և օդում, այլև ծովի վրա ամբողջ երկրով մեկ տարածվել էր հայ մարտիկների սխրանքների փառքը։ Հետմահու պարգևատրման ներկայացված լեյտենանտ ծովային Վահան Հակոբյանի մարտական արժանիքների մասին այսպես է հաղորդել Բալթիական նավատորմի հրամանատարությունը. «Արհամարհելով մահը, նա փրկեց 14 կատեր-տրալերներ, որոնք կարողացան հաջողությամբ կատարել իրենց մարտական խնդիրը»։

Երբ պատերազմը մոտեցավ Կովկասի նախալեռներին, հայ ժողովուրդը,



ինչպես և Անդրկովկասի մյուս ժողովուրդները, կազմավորեց իր չորս ազգային դիվիզիաները, որոնք խիզախությամբ դիմադրեցին թշնամու զորքերի կատաղի գրոհներին և ապա սովետական ամբողջ բանակի հետ քշեցին նրանց դեպի ետ։

Հայրենական Մեծ պատերազմում բեկման շրջան հանդիսացած 1943 թվականի փետրվարին հայ ժողովուրդը բոցավառ մի կոչ-նամակով դիմեց ռազմաճակատում կռվող իր զավակներին. «Մեծագույն ոգևորությամբ հետևում ենք ձեր պայքարին,— գրում էին հայերն իրենց զավակներին։— Զավակներ, ցույց տվեք, որ արժանի եք ձեր ժողովրդին։ Միայն դեպի արևմուտք շարժվելով դուք կարագացնեք ձեր հաղթական վերադարձը ձեր հայրենի տունը, հայրենի Հայաստան...»։ Հայ մարտիկները մասսայական մարտական սխրանքներով պատասխանեցին իրենց հայրերի և մայրերի կոչին։ Նրանք փառավորեցին իրենց ժողովրդին եղբայրական շատ հանրապետությունների ազատագրման ժամանակ։ Ֆաշիստների դեմ մղվող մարտերում զոհված հայ մարտիկների գերեզմաններ դուք կհանդիպեք և՛ ռուսական հողում, և՛ Մերձբալթյան հանրապետություններում, և՛ Բելոռուսիայում, և՛ Ուկրաինայում, և՛ Մոլդավիայում։ Փառավոր հիշատակ թողին նրանք նաև եղբայրական Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Հարավսլավիայի հողերում։

Հայկական դիվիզիաները ցուցաբերեցին փայլուն մարտական հատկություններ։ Նրանց փառավոր մարտական գործերը, ինչպես հայելու մեջ, արտացոլվում են պանծալի 89-րդ հայկական հրաձգային Թամանյան դիվիզիայի մարտական ուղու մեջ, որն իր դժվարին ռազմի ճանապարհն անցավ Կովկասի նախալեռներից մինչև Բեռլին։ Ամբողջ պատերազմում այդ դիվիզիան ղեկավարեց հայ ժողովրդի պանծալի զավակ գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանը։ Իր մարտական դրոշները փառքով պսակեց դիվիզիան Կուբանի և Նովոռոսիյսկի ազատագրման համար մղված մարտերում։ Նրա գնդերը հիտլերականներին Թամանյան թերակղզուց վռնդեցին Կերչի նեղուցը և դժվարին պայմաններում դեսանտ հանեցին Ղրիմում։ Թամանյան թերակղզում ցուցաբերած մարտական սխրանքների համար նա արժանացել է «Թամանյան» պատվավոր անվանման։

Այդ մարտերում Հունան Ավետիսյանը կրկնեց Ալեքսանդր Մատրոսովի անմահ սխրանքը. Նա իր մարմնով ծածկեց ֆաշիստական դզոտի հրակնատը և ապահովեց իր վաշտի գրոհի հաջողությունը։ Հայաստանի այս նշանավոր զավակը և դիվիզիայի նրա երկու մարտական ընկերները՝ Ջհան Կարախանյանը և Սուրեն Առաքելյանը արժանացան գերագույն պատվի՝ Սովետական Միության հերոսի կոչման։

Թամանյան դիվիզիան, Կերչի թերակղզում նրա մարտիկների ցուցաբերած մասսայական հերոսականության համար, պարգևատրվեց Կարմիր Դրոշի առաջին մարտական շքանշանով։ Թշնամու և ոչ մի խորամանկություն չկարողացավ կասեցնել նրա հաղթական առաջխաղացումը Ղրիմի թերակղզում։ Թամանյան դիվիզիայի մարտիկները նորից աչքի ընկան Սևաստոպոլի տակ կառուցված ֆաշիստական ամրությունների վրա կատարված գրոհների ժամանակ։ Թշնամու պաշտպանության բանալին հանդիսացող Գոռնայա բարձունքի վրա կատարված սրընթաց և կատաղի գրոհը ոսկի էջով մտավ Սևաստոպոլի ազատագրման պատմության մեջ։ Այդ գրոհի հարյուրավոր մասնակիցներ պարգևատրվեցին շքանշաններով և մեդալներով, իսկ նրանցից 5 հոգու՝ Ս. Բաղդասարյանին, Ա. Հարությունյանին, Խ. Խաչատրյանին, Հ. Մկրտչյա-



digitised by A.R.A.R.@

նին և Վ. Ռոստոմյանին շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում։ Դիվիզիայի երկու գնդեր ստացան Սևաստոպոլյան պատվավոր անվանում։ Իր մարտիկների հերոսականության համար դիվիզիան պարգևատրվեց Կարմիր Դրոշի երկրորդ մարտական շքանշանով։

Դիվիզիան հաստատուն կերպով նվաճեց Սովետական Բանակի առաջավոր միավորման փառքը։ Հետագայում հայկական դիվիզիայի զորամասերը մասնակցել են Լեհաստանի ազատագրմանը, մարտերով գետանցել են և հաստատապես իրենց ձեռքում են պահել Վիսլա և Օդեր գետերի պլացդարմները։ Հատկապես դժվարին դրություն էր ստեղծվել Օդերի պլացդարմում, որտեղ նրա գնդերը ստիպված էին ետ մղել ֆաշիստական տանկային ուժերի օրական 8-ից 10-ը կատաղած հակագրոհներ։

1945 թվականի ապրիլին այդ փառավոր դիվիզիայի մարտիկներին մենք տեսնում ենք արդեն ֆաշիզմի որջը՝ Բեռլինը գրոհողների թվում։ Նրանք հաջողությամբ հարվածում են հիտլերականներին, որոնք ծվարել էին Համպոլդ—Հայդն զբոսայգու երկաթբետոնե ամրություններում, գրոհում են գերմանացիների խիստ ամրացված դիրքերը Ռեյնիկենդորֆ ոստե, Վեդդինգ ու այլ շրջաններում։ Օդերի պլացդարմում ցուցաբերած հերոսական գործողությունների և Բեռլինի գրոհին մասնակցելու համար դիվիզիան նորից պարգևատրվեց շքանշանով՝ այս անգամ Կուտուզովի 2-րդ աստիճանի շքանշանով։ Մարտիկների մի մեծ խումբ պարգևատրվեց շքանշաններով և մեդալներով, իսկ գումարտակի հրամանատար Հ. Բաբայանը համալրեց Սովետական Միության հերոսների շարքերը։

Սովետական ժողովուրդը ջերմ սիրով պահպանում է հայ մարտիկների փառավոր մարտական սխրանքների հիշատակը։ Ամենուրեք, որտեղ նրանք կռվել և զոհվել են հանուն Հայրենիքի երջանկության և ազատության, այժմ կանգնեցված են հուշարձաններ։ Վերխնե-Բականսկայա ստանիցայում ինձ վիճակվել է խոնարհել գլուխս Հունան Ավետիսյանի հուշարձանի առաջ։ Սևաստոպոլի տակ, այն տեղում, որտեղ թաղված են Գոռնայա բարձունքի գրոհի ժամանակ զոհված Թամանյան դիվիզիայի մարտիկները, հիասքանչ մի մոնումենտ է կառուցված, որի վրա գրված է՝ «Հավերժ հիշատակ Հայկական Թամանյան Կարմրադրոշ դիվիզիայի մարտիկներին, որոնք հերոսի մահով ընկան Սևաստոպոլը գերմանական զավթիչներից ազատագրելիս»։ Մի անգամ, պաշտոնական այցով լինելով Ուկրաինայում, ես Դնեպրի աջ ափին տարածված մի գյուղում, տեղական դպրոցի բակում մի կոթող տեսա, որի ստորոտում թափված էին նոր քաղած դաշտային ծաղիկների փնջիկներ։ Կոթողի վրա գրված էր՝ «Գարեգին Բալայան»։ Այստեղ է հանգչում Հայաստանի փառավոր զավակներից մեկի աճյունը, որն իր գումարտակով առաջինը մարտերով գետանցեց Դնեպրը և այդ գյուղի համար մղված մարտում զոհվեց հերոսի մահով. երբ ես հարցրի գյուղի բնակիչներին, թե ինչու են նրան թաղել դպրոցի պատուհանների տակ, նրանք պատասխանեցին՝ «Թող մեր երեխաների աչքերը միշտ տեսնեն այն մարդու անունը, որը զոհվեց մեր ազատագրման համար»։ Այսպիսի կոթողներ կարելի է տեսնել հարյուրավոր ազատագրված գյուղերում և քաղաքներում։

Քիչ հուշարձաններ չեն կառուցված նաև Հայաստանում, հերոսների հայրենիքում։ Հայկական հնագույն սովորության համաձայն Հայաստանի շատ գյուղերում կառուցված են աղբյուր-հուշարձաններ՝ ի պատիվ զոհված մարտիկների։



Հայ ժողովուրդն իրավունք ունի պարծենալու այն արժանավայել ներդրումով, որ նա արել է Եվրոպայում ֆաշիզմի ջախջախման ընդհանուր գործում։ Սովետական Հայաստանի մեկուկես միլիոնանոց ժողովուրդը պատերազմի տարիներին առաջ քաշեց նշանավոր զորավարների մի ամբողջ սերունդ։ Ավելի քան 50 գեներալներ, նրանց թվում Սովետական Միության նավատորմի ծովակալ Իվան Ստեփանի Իսակովը և ավիացիայի մարշալ Սերգեյ Արտեմի Խուդյակովը (Խանֆերյանը), պատվով էին կատարում իրենց զինվորական պարտքը ֆաշիստական հորդաների դեմ մղվող պատերազմի տարիներին։ Հայ ժողովրդի ռազմական քաջարիության և ջերմ հայրենասիրության մասին է վկայում և այն փաստը, որ նրա շարքերից դուրս են եկել Սովետական Միության 100 հերոս, ավելի քան 70 հազար հայ պատերազմի տարիներին պարգևատրվել են շքանշաններով և մեդալներով և 360 հազար՝ «1941—1945 թթ. Հայրենական Մեծ պատերազմում ցուցաբերած քաջարի աշխատանքի համար» մեդալներով։

Հայ ժողովրդին շնորհավորելով Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության 25-ամյակի առթիվ, Սովետական Միության կառավարությունը և Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն ըստ արժանվույն գնահատեցին հայ ժողովրդի արժանիքները։ «Հայրենական պատերազմի տարիներին,— նշել են նրանք իրենց ողջույնի մեջ,— հայ ժողովուրդը պատվով է կատարել իր պարտքը Հայրենիքի հանդեպ»։



Սովետական ժողովրդի հաղթանակը Հայրենական Մեծ պատերազմում հսկայական ազդեցություն է գործել համաշխարհային պատմության զարգացման վրա։ Ազգային-ազատագրական շարժումները Աֆրիկայում և Ասիայում քայքայեցին իմպերիալիզմի գաղութային սիստեմը և առավելագույն չափով թուլացրին նրա քաղաքական և տնտեսական բազան։ Իմպերիալիստներն ամեն կերպ փորձում են կանգնեցնել այդ հեղափոխական պրոցեսը։ Դրա ապացույցներից մեկը ամերիկյան իմպերիալիզմի կողմից մղվող ավազակային պատերազմն է վիետնամական հերոսական ժողովրդի դեմ։ Դա մարտի կոչ է՝ ուղղված բոլոր խաղաղասեր ժողովուրդներին, սպառնալիք է ընդհանուր խաղաղությանը։ Սովետական Միությունն օգնություն է ցույց տալիս Վիետնամի դեմոկրատական Հանրապետությանը ագրեսիայից պաշտպանվելու գործում։ Եթե անհրաժեշտ լինի, այդ օգնությունը կավելացվի։

Մերձավոր արևելքում ծագած պատերազմում ևս Սովետական Միությունը և սոցիալիստական երկրները շարունակում են իրենց մեծ ու անշահախնդիր օգնությունն արաբական ժողովուրդներին, Իսրայելի զավթողական ոտնձգություններն իսպառ խափանելու նպատակով։

Չի կարելի նաև մոռանալ Արևմտյան Գերմանիայի ռևանշիստական շրջանների կողմից խաղաղությանն սպառնացող վտանգի մասին, որոնք ձգտում են իրենց ձեռքը վերցնելու միջուկային զենքը։ Այդ պատճառով կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը, մեր ամբողջ ժողովուրդը մշտապես հոգում են հայրենիքի և ամբողջ սոցիալիստական լագերի պաշտպանունակության անշեղ բարձրացման մասին։ Մենք ոչինչ չենք խնայում, որպեսզի մեր Զինված Ուժերի մարտական հզորությունը պահպանենք այնպիսի մակարդակի վրա, որը հնարավորություն կտա մեզ ջախջախելու ամեն մի ագրեսորի։



digitised by A.R.A.R.@

Զինված Ուժերի գլխավոր հարվածային ուժ են դարձել ստրատեգիական նպատակի հրթիռային զորքերը, որոնք ընդունակ են հարվածել թշնամուն 12—13 հազար կիլոմետր հեռավորության վրա, իսկ գլոբալային հրթիռներով՝ ամեն մի տարածության վրա։

Արմատապես փոխվել է նաև ցամաքային զորքերի կերպարանքը։ Նրանք դարձել են վերին աստիճանի արագաշարժ և ունեն վիթխարի կրակային հզորություն։ Ահեղ ուժ են դարձել օդային-դեսանտային զորքերը, որոնք կարող են մարտական գործողություններ կատարել հակառակորդի խոր թիկունքում, դրա համար իրենց տրամադրության տակ ունենալով այն բոլորն, ինչ անհրաժեշտ է՝ ընդհուպ մինչև միջին չափի տանկեր։ Նրանք այժմ ընդունակ են վճռելու ամեն մի, այդ թվում՝ նաև ստրատեգիական խնդիր։

Ներկայումս մեր ավիացիան ունի ամենաարդիական ռեակտիվ մարտական ինքնաթիռներ և տարբեր տեսակի ուղղաթիռներ։ Նրանք հագեցած են սպառազինման տարբեր տեսակներով, այդ թվում նաև՝ միջուկային լիցքով օժտված հրթիռներով։ Մենք ունենք աշխարհում ամենահզոր ստորջրյա հրթիռակիր նավատորմիղ։ Մարտական մեծ հնարավորություններ ունեն սովետական ռազմա-ծովային տորմիղի վերջրյա ուժերը։ Երկրի հակաօդային պաշտպանության զորքերի տրամադրության տակ ներկայումս կան այնպիսի միջոցներ, որոնք ապահովում են մեր հնարավոր հակառակորդների ամեն տեսակի ինքնաթիռների և մեծաքանակ հրթիռների հուսալի ոչնչացումը։

Սովետական Զինված Ուժերը, լինելով Հոկտեմբերյան Մեծ հեղափոխության ծնունդ և դաստիարակված Լենինի ու կոմունիստական կուսակցության կողմից, վայելում են ժողովրդի սերն ու վստահությունը։ Նրանք անխորտակելի արգելք են այն բոլոր ուժերի առաջ, որոնք կհամարձակվեն ոտնձգություն անել հեղափոխության նվաճումների դեմ։ Սովետական ժողովրդի և սոցիալիստական համագործակցության երկրների ստեղծարար աշխատանքը կայուն և հուսալի պաշտպանություն ունեն։





# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՆՃԱՐԵՂ ՀԻՄՆԱԴԻՐԸ

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

Պատմությանը հայտնի են հեղափոխություններ, որոնք խորտակել են դարերով գոյություն ունեցող հասարակական կացութաձևերը և հաստատել նորը։ Բայց որքան էլ նշանակալից են անցյալի հեղափոխությունները, դրանցից և ոչ մեկը չի կարող համեմատվել Հոկտեմբերյան հեղափոխության հետ՝ թե իր բնույթով և թե վերափոխման մասշտաբներով։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։

Հոկտեմբերի հաղթանակը հաստատեց սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունը, պատմական քննություն բռնեց պրոլետարիատի դիկտատուրայի և սոցիալիզմի հաղթանակի մարքս-լենինյան ուսմունքը։

Դեռևս մինչև Մարքսն առաջադեմ որոշ մտածողներ նկատել էին, որ հասարակությունը կազմված է միմյանց հետ բախվող դասակարգերից՝ ունևորներից և չունևորներից։ Մարքսից էլ առաջ բուրժուական պատմաբանները շարադրել էին դասակարգային կռվի պատմական զարգացումը, իսկ բուրժուական տնտեսագետները տվել էին դասակարգերի տնտեսական անատոմիան։ Մարքսի մեծագույն ծառայությունը կայանում է նրանում, որ նա գիտականորեն ապացուցեց, «...1) որ դասակարգերի գոյությունը կապված է արտադրության զարգացման որոշ պատմական ֆազերի հետ միայն, 2) որ դասակարգային պայքարն անհրաժեշտաբար տանում է դեպի պրոլետարիատի դիկտատուրան, 3) որ այդ դիկտատուրան ինքը սոսկ մի անցումն է դեպի ամեն տեսակ դասակարգերի ոչնչացում ու դեպի անդասակարգ հասարակությունը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատոր 2, էջ 518)։ Վ. Ի. Լենինն այս դրույթը համարում է այն փորձաքարը, որի վրա ստուգվում է մարքսիզմի ճշմարիտ ըմբռնումն ու ճանաչումը։ Մարքսիստ է միայն նա, գրում էր Լենինը, ով դասակարգերի կռվի ճանաչումը տարածում է մինչև պրոլետարիատի դիկտատուրայի ճանաչումը։

Իսկ ինչո՞ւմն է բանը։ Ինչո՞ւ է Վ. Ի. Լենինը պրոլետարիատի դիկտատուրայի հարցը համարում գլխավորը Մարքսի ուսմունքում։

Դասակարգային հասարակության ամբողջ պատմությունն անհերքելիորեն ապացուցել է, որ ոչ մի դասակարգ չի կարող լուծել իր առջև դրված խնդիրները, չի կարող տիրապետության հասնել իր ձեռքի տակ չունենալով դա-



digitised by A.R.A.R.@

սակարգային հակառակորդներին հարկադրելու անհրաժեշտ միջոցներ՝ զինված ուժեր, կառավարման ապարատ, դատական պատժիչ օրգաններ: Այստեղից էլ մարքսիզմը ուսուցանում է, որ ամեն մի հեղափոխության, մասնավորապես սոցիալիստական հեղափոխության հիմնական հարցը քաղաքական տիրապետություն նվաճելու, տապալված դասակարգերի նկատմամբ ոչնչով չսահմանափակված իշխանություն՝ դիկտատուրա հաստատելու հարցն է: Սակայն ի տարբերություն մյուս հեղափոխությունների սոցիալիստական հեղափոխությունը չի ավարտվում իշխանության գրավումով, որովհետև սոցիալիստական կացութաձևը ծնունդ չի առնում կապիտալիստական հարաբերությունների ընդերքում: Այն պետք է նոր ստեղծվի: Պրոլետարիատի դիկտատուրան հաղթանակած բանվոր դասակարգի դասակարգային պայքարի շարունակությունն է, բայց և միաժամանակ նրա ստեղծագործական էության դրսևորման մի ձևը: Դիկտատուրան պրոլետարիատին անհրաժեշտ է նաև հին բուրժուական հասարակությունը նորով փոխարինելու, սոցիալիզմի և կոմունիզմի էկոնոմիկան կազմակերպելու, աշխատավորությանը կոմունիստական ոգով դաստիարակելու, վերջին հաշվով՝ ամեն տեսակի դասակարգերի ոչնչացման ու անդասակարգ հասարակության անցնելու համար:

Պրոլետարիատի դիկտատուրայի մարքսյան տեսությունը պաշտպանելով ամեն կարգի հարձակումներից, Լենինը բազմակողմանիորեն բացահայտեց բուրժուազիայի դիկտատուրայի էությունը և մշակեց բուրժուական պետության նկատմամբ պրոլետարիատի ու նրա կուսակցության վերաբերմունքի հարցը: Վերլուծելով ու ընդհանրացնելով սոցիալիստական հեղափոխության փորձը, նա միաժամանակ տեսական ու գործնական նոր դրույթներով հարստացրեց պրոլետարիատի դիկտատուրայի մարքսյան տեսությունը: Բնորոշելով պրոլետարիատի դիկտատուրայի էությունը և նրա հիմնական խնդիրները, Վ. Ի. Լենինը 1919 թվականին գրում էր. «Պրոլետարիատի դիկտատուրան համառ պայքար է՝ արյունոտ ու անարյուն, բռնի ու խաղաղ, ռազմական ու տնտեսական, մանկավարժական ու ադմինիստրատորական պայքար հին հասարակության ուժերի և տրադիցիաների դեմ» (Երկեր, հ. 31, էջ 35):

Հասկանալի է, որ քանի դեռ երկրում վերացված չեն շահագործող դասակարգերը, պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը պետք է իրագործի տապալված, բայց դեռևս դիմադրող դասակարգերի ճնշումը: Ըստ որում, շահագործողների դիմադրության ճնշման ձևերը տարբեր են: Այն կարող է լինել բռնի միջոցներով, եթե տապալված դասակարգերը զինված դիմադրություն են ցույց տալիս նոր իշխանությանը: Այն կարող է արտահայտվել նաև տնտեսական ու քաղաքական սահմանափակումների, այլ կերպ ասած, խաղաղ միջոցներով: Սակայն որքան էլ կարևոր է շահագործող դասակարգերի դիմադրությունը ճնշելու ֆունկցիան, այն նպատակին հասնելու միջոց է միայն: Պրոլետարիատի դիկտատուրայի գլխավոր խնդիրը սոցիալիստական հասարակության կառուցումն է:

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո ստեղծված պատմական իրադրությունը հատկապես սրեց սոցիալիստական հայրենիքի պաշտպանության հարցը: Այստեղից էլ այն հետևությունը, որ տապալված դասակարգերի դիմադրության ճնշումը և օտարերկրյա զավթիչներից երկրի պաշտպանությունը սոցիալիստական պետության կարևոր ֆունկցիան է: Ահա թե ինչու Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո Վ. Ի. Լենինը ձեռնամուխ եղավ



սովետական պետության բանակի կազմակերպմանը: Սա մի նոր, շատ դժվարին գործ էր:

Պրոլետարիատը, սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, բռնություն է գործադրում և պետք է այդ անի, քանի դեռ թշնամիները հարկադրում են, բայց դա չէ գլխավորը պրոլետարիատի դիկտատուրայում: Պրոլետարիատի դիկտատուրան, գրում է Լենինը, «... միայն բռնություն չէ շահագործողների վերաբերմամբ և նույնիսկ ոչ գլխավորապես բռնություն: Այդ հեղափոխական բռնության տնտեսական հիմքը, նրա կենսունակության և հաջողության երաշխիքն այն է, որ պրոլետարիատը ներկայացնում և իրականացնում է աշխատանքի հասարակական կազմակերպության ավելի բարձր տիպ՝ կապիտալիզմի համեմատությամբ: Դրանումն է էությունը: Դրանումն է կոմունիզմի անխուսափելի լիակատար հաղթանակի ուժի աղբյուրը և գրավականը» (Երկեր, հ. 29, էջ 531):

Վ. Ի. Լենինը պրոլետարիատի դիկտատուրայի պետության կարևորագույն խնդիրն էր համարում սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծումը, սոցիալիստական նոր արտադրահարաբերությունների կազմավորումը: Այդ նպատակով էլ սովետական պետությունն իրագործում է տնտեսական, կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական ֆունկցիաներ: Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն իրականացնում է վերահսկողությունը աշխատանքի ու սպառման չափի նկատմամբ, պաշտպանում է սոցիալիստական օրինականությունն ու իրավակարգը:

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը ծնունդ տվեց սոցիալիստական պետության մի նոր՝ սոցիալիզմի երկրների հետ համագործակցության և փոխօգնության ֆունկցիային: Սովետական պետության և սոցիալիստական պետությունների միջև քաղաքական, տնտեսական և մյուս կապերի ամրապնդումն ու զարգացումը դարձել է սովետական պետության արտաքին քաղաքականության գլխավոր ուղղություններից մեկը:

Ելնելով ստեղծագործական մարքսիզմի դիրքերից, ամփոփելով Փարիզյան կոմունայի և 1905—1917 թվականների սովետների փորձը, Լենինը եկավ այն եզրակացության, որ պրոլետարիատի դիկտատուրայի լավագույն ձևը ոչ թե պառլամենտական դեմոկրատական հանրապետությունն է, այլ սովետների հանրապետությունը: «Ո՛չ թե պառլամենտական հանրապետություն,— Բ. Գ. սովետներից դրան վերադառնալը կլիներ մի քայլ դեպի ետ,— այլ բանվորների, բատրակների և գյուղացիների դեպուտատների սովետների հանրապետություն ամբողջ երկրում, վարից մինչև վեր» (Երկեր, հ. 24, էջ 6):

Վ. Ի. Լենինի այս հայտնագործությունը մի նոր ներդրում էր կապիտալիզմից սոցիալիզմին անցման ժամանակաշրջանում հասարակության քաղաքական կազմակերպության ձևերի մասին մարքսիստական տեսության և հեղափոխական պրակտիկայի գանձարանում: Նա գտնում էր, որ եթե հեղափոխական դասակարգերի ժողովրդական ստեղծագործությունը չստեղծեր սովետները, ապա պրոլետարական հեղափոխությունը Ռուսաստանում անհույս բան կլիներ, քանի որ պրոլետարիատը, անկասկած, հին ապարատով իշխանությունը չէր կարող պահել, իսկ նոր ապարատ միանգամից ստեղծելը անհնար կլիներ:

Սովետների էությունը, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, արտահայտվում է նրանով, որ այն աշխատավորական լայն մասսաներին համախմբում է պրոլետարիատի շուրջը և նրանց ներգրավում պետության կառավարմանը, մաս-



digitised by A.R.A.R.@

սաներին հնարավորություն է տալիս զարգացնելու հեղափոխական էներգիան, Նախաձեռնությունն ու ստեղծագործական ունակությունները՝ սոցիալիզմի հա- մար մղվող պայքարում։ Սովետների պետության ուժն այն է, որ նա հենվում է ժողովրդական մասսաների վրա և օգտվում է նրանց օժանդակությունից, որ այն արտահայտում է ժողովրդի կենսական շահերը և գործում նրա համար։

Զարգացնելով պետության մասին մարքսիստական ուսմունքը, Լենինն· այն հարստացրեց նոր դրույթներով։ Նա առանձնապես ընդգծում էր, որ ան- ցումը կապիտալիզմից սոցիալիզմին տարբեր երկրներում չի կարող չտալ պե- տական կառուցվածքի նոր, բազմազան ձևեր, որոնք իրենց էությամբ անխու- սափելիորեն կլինեն բանվոր դասակարգի դիկտատուրա։ Լենինյան այս կան- խատեսումը հաստատվեց երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, երբ Արևելյան Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում հաղթանակեց պրոլետա- րիատի դիկտատուրան։

Պրոլետարիատի դիկտատուրայի պետության էությանը և խնդիրներին համապատասխան բանվոր դասակարգը ստեղծում է կառավարման նոր, դե- մոկրատական ապարատ։ Սովետական պետական ապարատի դեմոկրատիզմն առաջին հերթին դրսևորվում է նրանում, որ այն ստեղծվում է աշխատավո- րական մասսաների կողմից և հանդես է գալիս որպես այդ մասսաների միա- վորման իշխանություն։ Հենց այն փաստը, որ սովետներն ընտրվում են 18 տարին լրացած քաղաքացիների կողմից ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական սիստեմի հիման վրա, ժողովրդի վստահությունը չարդարացրած դեպուտատին ետ կանչելու իրավունքով, վկայությունն է այն բանի, որ իր պետական կառավարման մեջ վճռական խոսքը պատկանում է սովետական ժողովրդին։ Սովետների դեպուտատներն իրենք են որոշում, իրենք են անմի- ջականորեն իրագործում կամ վերահսկում իրենց ընդունած որոշումների կա- տարումը։ Ժողովրդի ընտրյալները պրոֆեսիոնալ պառլամենտականներ չեն։ Ժողովրդի ընտրյալ դառնալը նրանց չի ազատում հասարակական կյանքի որևէ բնագավառում աշխատելու պարտքից։ Դեռ ավելին, նրանք կարող են ժողո- վրդի վստահությունը վայելել և ընտրվել դեպուտատ, եթե իրենց արդարաց- նում են աշխատանքում։

Սովետական պետական ապարատի կառուցման ու զարգացման հիմքը Վ. Ի. Լենինը համարում էր դեմոկրատական ցենտրալիզմը։ Նոր իշխանությու- նը, գրում էր նա, մերժում է ժողովրդին ատելի բուրժուական պետության բյու- րոկրատական ցենտրալիզմի սկզբունքը։ Բայց բանվոր դասակարգը հանդես չի գալիս ցենտրալիզմի դեմ՝ ընդհանրապես։ Նա դեմոկրատական ցենտրալիզ- մի կողմնակից է, որը, Լենինի արտահայտությամբ, «...նախատեսում է ոչ միայն տեղական առանձնահատկությունները, այլև տեղական ձեռներեցու- թյունը, տեղական նախաձեռնությունը, ընդհանուր նպատակին հասնելու ուղի- ների, պրիոմների և շարժման միջոցների բազմազանությունը լրիվ և անար- գել զարգացնելու պատմության մեջ առաջին անգամ ստեղծված հնարավորու- թյունը» (Երկեր, հ. 27, էջ 244)։

Դեմոկրատական ցենտրալիզմը, որպես սովետական պետական ապա- րատի գործունեության սկզբունք, բխում է պետության սովետական ձևի բուն էությունից։ Դեմոկրատական ցենտրալիզմի մեջ պետական կառավարման կազմավորման դեմոկրատիզմը զուգակցվում է կենտրոնացված ղեկավարման ձևերի հետ, կոլեգիալությունը՝ միանձնյա ղեկավարության հետ։ Դեմոկրա- տական ցենտրալիզմը, Լենինի պատկերացմամբ, կազմակերպական այն միակ



ճշմարիտ սկզբունքն է, առանց որի հնարավոր չէ վերափոխել ժողովրդական տնտեսությունը։

Վ. Ի. Լենինի աշխատություններում մեծ տեղ է հատկացված նաև սովե- տական պետական ապարատի պրակտիկ գործունեության հարցերին։ Նա կու- սակցական ու պետական օրգանների ուշադրությունը բազմիցս հրավիրել է աշխատողների ճիշտ ընտրության ու տեղաբաշխման, կատարման փաստացի ստուգման վրա։

Պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը Վ. Ի. Լենինը համարում էր պրոլետարիատի դաշինքն աշխատավոր գյուղացիության հետ՝ բանվոր դասակարգի ղեկավար դերի պայմաններում։ Նա սովորեցնում էր, որ պրոլետարիատը կարող է հաղթահարել տապալված, բայց դեռ իր ուժը պահ- պանած շահագործողական դասակարգերի դիմադրությունը, այնուհետև ամ- բողջությամբ վերացնել այդ դասակարգերը և կառուցել սոցիալիզմ միայն աշխատավոր գյուղացիության հետ ամուր դաշինքի միջոցով։

Եթե մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը Վ. Ի. Լենինին հատկապես զբաղեցնում էր բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության քաղա- քական դաշինքի հարցը, ապա սովետական կարգեր հաստատելուց հետո նրան ամենից շատ մտահոգում էր այդ երկու դասակարգերի տնտեսական համա- գործակցության խնդիրը։ Կոոպերացիայի մասին հոդվածում նա հիմնավորեց այն դրույթը, որ պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում կոոպերա- ցումը, ընդհանրապես, և գյուղատնտեսական կոոպերացիան, մասնավորապես, բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության տնտեսական համա- գործակցության ամենալավ ձևն է։ «...Արտադրության միջոցների հանրային սեփականության ժամանակ,— գրում է Վ. Ի. Լենինը,— բուրժուազիայի վրա պրոլետարիատի տարած դասակարգային հաղթանակի ժամանակ, քաղաքա- կրթված կոոպերատորների հասարակարգը հենց սոցիալիզմի հասարա- կարգն է» (նույն տեղը, էջ 560)։

Մեր երկրի պատմական փորձը հաստատեց բանվոր դասակարգի և աշ- խատավոր գյուղացիության դաշինքի Լենինի ուսմունքի ճշմարտացիությունը։ Աշխատավորների արմատական շահերի ընդհանրության հիման վրա ամրա- պնդվեց բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը։ Բանվորների ու գյուղացիների բարեկամական փոխօգնության շնորհիվ էր, որ հնարավոր դար- ձավ ինդուստրացնել երկիրը, մանր գյուղացիական տնտեսությունները փո- խադրել սոցիալիստական զարգացման ուղու վրա, հաղթող դուրս գալ Հայրե- նական մեծ պատերազմում։ Բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղա- ցիության դաշինքն էր այն պատվանդանը, որի վրա խարսխվեց սովետական ժողովրդի սոցիալական, քաղաքական ու գաղափարական անճող միասնությու- նը։ Հետևելով Լենինի պատգամներին, կոմունիստական կուսակցությունն ան- դադար ամրապնդում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը՝ սո- վետական պետության անպարտելիության հիմքը։

Սակայն պատմությունը ոչ միայն հաստատեց աշխատավորական զանգ- վածների դաշինքի վերաբերյալ մարքսիստական-լենինյան տեսության ճըշ- տությունը, այլև ի հայտ բերեց տարբեր երկրների համար բնորոշ դասակար- գային դաշինքի նոր ձևեր ու հնարավորություններ։ Որոշակի իրադրության մեջ նպատակահարմար է պրոլետարիատի դաշինքը սոցիալական չքավոր խավերի հետ մեկ այլ հանգամանքում՝ պրոլետարիատի դաշինքն արդյունա- վետ կարող է լինել սոցիալական ավելի լայն խավերի հետ։ Առաջավոր կա-



digitised by A.R.A.R.@

պիտալիստական երկրներում բանվորա-գյուղացիական դաշինքը կարող է բոլորովին այլ դեր խաղալ, քան Ռուսաստանում և մի շարք այլ երկրներում: Զարգացած կապիտալիստական երկրներում «...առաջին պլան է մղվում միջին խավերին՝ ծառայողներին, մտավորականությանը, մանր բուրժուազիային արդյունաբերական բանվոր դասակարգի կողմը գրավելու հարցը» տե՛ս «Вопросы философии», № 2, 1967 г., стр. 9): Սակայն ինչպիսին էլ լինի աշխատավորական դասակարգերի դաշինքի ձևը տարբեր երկրներում, բանվոր դասակարգը կա և պետք է լինի գլխավոր և ղեկավար ուժը: Ըստ որում, բանվոր դասակարգի ղեկավար դերը պայմանավորվում է ոչ թե բնակչության մի մասի հաշվին նրան տրվող ինչ-որ բացառիկ արտոնություններով, այլ հենց իր՝ բանվոր դասակարգի բարոյական և քաղաքական հեղինակությամբ, սոցիալիստական արտադրահարաբերություններում նրա գրաված տեղով:

Սովետական Միության համաշխարհային պատմական հաղթանակները լրիվին հաստատեցին մարքս-լենինյան ուսմունքը բանվոր դասակարգի դերի և այն ուղու ճշգրտության վերաբերյալ, որով հոկտեմբերից ի վեր ընթանում է սովետական ժողովուրդը:



Բազմազգ Ռուսաստանի պայմաններում, սոցիալիստական պետության ստեղծման գործում մեծ նշանակություն ուներ նաև ազգային հարցի արդարացի լուծումը:

Մարքսիզմի պատմության մեջ առաջին անգամ Լենինը մշակեց ազգային հարցում կուսակցության ծրագիրն ու քաղաքականությունը: Լենինիզմը ելնում է այն դրույթից, որ հեղափոխության ընթացքում պրոլետարիատը մյուս ժողովուրդների վրա բռնի կերպով չի փաթաթում իր իշխանությունը: Տարբեր երկրների պրոլետարների միավորման ձգտումը բխում է տարբեր ազգերի աշխատավորների շահերի ինտերնացիոնալ ընդհանրության սկզբունքից, որը ոչ թե բացառում, այլ, ընդհակառակը, գալիս է հաստատելու ազգերի հավասարության և ինքնորոշման իրավունքը:

Անհաշտ պայքար մղելով վելիկոռուսական շովինիզմի ու տեղական նացիոնալիզմի դրսևորումների դեմ, Լենինը մշակեց սովետական ֆեդերացիայի կազմակերպական սկզբունքներն ու ձևերը: Դեռևս 1917 թվականի փետրվար—հոկտեմբեր ամիսներին նրա մշակած սովետական իրավահավասար ազգային հանրապետությունների կամավոր միավորման դրույթները դրվեցին սովետական իշխանության սահմանադրական առաջին ակտերից մեկի՝ աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների Դեկլարացիայի հիմքում: «Ռուսաստանի Սովետական Հանրապետությունը,— ասվում էր դեկլարացիայում,— հիմնվում է ազատ ազգերի ազատ դաշինքի վրա, որպես սովետական ազգային հանրապետությունների ֆեդերացիա»: Ըստ որում ֆեդերացիայի մեջ մտնելու, ինչպես նաև այդ դաշինքին միանալու կազմակերպական ձևերի հարցերը որոշվում են ազգային ամեն մի հանրապետության «աշխատավորների ցանկությամբ ու ազատ կամքով»: Վ. Ի. Լենինը գտնում էր, որ սովետական ֆեդերացիան Ռուսաստանի բազմազգ ժողովուրդների պետական-քաղաքական միավորման այն կենսունակ ձևն է, որի առկայության պայմաններում միայն հնարավոր կլինի արժանի հակահարված տալ ներքին ու արտաքին թշնամիներին, և որ կարևոր է՝ իրագործել սովետական հանրապետություն-



ների տնտեսական սերտ համագործակցությունը, առանց որի ...անիրագործելի է իմպերիալիզմի կողմից ավերված արտադրաուժերի վերականգնումը և աշխատավորների բարեկեցության ապահովումը (Երկեր, հ. 31, էջ 168):

Ռուսաստանի ժողովուրդների պայքարը ներքին և արտաքին հակահեղափոխության դեմ, նրանց համագործակցությունը պատերազմի հետևանքով քայքայված տնտեսությունը վերականգնելու գործում, ձևավորեցին ու ամրապնդեցին բարեկամական հարաբերությունները սովետական հանրապետությունների միջև, որի արդյունքը հանդիսացավ աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծումը: Ելնելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից, «ավտոնոմիստների» դեմ մղած պայքարում Վ. Ի. Լենինը հիմնավորեց ՍՍՀՄ ստեղծումը, որպես սովետական սոցիալիստական իրավահավասար հանրապետությունների կամավոր միավորում, որի մեջ ՌՍՖՍՀ-ն պետք է գրավի նույնպիսի տեղ, ինչպես մյուս ազգային հանրապետությունները: Վ. Ի. Լենինը վելիկոռուսական շովինիզմի դեմ պայքարի կարևոր միջոց էր համարում սովետական բոլոր հանրապետությունների իրավահավասարությունը՝ իշխանության բարձրագույն օրգանի ղեկավարման գործում: Այս առնչությամբ մեծապետական շովինիզմի դեմ պայքարի մասին քաղբյուրոյին ուղղած իր գրության մեջ նա կատեգորիկ կերպով հայտարարում է՝

«Վելիկոռուսական շովինիզմին հայտարարում եմ ոչ թե կյանքի, այլ մահվան կռիվ»...

Հարկավոր է բացարձակորեն պահանջել, որպեսզի միութենական կենտգործկոմում նախագահեն հերթով՝

Ռուս
Ուկրաինացի
Վրացի և այլն:

Բացարձակորեն» (Երկեր, հ. 33, էջ 439):

Սովետական պետությունը չէր կարող պատվով կատարել իր համաշխարհային պատմական դերը, եթե նրան ուղղություն չտար ու չղեկավարեր կոմունիստական կուսակցությունը: Այս հարցում ևս մենք պարտական ենք Լենինին: Նա սովորեցնում էր, որ կոփելով բանվորական կուսակցությունը, մարքսիզմը դաստիարակում է պրոլետարիատի ավանգարդին, որն ընդունակ է գրավելու իշխանությունը և ամբողջ ժողովրդին առաջնորդելու դեպի սոցիալիզմ, կազմակերպելու և ուղղություն տալու նոր հասարակարգին, լինելու բոլոր աշխատավորների ու շահագործվողների ուսուցիչը՝ նրանց հասարակական կյանքն առանց բուրժուազիայի և բուրժուազիայի դեմ կազմակերպելու գործում: Բազմակողմանիորեն մշակելով պրոլետարիատի դիկտատուրայի մեխանիզմի հարցը, Լենինը ցույց տվեց կոմունիստական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերը պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում: Պրոլետարիատի դիկտատուրան, գրում էր նա, «...իրականացնում է սովետների մեջ կազմակերպված պրոլետարիատը, որին ղեկավարում է բոլշևիկների կոմունիստական կուսակցությունը» (Երկեր, հ. 31, էջ 38):

Նկատի ունենալով այն վիթխարի վերափոխումները, որոնք վիճակված էին սովետական պետությանը, Վ. Ի. Լենինը շեշտում էր՝ չի կարելի հաջողությամբ կատարել պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրներն ու ֆունկցիաները «առանց երկաթե և պայքարում կոփված կուսակցության, առանց այն-



digitised by A.R.A.R.@

պիսի կուսակցության, որը վայելի այն ամենի վստահությունը, ինչ որ ազնիվ է տվյալ դասակարգի մեջ, առանց այնպիսի կուսակցության, որը կարողանա հետևել մասսայի տրամադրությանը և ազդել նրա վրա՝ անհնարին է հաջող կերպով այդպիսի պայքար մղել» (Նույն տեղը, էջ 35)։

Պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում կոմունիստական կուսակցության ղեկավար դերը պայմանավորված է նրանով, որ նոր հասարակության կառուցման դեռևս փորձով չհարթված ճանապարհով անցնելու համար անհրաժեշտ է խորամուխ լինել հասարակական կյանքի երևույթների մեջ, լավ գիտենալ և ճշտորեն կիրառել հասարակության զարգացման օրենքները։ Այդ պահանջներին էլ համապատասխանում է կոմունիստական կուսակցության քաղաքականությունը, որովհետև այն ղեկավարվում է ոչ թե առանձին մարդկանց կամ խմբերի պատահական մղումներով և կամ կյանքից կտրված սխեմաներով, այլ հենվում է հասարակության զարգացման մարքսիստական տեսության, նրա ստեղծագործական կիրառման վրա։

Պատմական փորձը ցույց է տվել, որ առանց պրոլետարիատի դիկտատուրայի պետության հաստատման չէր կարող ստեղծվել ու զարգանալ սովետական դեմոկրատիան, բայց և սովետական պետությունը չէր կարող գոյություն ունենալ և հաջողությամբ կատարել իր ֆունկցիաները առանց կոմունիստական կուսակցության կողմից գլխավորվող աշխատավորների մասսայական կազմակերպությունների օժանդակության։ Խոսքը արհմիությունների, սպառողական և արտադրական կոոպերացիայի, կոմունիստական երիտասարդական միության և աշխատավորների մյուս կամավոր ընկերությունների մասին է։

Հասարակական կազմակերպությունները գործում են պրոլետարիատի դիկտատուրայի պետության շրջանակներում և նրան զուգահեռ։ Դրանց համատեղ գոյությունն արդարացվում է նրանով, որ թե՛ սովետական պետությունը, թե՛ հասարակական կազմակերպությունները հենվում են միևնույն սոցիալական բազայի վրա և ունեն միևնույն խնդիրներն ու նպատակները։ Նրանց ցեմենտավորում, ղեկավարում և ուղղություն է տալիս կոմունիստական կուսակցությունը։ Անանցանելի պատնեշ գոյություն չունի նաև պետության և հասարակական կազմակերպությունների կազմակերպական սկզբունքների և գործունեության մեթոդների միջև։ Երկուսի մոտ էլ կազմակերպական գլխավոր սկզբունքը դեմոկրատական ցենտրալիզմն է, իսկ գործունեության հիմնական մեթոդը՝ համոզումը։ Չնայած այս ընդհանրություններին, չի կարելի ասել, որ նրանք կրկնօրինակում են միմյանց։ Եթե սոցիալիստական պետությունը սովետների միջոցով ընդգրկում է մեր երկրի ողջ բնակչությանը և մարմնավորում է սովետական ժողովրդի սուվերենությունը, առանց բացառության հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, ապա հասարակական կազմակերպություններից յուրաքանչյուրը ընդգրկում է մեր երկրի բնակչության մի մասին միայն, ելնելով մասնագիտական, տարիքային կամ այլ հատկանիշներից։

Պետության և հասարակական կազմակերպությունների այս առանձնահատկություններով էլ պայմանավորվում է նրանց մի այլ տարբերությունը։ Քանի որ սոցիալիստական պետությունը հանդես է գալիս որպես աշխատավորների համապարփակ քաղաքական կազմակերպություն, այն օժտված է առավելագույն իրավունքներով, իր գործունեության մեջ օգտվում է ինչպես համոզման, այնպես էլ հարկադրանքի մեթոդից։ Մինչդեռ արտահայտելով հասարակության այս կամ այն խավերի ու խմբերի շահերը, հասարակական



կազմակերպությունների գործունեությունը հիմնականում կրում է տնտեսական-կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական բնույթ, իսկ ներգործության միակ մեթոդը համոզումն է։

Պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում Վ. Ի. Լենինը հատկապես մեծ նշանակություն էր տալիս արհմիություններին։ Հետևապես պայքար մղելով արհմիությունների պետականացման կողմնակիցների, ինչպես նաև անարխո-սինդիկալիստների դեմ, Վ. Ի. Լենինը արհմիությունները բնորոշեց որպես դաստիարակչական կազմակերպություն, ներգրավման, ուսուցման կազմակերպություն, որպես կառավարման, տնտեսավարման դպրոց, կոմունիզմի դպրոց։

Արհմիությունները դիտելով որպես կոմունիստական կուսակցությունից դեպի բանվորական ողջ մասսան ձգվող շարժափոկ, Վ. Ի. Լենինը նշում էր. «Ստացվում է ընդհանուր առմամբ և ամբողջությամբ ձևականորեն ոչ-կոմունիստական, ճկուն և համեմատաբար լայն, շատ հզոր, պրոլետարական ապարատ, որի միջոցով կուսակցությունը սերտորեն կապված է դասակարգի ու մասսայի հետ և որի միջոցով, կուսակցության ղեկավարությամբ, իրագործվում է դասակարգի դիկտատուրան» (Նույն տեղը, էջ 40)։

Պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում կարևոր տեղ է գրավում կոմերիտմիությունը։ Վ. Ի. Լենինը կոմերիտմիության խնդիրն առաջին հերթին տեսնում էր նրանում, որ օգնի կուսակցությանը կառուցելու կոմունիզմ։ Դիմելով կոմերիտմիության համառուսական երրորդ համագումարի պատգամավորներին, Վ. Ի. Լենինն ասում էր. «Դուք պետք է լինեք կոմունիստական հասարակության առաջին կառուցողները միլիոնավոր կառուցողների մեջ, որպիսին պետք է լինի ամեն մի երիտասարդ մարդ, ամեն մի երիտասարդ աղջիկ։ Առանց բանվորական ու գյուղացիական երիտասարդության ամբողջ մասսային կոմունիզմի այդ շինարարության մեջ ներգրավելու՝ դուք կոմունիստական հասարակություն չեք կառուցի (Նույն տեղը, էջ 353)։

Սովետական երիտասարդությունը պատվով է կատարում մեծ առաջնորդի պատգամը։ Գնալով ավելի լայն չափեր է ընդունում կուսակցության ակտիվ օգնականի, սովետական երիտասարդության ղեկավարի ու կազմակերպչի՝ լենինյան կոմերիտմիության գործունեությունը։

Սոցիալիստական հասարակարգի պայմաններում լայն զարգացում ստացան նաև աշխատավորների կոոպերատիվ, գիտա-տեխնիկական, սպորտային և այլ հասարակական կազմակերպությունները, առանց որոնց այսօր դժվար է պատկերացնել սովետական պետության կենսագործունեությունը։

Սովետների միջոցով մի կողմից բանվոր դասակարգի, մյուս կողմից աշխատավոր գյուղացիության ու հասարակության տարբեր խավերի հետ ամենօրյա կապերի ամրապնդումը Վ. Ի. Լենինը համարում էր կոմունիստական կուսակցության ղեկավար դերի ապահովման կարևորագույն պայմաններից մեկը։ Այս առումով էլ ՌԿ(բ)Կ VIII համագումարն իր բանաձևում ընդգծեց կոմունիստական կուսակցության և աշխատավորների մասսայական կազմակերպությունների, առաջին հերթին սովետների միջև ճիշտ փոխհարաբերությունների կազմակերպման և կենտրոնական օրգաններում կոմունիստական կուսակցության ղեկավար դերի անհրաժեշտությունը։ Կոմունիստական կուսակցությունն իր խնդիրը հաջողությամբ կարող է կատարել, ասված է համագումարի բանաձևում, միայն սովետներում իր կատարած ամենօրյա անձնվեր աշխատանքով, սովետական բոլոր պոստերում իր ամենից առավել անկուն



digitised by A.R.A.R.@

ու նվիրված անդամներին առաջադրելու միջոցով։ Համագումարը միաժամանակ վճռականորեն հանդես եկավ կուսակցական կազմակերպությունների և սովետների ֆունկցիաների նույնացման դեմ։ Իր որոշումները, նշված է համագումարի բանաձևում, կուսակցությունը պետք է իրագործի սովետական օրգանների միջոցով՝ սահմանադրության շրջանակներում։ Կուսակցությունը ձգտում է ղեկավարել սովետների գործունեությունը, բայց ոչ թե փոխարինել նրանց։

Սոցիալիստական երկրների և հատկապես մեր երկրի օրինակը ակնառու ցուցադրում է, թե հասարակության վրա ներգործության և վերակառուցման ինչպիսի՜ հզոր միջոց է բանվոր դասակարգի դիկտատուրայի պետությունը։ Սակայն ոչ միայն պետությունն է ներգործում հասարակության վրա, այլև հասարակությունն ինքը ևս զարգանալով ու փոխվելով, վճռական ներգործություն է ունենում պետության վրա։ Շահագործական դասակարգերի վերացումը, սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակը և մեր երկրի մուտքը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանը, հասցրեց նրան, որ, ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրում, «Պրոլետարիատի դիկտատուրան կատարեց իր պատմական միսիան և ներքին զարգացման խնդիրների տեսակետից դադարեց ՍՍՀՄ-ում անհրաժեշտ լինելուց», «Պետությունը, որն առաջ եկավ որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետություն, նոր, ժամանակակից պայմաններում դարձավ ամբողջ ժողովրդի շահերն արտահայտող օրգան»։ Կուսակցության ծրագրի այս դրույթը ժխտում է բուրժուական և ռեֆորմիստական գաղափարախոսների այն հերյուրանքները, թե իբր բանվոր դասակարգին հատկանշական է «եսապաշտությունը», իսկ կոմունիստները «բռնության», «թելադրանքի» համախոհներ են։

Բանվոր դասակարգը պատմության մեջ միակն է, որը նպատակ չի դնում հավերժացնել իր տիրապետությունը։ Ահա թե ինչու մեր հասարակության զարգացման արդի էտապում սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը դառնում է սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալումն ու զարգացումը, բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցությունը պետության կառավարմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը, պետական ապարատի գործունեության բարելավումը։ Սոցիալիստական պետության զարգացման գլխավոր ուղղությունը բնորոշելիս մեր կուսակցությունը ելել է մարքսիստական-լենինյան այն դրույթից, որ ժողովուրդն է պատմության կերտողը, կոմունիզմի կառուցումը ժողովրդի ձեռքի, նրա եռանդի, նրա բանականության գործն է։

Մոտավորապես 50 տարի է անցել այն օրից, երբ Վ. Ի. Լենինը դրեց աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնաքարերը, որով և սկսվեց «...աշխատավորների տիրապետության դարաշրջանը։ Ժողովրդական մասսաների տնտեսական, սոցիալական և քաղաքական ազատագրումը, դասակարգային և ազգային ճնշումից նրանց ազատագրումը, աշխատավոր մարդկանց համակողմանի զարգացումը դարձան նոր աշխարհի կառուցման նպատակը։ Սա է Հոկտեմբերի հեղափոխական հումանիզմի խորագույն իմաստը» (ՍՄԿԿ Կենտկոմի 1967 թվականի հունվարի 4-ի որոշումից)։

# ԼԵՆԻՆԸ ԵՎ ԲՅՈՒՐՈԿՐԱՏԻԶՄԻ ԴԵՄ ՏԱՐՎՈՂ ՊԱՅՔԱՐԸ

Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Դեմոկրատիան և բյուրոկրատիզմը դրսևորվում են հասարակական կյանքի նույն բնագավառում՝ կառավարման կազմակերպման մեջ։ Սակայն դրանք միաժամանակ հակադիր հասկացություններ և երևույթներ են։ Դեմոկրատիա նշանակում է ժողովրդի իշխանություն, իսկ բյուրոկրատիզմ՝ հասարակության ղեկավարումը չինովնիկական ճանապարհով, մասսաներից կտրված և մասսաներից վեր կանգնած մարդկանց միջոցով։

Բացահայտելով բյուրոկրատիզմի պատմական արմատները, Վ. Ի. Լենինը գրել է. «...Յուրաքանչյուր բյուրոկրատիա թե իր պատմական ծագումով և թե իր աղբյուրով, և իր կոչումով իրենից ներկայացնում է զուտ և բացառապես բուրժուական մտայնություն (Երկեր, հատ. 25, էջ 457)։ Բյուրոկրատիզմը, որպես մասսաներից կտրված և նրանցից վեր կանգնած ղեկավարում, հատուկ է յուրաքանչյուր շահագործողական հասարակարգի, որը, սակայն, իր լիակատար արտահայտությունն է գտնում հատկապես բուրժուական հասարակարգում։

Վ. Ի. Լենինը մերկացրեց մանրբուրժուական այն պատրանքները, թե իբր բյուրոկրատիան, ի դեմս բուրժուական պետության չինովնիկական ապարատի, պաշտպանում է ամբողջ ժողովրդի շահերը։ Նա ցույց տվեց, որ ընդհակառակը, այդ հասարակարգում բյուրոկրատիան ստեղծվել է ժողովրդական մասսաներին ճնշելու համար և հենց դրանով էլ թշնամի է մասսաներին։ Այստեղ բյուրոկրատիան և շահագործող դասակարգը սերտաճում են միմյանց հետ։ Այդ դասակարգը ամբողջ ուժով ջանում է պահպանել բյուրոկրատիայի դրածոյական վիճակը, հանդես է գալիս ժողովրդի դեմ նույնիսկ այն բանում, որ վերջինս պաշտոնյաների ընտրության և ժողովրդի առջև նրանց պատասխանատվության պահանջ է ներկայացնում։ Բուրժուական հասարակարգում բյուրոկրատիզմը դրսևորվում է ոչ միայն առանձին ղեղծարարություններում ու մարդու նկատմամբ անհոգի վերաբերմունքի, այլև ղեկավարման ամբողջ սիստեմի մեջ։ Դրա գլխավոր պատճառներից մեկը Լենինը տեսնում էր այն բանում, որ «կապիտալիզմի ժամանակ դեմոկրատիզմը սեղմված է, ճզմված, այլանդակված՝ մասսաների վարձու ստրկության, կարիքի և աղքատության ամբողջ իրադրությամբ» (Երկեր, հատ. 25, էջ 635)։

Կապիտալիստական հասարակարգի բյուրոկրատիզմն առանձնահատուկ ուժով է դրսևորվում իմպերիալիզմի դարաշրջանում, երբ տեղի է ունենում



digitised by A.R.A.R.@

պետական ապարատի և մոնոպոլիաների միախառնում։ Այդ ժամանակաշրջանում, ինչպես երբեք, սահմանվում է ռեակցիոն քաղաքական ռեժիմ, որը հենվում է զորքերի և ոստիկանության վրա, իսկ չինովնիկական ապարատը կամ բյուրոկրատիան, որոնք նույնպես գտնվում են մոնոպոլիաների ենթակայության տակ, ծառայում են որպես մասսաներին շահագործելու և խաբելու միջոց։ Արտադրության միջոցների մասնավոր սեփականության լիկվիդացման, անտագոնիստական դասակարգերի վերացման հետ մեկտեղ վերանում է նաև ղեկավարման սոցիալիստական կազմակերպության օրգանների և ղեկավարվողների միջև շահերի հակադրությունը։

Բայց այստեղից չի հետևում, թե սոցիալիստական հեղափոխության հաղթանակով բյուրոկրատիան չքանում է։ Վ. Ի. Լենինը խստորեն քննադատում էր բյուրոկրատիզմի դեմ տարվող պայքարի նկատմամբ թեթևամիտ վերաբերմունքը և սխալ էր համարում այն կարծիքը, թե բյուրոկրատիզմին հնարավոր չէ անմիջապես վերջ տալ։ Ես հասկանում եմ բյուրոկրատիզմի լրջությունը,— ասում էր նա,— բայց մենք դրա ոչնչացումը չենք գրել կուսակցության ծրագրի մեջ... Դա մի ամբողջ դարաշրջանի հարց է։ Ելույթներում և հոդվածներում Վ. Ի. Լենինը ուշադրություն էր դարձնում բյուրոկրատիզմի դեմ տարվելիք պայքարի տևականության և այն արմատախիլ անելու սիստեմատիկ աշխատանքի վրա։ «Դեն գցել այդ կարգի թարախապալարը չի կարելի։ Այն պետք է միայն բուժել: Վիրահատությունն այդ դեպքում աբսուրդ է, անճնարինություն, միայն դանդաղ բուժում, մնացած բոլորը շառլատանություն է կամ միամտություն» (Երկեր, հատ. 35, էջ 530)։ Կարելի է վռնդել ցարին, կապիտալիստներին, բայց բյուրոկրատիզմը միանգամից վերացնել անհնարին է։ Նրա առանձին կողմերը կարելի է շտկել անմիջապես, բայց որպեսզի լիովին արմատախիլ արվի, պետք են տասնամյակներ։

Բյուրոկրատիզմի վերացման պրոբլեմին և նրա հաղթահարման ուղիներին Վ. Ի. Լենինի այսպիսի մոտեցումը բացատրվում է նրանով, որ սոցիալիստական հեղափոխությունից հետո էլ նա որոշակի օբյեկտիվ և սուբյեկտիվ իրողություններ էր տեսնում, որոնք պայմանավորում էին բյուրոկրատիզմի կենսունակությունը և պահպանումը։ Բայց նա չէր համաձայնվում բոլոր նրանց հետ, ովքեր սոցիալիստական հեղափոխությունից հետո բյուրոկրատիզմի մնացորդների գոյությունը բացատրում էին ընտրականության սկզբունքի պահպանումով։ Այդպիսի տեսակետի կողմնակիցները, նշում էր նա, չեն հասկանում բուրժուական պառլամենտարիզմի և պրոլետարական դեմոկրատիզմի տարբերությունը։ Բուրժուական պառլամենտարիզմն իր մեջ միավորում է բյուրոկրատիան և բուրժուական դեմոկրատիան, որոնք ուղղված են աշխատավորական մասսաների դեմ։ Իսկ պրոլետարական դեմոկրատիան միավորում է պառլամենտարիզմի շահերն անմիջական և ուղղակի դեմոկրատիայի շահերի հետ, իսկական ժողովրդական դեմոկրատիայի հետ և դրանով իսկ կտրում է բյուրոկրատիայի արմատները և տանում դեպի նրա լրիվ ոչնչացում։ Հետևաբար պաշտոնատար անձանց ընտրականությունը, ցանկացած դեպքում նրանց ուրիշով փոխարինելու հնարավորությունը, նրանց լիազորությունների վերացումն ու սոցիալիստական դեմոկրատիայի այլ սկզբունքների զարգացումը ոչ թե պահպանում, այլ հակազդում են բյուրոկրատիզմին։

Վ. Ի. Լենինը սոցիալիստական հեղափոխությունից հետո բյուրոկրատիզմի պահպանման օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառները տեսնում էր ոչ թե ընտրականության, այլ ուրիշ գործոնների մեջ։ Նա նշում էր, որ բյուրոկրա-



տիզմի պահպանման սոցիալական բազան այդ ժամանակաշրջանում առաջին հերթին շահագործող դասակարգերի մնացորդներն ու մանրբուրժուական տարրերն են։ Պարզ է, որ միաժամանակյա գործողություններով բյուրոկրատիզմի այդ բազան և հենց ինքը՝ բյուրոկրատիզմը վերացնել հնարավոր չէ։ Բացի դրանից, երկար ժամանակ պահպանվում է այն բյուրոկրատիզմը, որը թափանցում է բանվորական կազմակերպության մեջ բուրժուական հասարակարգում՝ բանվորների չնչին փոքրամասնության թողտվությամբ և բանվորական արիստոկրատիայի կազմավորմամբ։ Կապիտալիզմի իրադրության շնորհիվ, նշում էր Վ. Ի. Լենինը, բանվոր դասակարգի «քաղաքական և պրոֆեսիոնալ կազմակերպություններում պաշտոնատար անձերն այլասերվում են (կամ ավելի ճիշտ ասած՝ այլասերվելու տենդենց ունեն) և հակում են ցուցաբերում բյուրոկրատ, այսինքն՝ մասսաներից կտրված, մասսաներից վեր կանգնած արտոնյալ անձեր դառնալու» (Երկեր, հատ. 25, էջ 635)։

Ուրեմն, սոցիալիստական հեղափոխությունից հետո բուրժուական բյուրոկրատիայի պահպանման գլխավոր պատճառներից մեկը պետք է փնտրել կապիտալիզմի թողած ժառանգության մեջ։

Բյուրոկրատիզմի պահպանման մյուս գործոնը Վ. Ի. Լենինը համարում էր մասսաների կրթական և կուլտուրական ոչ բավարար մակարդակը։ «Մենք հիանալի գիտենք,— ասում էր նա,— թե ինչ է նշանակում Ռուսաստանի կուլտուրապես զարգացած չլինելը, թե ինչ է անում վերջինս սովետական իշխանությանը, որը սկզբունքով տվել է անչափ ավելի բարձր պրոլետարական դեմոկրատիա, տվել է այդ դեմոկրատիայի տիպարն ամբողջ աշխարհի համար,— թե ինչպես այդ անկուլտուրականությունը նվաստացնում է սովետական իշխանությունը և վերստեղծում բյուրոկրատիան» (Երկեր, հատ. 29, էջ 208)։

Խոսելով կուլտուրայի, կրթության մակարդակի և բյուրոկրատիայի կապի մասին, Լենինը նկատի ուներ ոչ միայն աշխատավորական լայն մասսաներին, այլև ղեկավարման ապարատի աշխատողներին, որոնց կուլտուրական մակարդակից մեծապես կախված էր սոցիալիստական օրինականության և բյուրոկրատիզմի դեմ պայքարի իրագործումը։ «Բացի օրենքից,— ասում էր Վ. Ի. Լենինը,— կա նաև կուլտուրական մակարդակ, որը ոչ մի օրենքի չես ենթարկի» (նույն տեղը, էջ 214)։

Վերջապես, սոցիալիզմի պայմաններում դեռևս հասարակության ոչ բոլոր անդամները կարող են ընդգրկվել պետական և հասարակական ղեկավարման ամենօրյա գործերում։ Իսկ այնտեղ, ուր ոչ լրիվ է իրագործվում այդ սկզբունքը, պահպանվում են բյուրոկրատիզմի հանդես գալու հնարավորությունները։ «Բյուրոկրատիզմի դեմ պայքարել մինչև վերջ, մինչև նրա դեմ լիակատար հաղթանակ տանելը,— նշում էր Վ. Ի. Լենինը,— կարելի է միայն այն ժամանակ, երբ ամբողջ բնակչությունը մասնակցի կառավարմանը» (նույն տեղը, էջ 214)։

Բյուրոկրատիզմի էության և նրա պահպանման պատճառների գիտական վերլուծության հիման վրա Լենինը ցույց տվեց սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո դրա վերացման հիմնական ուղիները։ Այդ ուղղությամբ առաջին քայլը նա համարում էր բյուրոկրատիայի արմատազրկումը՝ բուրժուական պետական մեքենան փշրելու և նոր սոցիալիստական պետական ապարատ ստեղծելու միջոցով։ Այդ կապակցությամբ նա Հոկտեմբերի կարևորագույն նվաճումներից համարում էր «հին բյուրոկրատիայի» խոր-



digitised by A.R.A.R.@

տակումը և սովետների ստեղծումը։ Դրա հետ մեկտեղ Լենինը նշում էր բյուրոկրատական տենդենցները նոր սովետական ապարատում և պրակտիկ գործունեությամբ դրանք լիկվիդացնելու անհրաժեշտությունը։

Կենսագործելով առաջնորդի ցուցումները, մեր կուսակցությունն իրականացրեց սոցիալ-տնտեսական, քաղաքական և կուլտուրական մի շարք արմատական վերափոխումներ, որոնք պայմանավորեցին բյուրոկրատիզմի սոցիալական բազայի վերացումը։ Սոցիալիստական շինարարության և նրա հաղթանակի ընթացքում վերացան շահագործողական դասակարգերի և մանրբուրժուական տարերքի մնացորդները, աճեց մասսաների հանրակրթական, կուլտուրական և սոցիալիստական գիտակցության մակարդակը, պրոլետարական դեմոկրատիան վերածվեց համաժողովրդական դեմոկրատիայի, հասարակության բոլոր անդամների համար ռեալ հնարավորություններ ստեղծվեցին մասնակցելու նրա կառավարման գործերին։

Սակայն պատմական այդ նվաճումներից հետո էլ մեր հասարակարգում բյուրոկրատիզմը լրիվ վերացված չէ։ Արդի պայմաններում տարբեր ձևերով այն դրսևորվում է կառավարման առանձին օրգանների ու աշխատողների գործունեության մեջ։ Բյուրոկրատիզմն ու քաշքշուկն իրենց կոնկրետ արտահայտությունն են գտնում տարբեր ձեռնարկությունների, կազմակերպությունների և գերատեսչությունների միջև անվերջ գրագրությունների փաստերի, նրանց իրավասության մեջ մտնող հարցերի որոշման ժամանակ ինքնապահովագրման տենդենցների, քաղաքացիների իրավունքների ոտնահարման, նամակների, բողոքների և դիմումների նկատմամբ ձևական, անհոգի վերաբերմունքի, նրանցում մատնանշված փաստերի անբավարար ստուգման, քաղաքացիների իրավունքները խախտող պաշտոնատար անձանց պատասխանատվության ենթարկելու մասին օրենքը չկատարելու, մարդկանց նկատմամբ ոչ զգայուն և անուշադիր վերաբերմունքի մեջ և այլն։

Ինչո՞ւմն է բյուրոկրատիզմի այդ և այլ դրսևորումների պատճառը սոցիալիզմի հաղթանակից հետո։ Առանձին ընկերներ կարծում են, թե այն պայմանավորված է միայն սուբյեկտիվ գործոնի՝ կառավարման օրգանների առանձին աշխատողների մասնագիտական, հանրակրթական և կուլտուրական թերհասունությամբ, օրենքների, իրենց և քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների թույլ իմացությամբ, որով, փաստորեն, ժխտվում է սոցիալիստական հասարակության մեջ բյուրոկրատիզմի դրսևորման օբյեկտիվ հիմքը։ Նման մոտեցումը, մեր կարծիքով, թերի է։ Չնայած թվարկված և այլ սուբյեկտիվ գործոնների դերին, այնուամենայնիվ սոցիալիստական հասարակարգում բյուրոկրատիզմի դրսևորումը ունի նաև օբյեկտիվ հիմք։

Այդ հիմքը, նախ և առաջ, գոյություն ունեցող և ծագող ռեալ հակասությունների մեջ է, որոնք լինելով ոչ անտագոնիստական, այնուամենայնիվ օբյեկտիվորեն գոյություն ունեն սոցիալիստական հասարակարգում։ Վերցնենք, օրինակ, այնպիսի գործոն, ինչպես հասարակական արտադրության և բաշխման սիստեմում մարդկանց ոչ միատեսակ դիրքը, որը կոմունիզմի առաջին փուլը մինչև վերջ չի հաղթահարում, լրիվ չի վերացնում սոցիալական անհավասարությունը։ Այդ «անհավասարությունը» հասարակության կառավարման մեջ արտահայտվում է նրանում, որ մարդկանց որոշակի մասն ունի անմիջական կառավարման լիազորություններ։ Հետևաբար, նրանց գործունեությունից է կախված այն քաղաքացիների աշխատանքի և կենցաղի հարցերի լուծումը, որոնք չունեն այդպիսի լիազորություններ։ Դրանով ստեղծվում է մարդկանց



մի մասի կախվածությունը մյուսից, որը որոշակի պայմաններում կարող է բյուրոկրատիզմ ծնել։

Սոցիալիզմի ժամանակ հակասություններն արտահայտվում են նաև դասակարգերի, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի, հասարակական հարաբերությունների այլ բնագավառներում։ Պարզ է, որ այդ և այլ հակասությունների լուծման ընթացքում հնարավոր է բյուրոկրատիզմի դրսևորում։ Այդ հնարավորությունները կարող են ավելի աճել, եթե հասարակական հարաբերությունների կարգավորման ժամանակ անտեսվեն հասարակության կառավարման գիտական սկզբունքները։ Պրակտիկան ցույց է տվել, որ այդ սկզբունքների անտեսումը անխուսափելիորեն ծնում է անձի պաշտամունք, սուբյեկտիվիզմ և վոլյունտարիզմ, որոնք հակասում են սոցիալիստական դեմոկրատիայի իդեալներին։ Անձի պաշտամունքը, սուբյեկտիվիզմն ու վոլյունտարիզմը անխուսափելիորեն տանում են դեպի դեմոկրատիայի նեղացում, ղեկավարության կտրվածություն ժողովրդի ռեալ կյանքից, նրա կարիքներից ու շահերից։ Դրանով իսկ ծնվում է բյուրոկրատիզմ։

Բյուրոկրատական տենդենցների պահպանումը պայմանավորող գործոններից պետք է համարել անհատի, կոլեկտիվի և հասարակության շահերի միասնության օբյեկտիվ պահանջները խախտող դեպքերը, տնտեսական և հասարակական այլ հարաբերությունների կարգավորման ժամանակ հասարակական շահերի պաշտպանության պատրվակի տակ անհատի շահերի սահմանափակումը։ Այսպես, օրինակ, հանրային սեփականության և անբաժանելի ֆոնդերի զարգացման անհրաժեշտության լոզունգի տակ երկար ժամանակ խախտվել է անձնական նյութական շահագրգռվածության սկզբունքը, որը դանդաղեցնում է մեր առաջընթացը։ Կարելի է հանդիպել անհատի և հասարակության շահերի միասնության խախտման նաև այնպիսի դեպքերի, երբ բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման համար հատկացված միջոցները օգտագործում են այլ նպատակների համար։ Անհատի շահերի այդպիսի խախտումներն արմատապես հակասում են սոցիալիզմի սկզբունքներին։ Ի տարբերություն ամեն մի շահագործողական հասարակության, սոցիալիզմի ժամանակ անհատի և հասարակության շահերը միասնական են։ Սոցիալիստական հասարակության մեջ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի շահը դրսևորվում է ամբողջ կոլեկտիվի շահերի մեջ, իսկ կոլեկտիվի շահերի միջոցով միաձուլվում է հասարակության շահերի հետ։ Ենթադրվում է, որ անհատի, կոլեկտիվի և հասարակության շահերի մեջ որոշակի անհամապատասխանություն կարող է լինել, բայց դրանք տարբերություններ են միասնության մեջ, որը կազմում է այդ շահերի գլխավոր գիծը։ Անհատի, կոլեկտիվի և հասարակության շահերի միասնության և տարբերության օրինաչափությունների ճանաչումը թույլ է տալիս հարաբերությունների կառավարումն այնպես կազմակերպել, որ օժանդակի հասարակական պրոգրեսին։

Բյուրոկրատիզմի դրսևորման համար հող են ծառայում նաև չափից դուրս անվստահության, խնամակալության ու բծախնդրության տենդենցները, վերադաս օրգանների կողմից ստորադասին վերաբերող հարցերի ինքնալուծման ձգտումը և այլն։

Այդպիսիք են մի քանի օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները, որոնք պայմանավորում են բյուրոկրատիզմի մնացուկների պահպանումը սոցիալիստական հասարակարգում։ Այդ գործոններն իմանալը և հաշվի առնելը մեծ նշանակություն ունի ոչ միայն հասարակական կյանքի տարբեր բնագավառների



digitised by A.R.A.R.@

ղեկավարման մեջ բյուրոկրատական աղավաղումների վերացման, այլև այնպիսի պայմանների ստեղծման համար, որոնք ընդհանրապես օբյեկտիվորեն կբացառեին բյուրոկրատիզմի դրսևորումները։

Այդ նպատակին հասնելու կարևորագույն պայմաններից մեկը սոցիալիստական դեմոկրատիայի բազմակողմանի զարգացումն է, որը նշանակում է բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցություն պետության կառավարմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը, պետական ապարատի աշխատանքի բարելավում և նրա գործունեության նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացում։ Իսկ վերջիններս իրենց հերթին նախատեսում են սոցիալիստական ընտրական սիստեմի, դեմոկրատական ցենտրալիզմի, հանրապետությունների և տեղական մարմինների իրավունքների ընդլայնման, կոլեգիալության, աշխատողների անձնական պատասխանատվության, կադրերի ընտրության և սոցիալիստական հասարակության կազմակերպման ու կառավարման մյուս սկզբունքների հետագա զարգացում և կատարելագործում։

Այստեղ մենք կքննարկենք միայն սոցիալիստական ընտրական սիստեմի հետագա կատարելագործման և քաղաքացիների իրավունքների իրականացման երաշխավորման հարցերը, որոնք առավել խոշոր նշանակություն ունեն բյուրոկրատիզմի վերացման գործում։

Ընտրական սիստեմի իսկական դեմոկրատական կազմակերպումը սոցիալիստական դեմոկրատիայի բազմակողմանի զարգացումն է։ Պաշտոնատար անձանց լրիվ ընտրականության և փոփոխելիության իրականացումը, աշխատավորների ընդհանուր կենսամակարդակի բարձրացումը և դեմոկրատական այլ սկզբունքների զարգացումը գիտական կոմունիզմի հիմնադիրները անվանում էին տեղայնության և կարիերիզմի հուսալի խոչընդոտ, հասարակության ծառայի դերից հասարակությանը իշխելու դերին՝ պետության և պետական օրգանների վերաճման դեմ պայքարի անսխալ միջոց։

Սովետական ընտրական սիստեմի հետագա կատարելագործման համար առաջարկում են աշխատավորների դեպուտատների սովետների ընտրությունների ժամանակ գաղտնի քվեարկության ցուցակներում մտցնել մեկից ավելի թեկնածուներ։ Դրա անհրաժեշտությունը մասնավորապես հիմնավորեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Ն. Հարությունյանը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXIV համագումարում արտասանած ճառում։ Սակայն կան ընկերներ, որոնք դեմ են այդ տեսակետին։ Նրանք գտնում են, որ կուսակցության և ժողովրդի միաձույլ միասնության պայմաններում, երբ չկա դասակարգերի և սոցիալական խմբերի հակադրություն, դեպուտատության մեկ թեկնածուից ավելի առաջադրումը կարող է ստեղծել որոշակի անախորժություններ։ Սակայն հենց այն հանգամանքը, որ մեր երկրի զարգացման ժամանակակից պայմաններում, երբ չկան դասակարգային անտագոնիզմ և քաղաքական կուսակցությունների պայքար, դեպուտատության մի քանի թեկնածուների առաջադրումը կօժանդակի մասսաների քաղաքական ակտիվության բարձրացմանը, հնարավորություն կտա իշխանության և կառավարման օրգաններում կոմունիստների և անկուսակցականների միաձույլ բլոկից ընտրել առավել արժանավորներին։

Դեմոկրատիայի հետագա զարգացման, բյուրոկրատիզմի վերացման կարևորագույն պայման է նաև քաղաքացիների սահմանադրական երաշխավորված իրավունքների և ազատությունների հետևողական իրականացումը։ Երաշ-



խիքների տակ Վ. Ի. Լենինը հասկանում էր դեմոկրատական իրավունքներից և ազատություններից օգտվելու փաստացի հնարավորության ապահովման միջոցները։ Սոցիալիստական հասարակության անդամների իրավունքների և ազատությունների երաշխիքների ապահովումը նշանակում է ռեալ պայմանների ստեղծում՝ կյանքում գործնականորեն իրականացնելու օբյեկտիվ օրինաչափությունները և սոցիալիզմի առավելությունները, ելնելով «Ամեն ինչ մարդու համար, ամեն ինչ նրա բարօրության համար» սկզբունքից։

Սոցիալիստական հասարակության անդամների իրավունքների և ազատությունների երաշխիքներն իրենց օբյեկտիվ հիմքն ունեն հանրային սեփականության և դրան համապատասխան սոցիալ-քաղաքական սիստեմի մեջ, որը բացառում է շահագործումը և անհավասարությունը։ Այդ օբյեկտիվ հիմքը պայմանավորում է քաղաքացիների իրավունքների և ազատությունների երաշխիքների տնտեսական և սոցիալ-քաղաքական սիստեմի առկայությունը սոցիալիստական հասարակարգում։ Տնտեսական երաշխիքների թվին են վերաբերում, օրինակ, աշխատանքի իրավունքը, աշխատանքի վարձատրությունը ըստ քանակի և որակի, ամենամյա արձակուրդների, սոցապահովագրման և այլ իրավունքների ապահովումը։ Սոցիալական երաշխիքների թվին են պատկանում կառավարման կազմակերպման դեմոկրատական սկզբունքները և դրանց անշեղ կատարումը, ներկայացուցչական օրգանների ընտրություններում հասարակության անդամների փաստացի մասնակցության հնարավորությունը, անձի, բնակարանի անձեռնմխելիությունը, նամակագրության գաղտնիությունը, մեղադրյալին պաշտպան ունենալու իրավունքը, ցանկացած կառավարման օրգանի և ցանկացած պաշտոնատար անձի անօրինական որոշման բողոքարկման իրավունքը, կուսակցական, սովետական և այլ օրգաններն ազատ մուտք գործելու իրավունքը և այլն։

Սոցիալ-տնտեսական և քաղաքական երաշխիքների իրականացման համար սոցիալիստական հասարակությունը մշակում և կյանքում իրագործում է միջոցառումների սիստեմ, որն ուղղված է քաղաքացիների իրավունքների ու ազատությունների վրա ցանկացած ոտնձգությունների խափանմանը և կանխմանը։ Սակայն այդ ուղղությամբ անհրաժեշտ է օգտագործել ավելի լայն միջոցներ։ Խոսքը իրավաբանական երաշխիքների աճող նշանակության մասին է, որոնք բարոյականի հետ միաժամանակ պետք է նախատեսեն նաև քրեական պատասխանատվություն՝ քաշքշուկների և բյուրոկրատիզմի, ինքնագլուխ կառավարման և քաղաքացիների իրավունքների ոտնահարման համար։

Միութենական հանրապետական քրեական օրենսգրքերն անձի կյանքի, առողջության և արժանապատվության դեմ ուղղված հանցագործությունների համար պատասխանատվությունից բացի, հատուկ պատիժներ են նախատեսում նաև քաղաքացիների քաղաքական և աշխատանքային իրավունքների դեմ ուղղված ոտնձգությունների համար։ Բայց, ցավոք սրտի, այդ օրենքները պրակտիկայում անբավարար են կիրառվում։ Օրինակ, դեռևս հազվադեպ չեն աշխատանքից ոչ ճիշտ ազատման դեպքերը, բայց համարյա բացակայում է այդպիսի գործողությունների համար մեղավորներին պատասխանատվության ենթարկելու պրակտիկան։ Քիչ չեն նաև քաղաքացիների դիմում-բողոքների քննարկման և ընթացք տալու ժամկետների կոպիտ խախտման դեպքերը, բայց ոչ ոք դրա համար փաստորեն պատասխանատվության չի ենթարկվում։ Լինում են դեպքեր, երբ առանձին մարդիկ ի չարն են օգտագործում պաշտոնը իրենց անցանկալի մարդկանց նկատմամբ։ Քաղաքացիների իրավունքների



digitised by A.R.A.R.@

և ազատությունների խախտման այդպիսի փաստերը պետք է պատժվեն ոչ միայն վարչական, այլ նաև քրեական միջոցներով։ Կ. Մարքսը գրում էր, որ ամեն մի ազատության առաջին պայմանն այն է, «որ բոլոր պաշտոնյաներն իրենց ծառայության գործողությունների համար ամեն մի քաղաքացու հանդեպ պատասխանատու են սովորական դատարանների առջև և ընդհանուր իրավունքի հիման վրա» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, Հայպետհրատ, 1950, հատ. 2, էջ 41)։

Վ. Ի. Լենինը կուսակցության ծրագրի նախագծի սևագրության մեջ առաջարկում էր ամրապնդել «յուրաքանչյուր անձի իրավունքը՝ երդվյալների դատարանի առաջ սովորական կարգով հետապնդելու ամեն մի պաշտոնյայի» (Երկեր, հատ. 24, էջ 598)։

Իհարկե, սոցիալիստական հասարակարգում բառի բուն իմաստով չկան չինովնիկներ և երդվյալներ, բայց Մարքսի և Լենինի այդ ցուցումները, որպես երաշխիքներ, պետք է ստեղծագործաբար կիրառվեն պաշտոնական չարաշահումների, քաշքշուկների և բյուրոկրատիայի դեմ։

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է պաշտոնական չարաշահումների, քաշքշուկի և բյուրոկրատիզմի համար դատի տալու անհրաժեշտությունը։ Այսպես, ՌԿԿ(բ) համառուսական X կոնֆերանսում նա հարցը դնում է այսպես. «Իսկ քաշքշուկների համար դատի տվե՞լ եք։ Որտե՞ղ են մեր ժողովրդական դատարանների դատավճիռներն այն բանի համար, որ բանվորը կամ գյուղացին հարկադրված լինելով չորս կամ հինգ անգամ գալու մի հիմնարկ, վերջապես ստանում է մի ինչ-որ ձևականորեն ճիշտ պատասխան, իսկ ըստ էության՝ ծաղր ու ծանակ։ Իսկ չէ՞ որ դուք կոմունիստներ եք, ինչո՞ւ դուք թակարդներ չեք կազմակերպում այդ բյուրոկրատ պարոնների համար։ Նրանց ժողովրդական դատարան ու բանտ չեք քարշ տալիս այդ քաշքշուկի համար» (Երկեր, հատ. 32, էջ 551)։

Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս «գտնել քաշքշուկի գործերով թեկուզ 2—3 խելացի «էքսպերտներ» առավել խիստ ու առավել ժիր կոմունիստներից՝ քաշքշուկը հալածելու գործը սովորելու համար» (Երկեր, հատ. 35, էջ 562)։

Նա կոչ էր անում ցուցադրական դատեր կազմակերպել քաշքշուկ անողների և բյուրոկրատների դեմ։

Սկզբունքի տեսակետից, նշում էր Լենինը, անհրաժեշտ է այդպիսի գործերը չթողնել բյուրոկրատական հիմնարկների սահմաններում, այլ դուրս բերել հասարակական դատաստանի, ոչ միայն հանուն խիստ պատժի... այլև հանուն հասարակական պարսավանքի և հանցավորի անպատժելիության մասին «համընդհանուր համոզվածությունը փշրելու համար»։

Վ. Ի. Լենինի այս և բազմաթիվ այլ ցուցումներ վկայում են, թե նա որքան մեծ նշանակություն էր տալիս բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարին և քաղաքացիների իրավունքների և ազատությունների ցանկացած խախտումները լրիվ արմատախիլ անելու համար իրավաբանական երաշխիքները խստորեն կիրառելուն։ Հենց այս կապակցությամբ ՍՄԿԿ ծրագրում և կուսակցության XXIII համագումարի որոշումներում իշխանության չարաշահման, բյուրոկրատիզմի և քաշքշուկի ամեն մի արտահայտության լրիվ վերացումը դիտվում է որպես սովետական կառավարման կատարելագործման կարևոր պայմանը։

Բյուրոկրատիզմի և քաղաքացիների իրավունքների ոտնահարման այլ ձևերի դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է ոչ միայն սոցիալիստական օրինականության կատարելագործման և ամրապնդման գծով միջոցների հետևողական իրականացում, այլ նաև օրենքների խախտման անհնարինության օբյեկտիվ պայմանների և երաշխիքների ստեղծում։ Պատահական չէր, որ Լենինը մշտապես նշում էր, որ սովետական օրենքները պետք է սրբորեն կատարվեն։ Օրենքը չհարգելը նա համարում էր ծանր հանցագործություն և պահանջում էր, որպեսզի օրենքը շրջանցելու առաջարկություն կամ փորձ անելու համար խստորեն դատել։ Կոչ անելով վճռական պայքար մղել սովետական իշխանության թշնամիների և հանցագործների դեմ, Վ. Ի. Լենինը միաժամանակ պահանջում էր մաքսիմում չափով զգույշ լինել նրանց հանդեպ և յուրաքանչյուր փաստ մանրազնին վերլուծության ենթարկել։ Նա դեմ էր «ըստ հայեցողության» ձերբակալման մասին մանդատ տալուն։ Վ. Ի. Լենինի այս ցուցումները անհատի պաշտամունքի տարիներին հաճախ էին խախտվում։ Ընդ որում դրանք դուրս էին գալիս սովորական բյուրոկրատական բնույթի շրջանակներից և կապված էին անմեղ մարդկանց նկատմամբ ռեպրեսիաների հետ։ Հայտնի է, թե կուսակցությունը ինչպիսի սկզբունքայնությամբ դատապարտեց այդպիսի երևույթները։ Բայց, ցավոք սրտի, այժմ էլ կատարվում են օրինականության խախտումներ, որոնք ոտնահարում են քաղաքացիների իրավունքները և հասարակության շահերը։

Օրինականության, որպես դեմոկրատիայի զարգացման և բյուրոկրատիայի վերացման կարևոր պայմանի, կատարելագործումը և ամրապնդումը նշանակալից չափով պայմանավորված է օրենքների կայունությամբ։ Սակայն, պետք է նշել, որ վերջին ժամանակաշրջանում առաջ է եկել օրենքների, այդ թվում նաև հիմնական օրենքի մեջ հաճախակի ուղղումներ մտցնելու տենդենց, որը խախտում է օրենքների կայունությունը և հող է ստեղծում բյուրոկրատիզմի համար։ Օրենքներն, իհարկե, պետք է զարգանան, կատարելագործվեն։ Սակայն Վ. Ի. Լենինը պահանջում էր օրենքների նախագծերի ամենաուշադիր նախապատրաստում։ Օրենքի մեջ ցանկացած ուղղումները և փոփոխությունները պետք է ելնեն ոչ թե սուբյեկտիվ ցանկություններից, այլ գիտականորեն հիմնավորված զննումներից և եզրակացություններից։ Երբ այս պահանջը չի կիրառվում, ապա խախտվում է օրենքների կայունությունը։ Իսկ առանց օրենքների կայունության անհնար է դեմոկրատիայի կայունությունը։

Զարգացնելով և կատարելագործելով սովետական սոցիալիստական դեմոկրատիան, կոմունիստական կուսակցությունը միաժամանակ իրագործում է միջոցառումների մի ամբողջ համակարգ՝ ղեկավարման բոլոր օղակներում դեմոկրատական սկզբունքների հետագա արմատավորման ու կատարելագործման, կյանքի տարբեր բնագավառներում բյուրոկրատիզմը մինչև վերջ արմատախիլ անելու համար։





digitised by A.R.A.R.@

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՍԵՓԱԿԱՆ ՀԱՅԵԼՈՒՄ

Հ. ԹՈՒՐՇՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին (1914—1918) զգալի թվով արևմտահայ մտավորականներ կային Անդրկովկասում: Ոմանց հաջողվել էր՝ այս կամ այն ձևով ազատվել թուրքական գեհենից և ապաստան գտնել Անդրկովկասում, ոմանց էլ աշխարհի տարբեր կողմերից Անդրկովկաս էր բերել կամավորական շարժումը:

Արևմտահայ մտավորականությունն այդ ժամանակ ի վիճակի չէր անդրադառնալու մայր ժողովրդի համատարած բնաջնջման սոցիալ-քաղաքական խոր պատճառներին: Վշտի մեջ սահմռկած նա դատափետում էր ինքն իրեն, դատապարտում իր արկածախնդրական քայլերը և կամավորական շարժումը: Եվ քանի որ արկածախնդրական կուրսը համառորեն շարունակել էր դաշնակցությունը, որը, հակառակ արևմտահայության բողոքներին, ետ չէր կանգնել կամավորական շարժումից, ապա արևմտահայության անլուր կոտորածի մղձավանջը, որն առնչվում էր նրա ձախողակ և ձախորդ գործունեության հետ, արևմտահայության աչքում գցել էր դաշնակցության, մանավանդ նրա «ամենազոր» Արևելյան բյուրոյի վարկը: Դաշնակցականներն ու դաշնակցությանը համակրողները, որոնք ստվար թիվ էին կազմում Անդրկովկաս ապաստանած արևմտահայ մտավորականության մեջ, հեռանում էին դաշնակցությունից, սահմանազատվում նրանից:

Սկսվել էր այդ կուսակցության անդարմանելի ճգնաժամը, որն արտահայտվում էր ակներև տարրնթացությամբ և քաղաքական օրգանիզմի քայքայմամբ:

Վանի 1915 թվականի հուլիսյան մեծ նահանջից հետո ռամկավարները նույն թվականի նոյեմբերի 29-ին Թիֆլիսում կազմակերպում են իրենց օրգանի՝ «Վան-Տոսպ» շաբաթաթերթի, վերահրատարակումը, որի շուրջը, հասկանալի պատճառով, համախմբվում են նաև Արևելյան բյուրոյի քաղաքականությունից դժգոհ առանձին նախկին դաշնակցականներ (տրապիզոնցի Հովսեփ Միքայելյանը, մշեցի Նազարեթ Մարտիրոսյանը և ուրիշներ):

Վանի դաշնակցական մտավորականությունը հիմնականում բնակություն էր հաստատել Երևանում: Նրան եւս 1916 թ. մայիսին հաջողվեց Երևանում վերահրատարակել Վանի իրենց «Աշխատանք» եռօրյա թերթը: Երկու թերթերն էլ ցարական գրաքննության սեղմ ճիրաններում զրկված էին քաղաքական հարցերն արծարծելու հնարավորությունից, նրանց էջերը հաճախակի տպագրվում էին սպիտակ սյունակներով: 1917 թվականի փետրվարյան հեղափոխությունը բոլորի հետ միասին բացեց նաև արևմտահայերի երկու թերթերի լեզուն:



Ազատ խոսքի հնարավորությունը խանդավառեց նաև Անդրանիկին, և նա իր շուրջը համախմբված նախկին դաշնակցական մտավորականների ուժերով 1917 թվականի ապրիլի 18-ից Թիֆլիսում սկսեց հրատարակել «Հայաստան» օրաթերթը: Նույն ամսին Անդրանիկի, Արամի և Արտակ Դարբինյանի («Վան-Տոսպի» խմբագրի) կոչով Երևանում 1917 թվականի մայիսի 2/15-ին գումարվեց արևմտահայերի առաջին համագումարը, որն ընտրեց մշտապես գործող Խորհուրդ ու Բյուրո:

Արևմտահայերի առաջին համագումարում լուրջ բախում ունեցան դաշնակցությանը հավատարիմ մնացածները և հուսախաբման հետևանքով դաշնակցությունից հեռացածներն ու հեռացողները:

Երևանի «Աշխատանք»-ի շուրջը համախմբված վասպուրականցի դաշնակցականները, ինչպես, օրինակ, խմբագիր Հմայակ Մանուկյանը, պատասխանատու քարտուղար Օնիկ Մխիթարյանը, Հայկակ Կոսոյանը և ուրիշներ, որոնք Արամի հետևորդներն էին Վանում, դեռևս հավատարիմ էին մնացել դաշնակցությանը: Անդրանիկի հիմնած Թիֆլիսի «Հայաստան» օրաթերթի շուրջը հավաքված դաշնակցականները՝ խմբագիր Վահան Թոթովենցը, բժշբասաց դոկտոր Բոնապարտյանը, Տեր-Զաքարյանը, Լյուլեճյանը և ուրիշներ, թեև առայժմ կազմակերպչորեն չէին հեռացել դաշնակցությունից, սակայն դարձել էին նրա Արևելյան բյուրոյի մոլի հակառակորդները և առիթներ էին որոնում իրենց դժգոհությունն արտահայտելու համար:

Արևմտահայերի այդ առաջին համագումարում դժգոհության արտահայտման առիթ հանդիսացան Արևմտահայ խորհրդի և Արևմտահայ բյուրոյի ընտրությունները: Արամ Մանուկյանը համագումար հրավիրող եռյակի անդամ էր: Ընտրությունների ժամանակ անդրանիկյանները մերժեցին ընտրական ցուցակների մեջ մտցնել նրա անունը, առարկելով, որ նա արևմտահայ չէ: Վեճը հասավ աթոռակռվի՝ այդ բառի ոչ-փոխաբերական իմաստով: Եվ թեև համագումարի 64 պատգամավորներից 41-ը դաշնակցականներ էին, այնուամենայնիվ, դաշնակցությանը հավատարիմ մնացած վանեցի և մյուս դաշնակցականներին չհաջողվեց կոտրել անդրանիկյանների համառությունը և Արամը դուրս մնաց ընտրական ցուցակից:

«Ինչ որ անկեղծ ցավով նկատեցի,— գրում է դաշնակցական շեֆ Վահան Փափազյանը,— և այդ առթիվ արտահայտեցի իմ ցասումը՝ նեղմիտ մտայնությունն էր արևմտահայ համագումարի որոշ հոսանքներու և քանի մը ազդեցիկ անձերու— Արամին չուզեցին ընտրել, որովհետև ծագումով թուրքահայ չէր...»[1]:

Դրանից հետո մինչև հոկտեմբեր ամիսը «Հայաստան» օրաթերթը շարունակեց իր պայքարը դաշնակցության Արևելյան բյուրոյի քաղաքականության դեմ, բայց այնքան, որքան «Հայաստան» օրաթերթի շուրջը հավաքված դժգոհների գլխավոր գաղափարախոսը սնամեջ բժբասաց դոկտ. Բոնապարտյանն էր, ապա «Հայաստան» օրաթերթին երբեք չհաջողվեց սկզբունքային բարձրության հասցնել իր քննադատությունը, թեև Անդրանիկի հմայքն օրըստօրե ստվարացնում էր նրա համախոհների շարքերը:

Թիֆլիսում Արևմտյան բյուրոյից ոչ ոք չկար: Նկատի ունենալով անդրա-

1 Վ. Փափազյան, «Իմ հուշերը», հ. Բ., էջ 434:



digitised by A.R.A.R.@

նիկյանների ստվարացումը, Արևելյան բյուրոն առանց որևէ ընդհանուր ժողովի, 1917 թվականի սեպտեմբերին, Թիֆլիսում կազմակերպում է դաշնակցության «Հայաստանի բյուրո» և որպես այդ նորաթուխ բյուրոյի օրգան նույն ամսին վերահրատարակում է «Ազատամարտը»։ Սակայն «Ազատամարտը» կարճատև կյանք ունեցավ և «Հայաստանի բյուրոյի» անունն այլևս չլսվեց[1]։

1917 թվականի սեպտեմբերի 28-ից մինչև հոկտեմբերի 12-ը Թիֆլիսում գումարվեց արևելահայերի համախորհրդակցությունը, որին մասնակցում էին 99 դաշնակցական, 53 ժողովրդական (նորակազմ կադետական), 28 սոցիալ-դեմոկրատ, 23 սոցիալիստ-հեղափոխական (էսեռ), 7 անկուսակցական (ընդամենը 210 պատգամավոր)։ Այդ համախորհրդակցությանը հրավիրված էին նաև պատերազմի տարիներին Անդրկովկասում հայտնի դարձած սկզբում 7, այնուհետև 10 արևմտահայ մտավորականներ՝ Անդրանիկի գլխավորությամբ։

Քաղաքական մոմենտի մասին լսելով Ս. Վրացյանի զեկուցումը, պատգամավորները ծավալեցին դաշնակցության վարած ազգակործան քաղաքականության սուր քննադատություն։ Կամավորական շարժումը պաշտպանելու համար Ն. Աղբալյանի արտասանած երկար ճառը ո՛չ միայն արդյունք չտվեց, այլև ավելի բորբոքեց կրքերը։ Կամավորական շարժման քննադատությամբ հանդես եկան անգամ կամավորական հազարյակների հրամանատարներ Անդրանիկը և ուրիշներ։ Իր կրքոտ ճառն արտասանելուց հետո Անդրանիկը հոկտեմբերի 5-ին թերթերում հրապարակեց իր հրաժարականը դաշնակցությունից և հիվանդության պատճառով մեկնեց Հյուսիսային Կովկաս՝ Հանքային ջրերը։ Արևմտահայերի բողոքներին չանսալու, երկրի ձայնը չլսելու[2] համար Արամ Մանուկյանը և Վահան Փափազյանը ևս սուր քննադատության ենթարկեցին Արևելյան բյուրոյի վարած անիրատես քաղաքականությունը։ Համախորհրդակցությանը մասնակցող արևմտահայ մտավորականները բողոքի բանաձև առաջարկեցին համախորհրդակցությանը, որի տակ, սակայն, չստորագրեցին միայն Վահան Փափազյանը և Արամ Մանուկյանը։ Այստեղ ևս Արամը չընտրվեց Արևելահայերի ազգային խորհրդի անդամ։

Ահա արևմտահայ պատգամավորների բողոքի բանաձևը.

«Ռուսահայ ազգ. համախորհուրդին մասնակցող Թուրքահայ պատգամավորներս» լսելով Ազգ. բյուրոյի համարատվությունը և թեր ու դեմ վիճաբանությունները. գտանք.

«1—Որ Ազգ. բյուրոն յուր նախաձեռնության որպես հիմք ոչ միայն չէ ունեցել Թուրքահայության մանդատը, այլ նա չէ անսացեր Թուրքահայության կողմե երկրեն խրկված նախազգուշություններուն։

«2—Որ Ազգ. բյուրոն յուր ձեռնարկած ծանրակշիռ նշանակություն ունեցող աքթերու համար չէ ունեցեր ոչ անհրաժեշտ երաշխիք և ոչ ալ համապատասխան տակտիկա։

«Եվ որովհետև համարատվությունը չուներ ոչ հավաքական և ոչ տոկումենտալ բնույթ և կատարվեցավ հարևանցիորեն և մանավանդ գլխավոր համարառու Թուրքահայության բացակայության, կգտնենք, որ Ազգ. բյուրոն պարտավոր է տալ յուր լրիվ համարատվությունը համազգային ժողովի մը առջև, երբ յուր իսկական համարառուն՝ Թուրքահայությունը, հնարավորություն կունենա լսելու զինքը»։

1917 թ. հոկտեմբերի 13-ի թվակիր այս բանաձևն ստորագրել են անդրանիկյաններից Հակոբ Տեր-Զաքարյանը, տոքթ. Պոնափարթյանը, ռամկավարներից Արտակ Դարբինյանը, Ավետիս Թերզիբաշյանը, պրոֆ. Հովհաննես Հակոբյանը, Վարդան Պապիկյանը, հնչակյաններից Հրանտ Գալիկյանը։

Ծավալվող և խորացող ռուսական հեղափոխությունը դաշնակցության համար ավելի հրատապ էր դարձրել սոցիալիզմով պճնազարդվելու անհրաժեշտությունը։ Անտանտի երկրների սոցիալիստները Ստոկհոլմում հրավիրել էին իրենց կոնֆերանսը։ Դաշնակցությունը Ստոկհոլմ է ուղարկում իր հիմնադիրներից ողջ մնացած Ռոստոմին։ Ստոկհոլմից վերադարձին մուսավաթականների կողմից Բաքու—Թիֆլիս երկաթուղու կտրված լինելու պատճառով Ռոստոմը հարկադրաբար մնում է Բաքվում։ Ռոստոմի բացակայության այդ ամիսներին Թիֆլիսում օրվա հերոս էր դարձել Մինաս Տեր-Մինասյանը (Ռուբեն «փաշան»), որին Տարոնի ինքնապաշտպանությունը ձախողելու (1915 թ.) համար Ռոստոմն այպանել էր Թիֆլիսում։ Հիմա Ռոստոմը բացակա էր, իսկ ռուսական բանակի պահեստային սպա Ռուբենը միակ «զինվորականն» էր դաշնակցության կուսակցության մեջ։ Նա էր կազմակերպում Թիֆլիսի Հայոց ազգային խորհրդի զինված ուժերը։ Ռուբենը, որը լավ էր ճանաչում և բարձր գնահատում երիցս մերժված Արամ Մանուկյանին, 1917 թվականի դեկտեմբերին, երբ դրությունն սպառնական էր դարձել, Արամին, որն Ազգային խորհրդի անդամ չէր ընտրված, որպես Թիֆլիսի Հայոց ազգային խորհրդի ներկայացուցիչ ուղարկում է Երևան, որտեղ իրենց օրգանը հրատարակող արևմտահայ դաշնակցականներն Արամի նախկին աշակերտներն էին եղել։ Երևանում Արամի հենարանը պիտի հանդիսանային առաջին հերթին այդ վանեցի դաշնակցականները, որոնք, ինչպես ասացինք, չէին միացել Թիֆլիսի «Հայաստան» օրաթերթի շուրջը համախմբված անդրանիկյաններին և հավատարիմ էին մնացել Արևելյան բյուրոյին կամ մեռելածին «Հայաստանի բյուրոյին»։ Սակայն դաշնակցությունը շուտով նրանց էլ պիտի հիասթափեցներ և այն էլ ինչպես...

1918 թվականի փետրվարին սկսվեց Թուրքական արշավանքը։ Ռազմաճակատում ռուս զորք չէր մնացել։ Հայկական զորքերը, թվով ոչ պակաս քան 30 հազար, ոչ միայն չկարողացան պահել ճակատը, այլև խուճապային փախուստի մատնվելով, չկարողացան գոնե ոչնչացնել ռուսի թողած հազարավոր թնդանոթները. անթիվ-անհամար զենք, ռազմամթերքի ու պարենի անսպառ պաշարներ, որոնց անարգել տիրանալով հարստացավ և ուժեղացավ Թուրքական մինչ այդ սովալլուկ բանակը։ Մի քանի հարյուր հրացանով օսմանյան կայսրությունը խորտակելու մարմաջով ավելի քան երկու տասնամյակ տարված դաշնակցությունը չկարողացավ հազարավոր թնդանոթներով հիշատակության արժանի գեթ մեկ ճակատամարտ մղել Երզնկայից մինչև Սարդարապատ։

Այս ահավոր անկումը, «ոմանց» համար «անսպասելի» այս ազգային տրագեդիան, որը տաղանդավոր Լեռ Կամսարին ազգային տրագիկոմեդիայի նյութ տվեց դաշնակցության իսկ պաշտոնական մամուլում, չէր կարող բաց չանել «Աշխատանքի» շուրջը հավաքված վանեցի երիտասարդ դաշնակ-

1 Պատմաբան դարձած ամենագետ պրն. Կ. Սասունուն է մնում պատմության համար հայտնի դարձնել այդ ընդոծին «Հայաստանի բյուրոյի» կազմը և մանավանդ նրա գործունեությունը, 1918 թ. Թուրքական արշավանքի օրերին—Հ. Թ.։

2 Արամ Մանուկյանը, ռուս-թուրքական պատերազմը դեռ չսկսված, Վանից Հովհաննես Քաջազնունուն ուղարկել է Թիֆլիս (1914 թ. աշնանը), խորհուրդ տալով ետ կանգնել այդ աղետաբեր շարժումից (տե՛ս Վ. Փափազյան, «Իմ հուշերը», հ. Բ., էջ 289—290)։







digitised by A.R.A.R.@

ունեցողները, թե ոչ ոք, ոչ մեկ իրավունք ունի ընդվզելու ժողովրդական կամքին դեմ, որ որոշել է կռվել մինչև վերջը, մինչև վերջնական հաղթանակը կամ պարտությունը։ Եվ եթե հիմա թուլության, հուսահատության նշաններ կերևին հոս հոն,ատոնց միակ պատճառը մեր ղեկավար կոչեցյալներն են, որոնց գլխի և ուղեղի մեջ թափանցեր է հուսահատությունը թույնի պես, որոնք կրնան միայն անգործադրելի հրամաններ ու հրահանգներ հանել, խախտել նույնիսկ իրենց գոյության հիմքը, առանց սրտապարար ու ոգևորիչ խոսք մը ըսելու ժողովրդին ու զինվորության։

Վայ անոնց, որոնք ստրկական ոգի ունին, վայ անոնց, որոնք զիջման և պայմանի կպատրաստվին, և վայ այն ղեկավարներուն, որոնք իրենց հուսահատ տրամադրությամբ ու ստրկացման տանող ձեռնարկներով կդավաճանեն հայ ժողովուրդը («Աշխատանք», 1918 թ., № 204)։

«Աշխատանքի» շուրջը համախմբված արևմտահայ դաշնակցականները, սակայն, չգիտեին, որ վերջնագիրն արդեն ընդունված է, որ «Վայ ղեկավարները» արդեն շուտով ստորագրելու էին պայմանագիրը, մի պայմանագիր, որ Ավ. Ահարոնյանի և Նիկ. Աղբալյանի նամակի հետ Թիֆլիսից Երևան պիտի բերեր մուսավաթական սուրհանդակ Վեքիլովը։ Սակայն ռազմաճակատներում թուրքերը բանագնացների միջոցով արդեն հայ զորքին հաղորդել էին զինադադարի և հաշտության բանակցությունների վերսկսման մասին։ Այս լուրերը ռազմաճակատներից են հասնում ուղիղ հեռագրաթելից զրկված և բովանդակ աշխարհից կտրված Երևան։

Երևանի արևմտահայ դաշնակցականների օրգանը բարձրացնում է իր բողոքի ցասկոտ ձայնը։

«Իսկ ճայոց կեդր. ազգային խորհուրդը,— գրում է «Աշխատանքը»,— որ իր և Թիֆլիսեն զատ ուրիշ ոչինչի մասին մտածեց ու հոգաց և թողուց, որ հայկական շրջանները մեկուսանան, կտրվին, ապրին կամ մեռնին, և որ բոլոր սխալները գործեց իբր թե ստիպված, մյուս ազգություններու հետ միասին, այսօր կրկին անգամ, առանց կապ ունենալու Երևանի ճայության ճետ, առանց իրավունք ունենալու նման ճակատագրական ձեռնարկ մը կատարելու և վերջապես առանց ճրաճանգ ստանալու՝ բանակցություններ է սկսած, ո՞վ գիտե ինչ մեծ զոհողություններով, և հայության բախտը տնօրինելու քայլն է առած։ Եվ եթե երբեք կնքված է հաշտությունը, ստորագրված են պայմանները, ընդունված է Թուրքիո վերջնագիրը, զիջված են այդ հողամասերը առանց ճայության կամքին և կարծիքին, ապա ուրեմն գործված է ճանցանքներու ամենասևը, դավաճանության ամենաասոսկալին, որոնց նմանը ճայկական տարեգրության մեջ չէ եղած դեռ» («Աշխատանք», Երևան, 1918, հունիսի 5)։

Երեք օր հետո, հունիսի 8-ին, ամեն ինչ արդեն հայտնի էր «մուսավաթի» կողմից Թիֆլիսում սիրով հայոց ազգային խորհրդին տրամադրված սուրհանդակի միջոցով։ Հունիսի 4-ին Բաթումում ստորագրվել էր նվաստացուցիչ պայմանագիրը։ Երևանի արևմտահայ դաշնակցականների օրգանն իր վերաբերմունքն է հայտնում ավելի ցասկոտ առաջնորդողով։

«Կատարվեցավ… գրչի թեթև շարժումով մը վերջացավ ամեն ինչ,— գրում էր «Աշխատանք»-ը,— թաղվեցան ապագա հույսերն ու երազները, թողնելով սև, մռայլ իրականություն մը՝ ճնշող, խորտվող և մահվան չափ սարսռազդեցիկ։ Տրապիզոնի և Բաթումի կատակերգություններն անսպասելի ու ողբերգական վախճան ունեցան, թևաթափ ընելով հայ ժողովուրդը և մատնելով զայն ստրկական կենցաղի մը։

Այս մեծ դավաճանության ճանդեպ, վշտի ծանրության տակ սահմռկած, մենք այլևս ուղեղ չունինք մտածելու, այլևս սիրտ չունինք խոսելու, չգիտենք ինչ բառ և խոսք, ինչ լեզու ու ոճ գործածենք։ Դարձեր ենք հիմա անզգա ու անլեզու, երկչոտ ու ստրկամիտ։

Ինչպե՞ս հաշիվ տանք հարյուր հազարավոր անշիրիմ նահատակներուն և ինչո՞վ սրբենք մեր ճակատի մուրը, երբ միայն անարգանքի սյունին բաժին պիտի ըլլանք, երբ միայն անեծքի պիտի արժանանանք» («Աշխատանք», Երևան, 1918 թ., հունիսի 8)։

Արևմտահայ դաշնակցականների Երևանի օրգան «Աշխատանք» եռօրյա թերթից այս մեջբերումները կատարելով, մենք բավականացանք միայն ընդգծումներ անելով, որոնք ինքնին շատ պերճախոս են։



Մեկը շատ բարյացակամորեն վերլուծելով ու գնահատելով իմ «Սարդարապատի հերոսամարտը» աշխատությունը, այնուամենայնիվ գրել էր, թե «որքան որ շատ դյուրին ըլլա դեպքերեն 50 տարի վերջ դատել պատմությունը, այսուհանդերձ…»։ Ինչպես տեսնում եք, «Աշխատանք» թերթը 50 տարի հետո չէ հանդես բերում իր քաղաքական իրատեսությունը (ինչպես դաշնակցական պարագլուխներից ոմանք այժմ անում են իրենց հուշերում), այլ օրին, երկաթը տաք-տաք ծեծելու ժամանակ հայտնում է իր ճիշտ մտքերը և նշավակում, պարսավում է նրանց, ովքեր իրենց վտանգալի ու վնասակար քայլերով արժանի են այդ պարսավանքին։

Արդ, ավելի չերկարացնելու համար խոսքը տանք փաշա հորջորջված Ռուբենին, որն այդ օրերի մասին ավելի քան 30 տարի ուշացումով գրել է.

«Ամենից ավելի անկաշկանդ է Բաքվի Հայոց ազգային խորհուրդը։ Այնտեղի հայությունը հստակ կերպով կանգնեց մինչև վերջը դիմադրելու տեսակետի վրա, և մի ճակատ էր կազմած բոլշևիկության հետ՝ ընդդեմ բոլոր մյուս ուժերի… Բաքվա ընթացքը արձագանք պիտի գտներ դաշնակցականների մեջ, թեև դաշնակցությունն ի պաշտոնե կապված էր թաթար-վրացական բլոկին»[1]։

Շարունակենք մեջբերումը Ռուբենից.

«Երեք դրություններ կային Ազգային խորհրդի և ղեկավար կուսակցության՝ դաշնակցության առջև։ Առաջինը լինել Վրաստանի և Ադրբեջանի հետ՝ երեսը ուղղելով դեպի գերմանացիք և Թուրքիա։ Երկրորդը՝ դեմ լինել թուրքերին և հարևաններին, հույսեր կապելով դաշնակիցների հաղթության վրա։ Երրորդը՝ դեմ լինել և՛ հարևաններին, և՛ դաշնակիցներին, հենվել Մոսկվայում հիմնավորված բոլշևիկների և Կովկասում մնացած նրանց բեկորների վրա։

Այս երեք դրությունից և ոչ մեկը միանգամից չընդգրկվեց անվերապահ կերպով։ Բայց փորձեր եղան երեք հենարաններից էլ օգտվել միաժամանակ։ Թե կուսակցության մեջ և թե Ազգային խորհրդում միատեսակ ճասկացողություն չկար այս երեք դրություններից մեկն ու մեկն ընտրելու վճռական կերպով»[2]։

Այս տողերից երևում է նաև, որ Ռուբենն ինքն էլ գիտե, որ «երեք հենարաններից» միաժամանակ օգտվելու հարցում դաշնակցությունը ոչ միայն նախապես իրեն զրկել էր նախաձեռնությունից, այլև անգամ կուրորեն խարխափելու շոշափումներից, որ բոլոր «փորձերի» ժամանակ էլ նախաձեռնությունը նախապես հանձնել էր վերոհիշյալ «երեք հենարաններին»։

Ավելին.

«Բաքվա ընթացքը արձագանք պիտի գտներ դաշնակցականների մեջ, թեև դաշնակցությունն ի պաշտոնե կապված էր թաթար-վրացական բլոկին», հետին թվով (1951 թվականի) խոստովանությամբ Ռուբենը դաշնակցությանն է մատնում սովետական օրիենտացիան չնախընտրելու ճարցում:

Դաշնակցական սպայի՝ Եգոր Տեր-Մինասյանի ձեռքով դաշնակցության Արևելյան բյուրոյի անդամ, անդրկովկասյան կառավարության կազմում Ակակի Չխենկելու գործակից Խաչատուր Կարճիկյանի սպանության մասին (1918 թ. նոյեմբերի 14-ին, Երևանում) Ս. Վրացյանը 1919 թվականին իր ամերիկահայ կուսակիցներին գրել է.

«Ըստ իս, այս ոճիրը հետևանք է Թիֆլիսի մեջ եղած տարակարծություններու և վեճերու բոլշևիկյան հեղաշրջումե ետքը։ Ոմանք, ատոնց մեջ և Կարճիկյանը, այն կարծիքի էին, թե Հայաստանի ճակատագիրը սերտորեն կապված է Կովկասի հարևան ժողովուրդներու հետ։ Հետևաբար, մեր քաղաքականությունն ալ այդ ուղղությամբ պետք է վարել։ Ուրիշներ կպնդեին, թե Հայաստանի ճակատագիրը կապված է Ռուսաստանի հետ, ուրեմն պետք է գործակցել բոլշևիկներու հետ։ Ժողովներու մեջ բուռն ճառեր կխոսվեին մենշևիկներու և մուսավաթականներու դեմ։ Կարճիկյանն ամենահամոզված պաշտպաններեն մեկն էր գործակցության վրացիներու և ադըր-

1 Ռուբեն, նույն տեղը, էջ 138։

2 Ռուբեն, «Հայ հեղափոխականի մը հիշատակները», հ. 7, էջ 140։



digitised by A.R.A.R.@

բեջանցիներու հետ: Ջղային Եգորը լարված ուշադրությամբ կհետևեր այդ վճռերուն, և երևի, համոզում գոյացուցած էր, թե Կարճիկյանի ջատագոված տեսակետը կործանարար է հայության համար: Եվ հետևանքը ահա՝ անփոխարինելի կորուստ»1:

Եվ հետևանքը մենշևիկների ու մուսավաթականների հետ անհույս բլոկի ու կոալիցիայի գերադասումը սովետական օրիենտացիայից ու Անդրկովկասը Սովետական Ռուսաստանից «անկախ» հռչակելը, որի պատճառով հայ ժողովուրդը տվեց ո՛չ թե մեկ անհատի կորուստ, այլ տասնյակ հազար քառակուսի կիլոմետր հայաբնակ տերիտորիայի և հարյուր հազարավոր հայ կյանքերի կորուստ:

Այսպիսով, դաշնակցության որոշ պարագլուխները խոստովանում են, որ իրենց կուսակցության ներսում բուռն վեճերից հետո հաղթել է սովետական օրիենտացիան մերժելու և մենշևիկ-մուսավաթական դավաճանական բլոկին անվերապահորեն միանալու հանցավոր կուրսը: Երևանի «Աշխատանքը» շարունակ բողոքում է այդ կուրսի դեմ, սակայն Արամ Մանուկյանի սուրհանդակը, որը հակառակ իր շատ առաջացած տարիքին դեռ չի հաղթահարել սուրհանդակի աննախանձելի մտամակարդակը, իր հավակնոտ գրքույկում անիրազեկորեն և նենգաբար բարբառում է.

«Հ. Թուրշյանը առաջին անգամ չէ, որ «ճգնում է» ցույց տալ, թե դաշնակցականների միջև սովետական օրիենտացիան ընտրելու հարցում կային տարաձայնություններ, ավելին, որ դաշնակցական գործիչների մեծամասնությունը դեմ է եղել այդ օրիենտացիային: Վերը առիթ եմ ունեցել ասելու և այժմ էլ գտնում եմ, որ այդ պնդումը որևէ իրական հիմք չունի, որ գուցե եղել են անհատներ, որոնք դեմ են եղել բոլշևիկներին, բայց թե դաշնակցությունն ամբողջությամբ և թե հայ ժողովուրդն այն օրերին ռուսական օրիենտացիա ունեին այն պարզ պատճառով, որ փրկության այլ ելք չէին տեսնում»2:

Որ հայ ժողովուրդն այն օրերին (և ոչ միայն այն օրերին) ուրիշ ելք չէր տեսնում, ճիշտ է: Բայց որ փրկության այդ միակ ելքը փակվեց նրա առաջ, ապա այդ էլ ճիշտ է: Իրավացի հարց է ծագում.— հապա ո՞վ փակեց փրկության այդ միակ ելքը: Չէ՛ որ այն օրերին հայ իրականության մեջ մենատիրում էր «ղեկավարելու պարտականություն և թյուրիմացություն ունեցողներու» կուսակցությունը՝ դաշնակցությունը:

Գոգոլի քաղաքապետն ասում է, որ «ենթասպայի կինը ինքն է իրեն ծեծել»:

Արամ Մանուկյանի սուրհանդակն ասում է, որ բոլշևիկյան օրիենտացիան մերժելու հարցում մեղավոր են հայ բոլշևիկները:

Ա՜խ, այդ հայ բոլշևիկները:

Արևմտահայերի համատարած բնաջնջումը և կամավորական շարժման ձախողումը բավական եղավ, որ անդրանիկյանները դեռևս 1917 թվականին հեռանային դաշնակցության շարքերից, սակայն թալֆայական ավանդություններով համառորեն դաշնակցության շարքերում մնացած մյուս արևմտահայ դաշնակցականների համար, ինչպես տեսնում ենք, հարկավոր էր նոր փորձություն, որ նրանք կրկին անգամ տեսնեին դաշնակցության սնանկությունը: Այդպիսի նոր փորձություն հանդիսացավ 1918 թվականի թուրքական արշավանքը, երբ դաշնակցությունը, մնալով հավատարիմ իր արկածախնդրական-կապիտուլյանտական քաղաքականությանը, օբյեկտիվորեն սատարեց թուրքական արշավանքի հաջողությանը:

---

1 Ս. Վրացյան, Հին թղթեր նոր պատմության համար, Պեյրութ, 1926, էջ 270—271:

2 Ա. Աստվածատրյան, Սարդարապատի պատմաշինությունը, Պեյրութ, 1966 թ., էջ 119:

# ՍՄԿԿ ՊԱՏՄԱԿԱՆ ՓՈՐՁԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

Մ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծում էր Հոկտեմբերյան հեղափոխության հսկայական միջազգային նշանակությունը ոչ միայն աշխարհի ժողովուրդների վրա թողած ազդեցության իմաստով, այլև մյուս երկրների համար նրա հիմնական գծերի օրինակ ծառայելու իմաստով: Իր ամբողջ յուրօրինակությամբ հանդերձ, որը կապված է Ռուսաստանի պատմական պայմանների հետ, Հոկտեմբերյան հեղափոխությունը հարթեց դեպի սոցիալիզմ տանող ընդհանուր մայրուղին: Դրանում է կայանում մեր հեղափոխության համաշխարհային պատմական նշանակությունը: «...Մեր ճանապարհը ճիշտ է,— գրել է Վ. Ի. Լենինը,— որովհետև այդ այն ճանապարհն է, որով վաղ թե ուշ անխուսափելիորեն անցնելու են և մնացած երկրները» (Երկեր, հ. 33, էջ 181): Ընդգծելով Հոկտեմբերյան հեղափոխության և բոլշևիկյան կուսակցության փորձի հսկայական միջազգային նշանակությունը, Լենինը միաժամանակ նշել է այդ փորձի ստեղծագործաբար օգտագործման անհրաժեշտությունը:

«Բոլոր ազգերը կգան դեպի սոցիալիզմ՝ դա անխուսափելի է,— սովորեցնում էր Լենինը,— բայց բոլորը կգան ոչ բոլորովին միատեսակ, յուրաքանչյուրը յուրահատկություն կմտցնի դեմոկրատիայի այս կամ այն ձևի մեջ, պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն տարատեսակության մեջ, հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերափոխումների այս կամ այն տեմպի մեջ» (Երկեր, հ. 23, էջ 81):

Բայց այդ առանձնահատկությունները, գտնում էր նա, կարող են վերաբերվել միայն ո՛չ հիմնականին, ո՛չ ամենագլխավորին, ո՛չ էականին: Ինչո՞ւ, որովհետև, նշում էր Լենինը, տնտեսության հիմնական ձևերը (կացութաձևերը) և նրանց համապատասխան քաղաքական ուժերը (դասակարգերը) Ռուսաստանում նույնն են, ինչ որ ամեն մի կապիտալիստական երկրում, որ առաջնակարգ նշանակություն ունեն հենց ընդհանուր գծերն ու օրինաչափությունները և շեշտը պետք է դնել դրանց վրա: Եվ իսկապես, միայն ելնելով դրանցից կարելի է ճիշտ հասկանալ ո՛չ ամենագլխավորին վերաբերող, ո՛չ էական այն տարբերություններն ու առանձնահատկությունները, որոնք գոյություն ունեն սովետական և ժողովրդա-դեմոկրատական հեղափոխությունների, սոցիալիզմի կառուցման մեթոդների միջև: Իսկ այդ տարբերությունների և առանձնահատկությունների առկայությունը չի հա-



digitised by A.R.A.R.@

կասում մարքսիզմ-լենինիզմի տեսությանը, այլ միայն ընդգծում է նրա
ստեղծագործական բնույթը:
Հետաքրքրական է նշել, որ մյուս երկրներում հաղթանակած սոցիա-
լիստական հեղափոխությունների մի շարք առանձնահատկությունների հնա-
րավորությունը կամ անխուսափելիությունը հանճարեղորեն կանխատեսեց
Վ. Ի. Լենինը: Մենք նկատի ունենք հողի ազգայնացման հարցը Եվրոպայի
մի շարք երկրներում, շահագործողներին ընտրական իրավունքից զրկելու,
պրոլետարիատի դիկտատուրայի ձևերի, սոցիալիստական վերափոխումնե-
րի մեթոդների ու տեմպերի հարցերը և այլն:
Ավելորդ չէ նշել, որ Վ. Ի. Լենինը պատմական և ազգային առանձնա-
հատկությունների հաշվառումը պարտադիր էր համարում ոչ միայն ուրիշ
երկրների կոմունիստական կուսակցությունների համար, այլև միևնույն
երկրի, Ռուսաստանի տարբեր մասերի համար: Հիշենք Վ. Ի. Լենինի 1921 թ.
հայտնի նամակը Կովկասի կոմունիստներին, որում նա խորհուրդ էր տա-
լիս չպատճենավորել ռուս կոմունիստների տակտիկան, անպայման հաշվի
առնել ազգային հանրապետությունների դրության յուրօրինակությունը,
ավելի դանդաղ, զգույշ և սիստեմատիկ անցում կատարել դեպի սոցիա-
լիզմ, կիրառել ռուս կոմունիստների փորձի ոչ թե տառը, այլ ոգին, իմաս-
տը, դասերը (Երկեր, հ. 32, էջ 402—406): Միանգամայն հասկանալի է, որ
այդ պահանջն ավելի մեծ չափով վերաբերում է մյուս երկրների կոմունիս-
տական կուսակցություններին:
Ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական կուսակցու-
թյուններն առաջնորդվելով սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզ-
մի կառուցման մարքսիստական-լենինյան տեսությամբ, ոչ միայն օգտա-
գործում են մեր կուսակցության հարուստ և ուսանելի փորձը, այլև զար-
գացնում, հարստացնում են այն:
Սոցիալիզմի ուղու վրա կանգնած յուրաքանչյուր երկիր իր բաժինն է
ներդնում գիտական կոմունիզմի տեսության և պրակտիկայի ընդհանուր
գանձարանը: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հաջող առաջընթացի
շահերը պահանջում են այդ փորձի ուշադիր ուսումնասիրում և փոխանա-
կում՝ իրավահավասարության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հի-
ման վրա: Այս ձևով է մշակվում նոր հասարակարգի կառուցման կոլեկտիվ
փորձը, որը ներառում է այն ամենը, ինչն ամենից ավելի էական է, ամե-
նից ավելի ընդհանուր նշանակություն ունեցող:
Ամենից ավելի հարուստ և բազմակողմանի փորձ է կուտակել, բնակա-
նաբար, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը: Մեր
ժողովրդին վիճակվեց նոր հասարակարգ կառուցելու ուղիների հարթման
առաջամարտիկի, ռահվիրայի պատմական դերը: Մեր երկիրն առաջինը
կատարեց սոցիալիստական հեղափոխություն, իրականացրեց արմատական
սոցիալիստական վերափոխումներ, կառուցեց սոցիալիզմ, այժմ էլ առաջինն
է թևակոխել կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանը: Մեր երկրի ժողո-
վուրդները անծանոթ ուղիներ են հարթում ամբողջ մարդկության համար,
սեփական փորձով ստուգում են այդ ուղիների ճշտությունը, հանդիպում
շատ դժվարությունների, գտնում դրանք հաղթահարելու միջոցներ, ընտրում
են կոմունիստական շինարարության լավագույն ձևեր ու մեթոդներ:
Սոցիալիստական մյուս երկրների կոմունիստական կուսակցություններն
աշխատում են ավելի նպաստավոր պայմաններում, իրենց տրամադրության



տակ ունենալով սովետական երկրի հարուստ փորձը, ստանալով նրա բազ-
մակողմանի անշահախնդիր, եղբայրական օգնությունը: Իսկ դրանք սոցիա-
լիստական այդ երկրներին հնարավորություն են տալիս կրճատել սոցիա-
լիստական շինարարության ժամկետները, խուսափել շատ սխալներից և
դժվարություններից:
Սոցիալիստական երկրների կոմունիստական կուսակցությունների բա-
ցարձակ մեծամասնությունը ճիշտ է զուգակցում ազգայինն ու միջազգայի-
նը, ստեղծագործաբար է օգտագործում Հոկտեմբերյան հեղափոխության և
մեր կուսակցության պատմական փորձը:
Այժմ բերենք մի քանի օրինակներ, որոնք ցույց են տալիս, թե նրանք
պրակտիկայում ինչպես են անում այդ:
Ամենից առաջ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ հարցում:
Մեր երկրում պարզորոշ կերպով կարելի էր տեսնել հեղափոխության
դեմոկրատական և սոցիալիստական էտապները: Ավելի ճիշտ կլիներ ասել,
որ մեզ մոտ կատարվեցին երկու ինքնուրույն հեղափոխություններ՝ Փետր-
վարյան (բուրժուա-դեմոկրատական) և Հոկտեմբերյան (սոցիալիստական),
որոնք միմյանցից բավականաչափ սահմանազատված էին: Հեղափոխու-
թյան գլխավոր հարցը, այսինքն՝ իշխանության հարցը մեզ մոտ լուծվեց բա-
վականին արագ՝ բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից ընդամենը
մի քանի ամիս հետո:
Ժողովրդա-դեմոկրատական երկրներում տեղի ունեցավ համադեմո-
կրատական և սոցիալիստական վերափոխումների զուգակցում, միահյու-
սում, հեղափոխության դեմոկրատական և սոցիալիստական էտապների
այնպիսի մերձեցում, որ դժվար է ասել, թե երբ է ավարտվում մեկ և սկըս-
վում մյուս էտապը:
Հեղափոխության գլխավոր հարցը, իշխանության հարցն այնտեղ որոշ-
վեց ոչ թե կարճատև ժամանակում, միանգամից, այլ աստիճանաբար, մի
շարք անցողիկ աստիճանների միջոցով: Բացառություն կազմեց միայն Բուլ-
ղարիան: Այդ երկրներում պրակտիկայում իրականացվեց պերմանենտ հե-
ղափոխություն: Դեմոկրատական հեղափոխության վերաճումը սոցիալիս-
տականի և՛ տևական էր (մի քանի տարի), և՛, որպես կանոն, խաղաղ (առանց
զինված ապստամբության):
Հասկանալի է, որ հեղափոխության միայն երկրորդ էտապը, այսինքն՝
դեմոկրատական հեղափոխության վերաճումը սոցիալիստականի, կատար-
վեց խաղաղ ճանապարհով: Վերաճումը կատարվեց խաղաղ ձևով, որով-
հետև ռեակցիայի հիմնական ուժերը ջախջախվեցին արդեն հեղափոխության
առաջին էտապում: Առանձին երկրներում դեմոկրատական հեղափոխության
հաղթանակը միաժամանակ նշանակում էր նաև պրոլետարիատի դիկտա-
տուրայի հաղթանակ, ինչպես Բուլղարիայում: Այստեղ պրոլետարիատի
դիկտատուրա հաստատվեց արդեն 1944 թ. սեպտեմբերի 9-ի հաղթական
ապստամբությունից հետո: Հարավսլավիայում բուրժուազիայի և կալվա-
ծատերերի պարտությունը տեղի ունեցավ քաղաքացիական պատերազմի
հետևանքով: Կուբայում սոցիալիստական հեղափոխությունը հաղթանակեց
համաշխարհային պատերազմի բացակայության պայմաններում:
Պետական հին ապարատի ջախջախման մասին:
Մեզ մոտ հին պետական ապարատի արմատական վերափոխումը,
ջախջախումը տեղի ունեցավ միանգամից: Նոր իշխանությունը հենվեց ոչ



digitised by A.R.A.R.@

թե գոյություն ունեցող օրենքների, հին սահմանադրության վրա, այլ ժողո-
վրդական մասսաների ներքևից եկող անմիջական նախաձեռնության, հե-
ղափոխական նվաճումների վրա։ Լենինը գրել է. «Սովետներն առաջացան
առանց որևէ սահմանադրության և մեկ տարուց ավելի (1917-ի գարնանից
մինչև 1918-ի ամառը) ապրեցին առանց որևէ սահմանադրության» (Երկեր,
հ. 28, էջ 343)։ Մեզ մոտ հին ապարատից շատ քիչ տարրեր փոխանցվեցին
(բանկեր, դրամարկղներ, կոոպերացիա)։ Ժողովրդական դեմոկրատիայի եր-
կրներում իշխանության անցումը բանվոր դասակարգի ձեռքը իրականացվեց,
ինչպես ասում են, «օրինական կարգով», պահպանելով պառլամենտական
պրոցեդուրայի, սահմանադրությունների կանոններն ու ձևականությունները.
պետական հին ապարատի ավելի շատ տարրերի պահպանումով և ժամանա-
կավոր օգտագործումով սոցիալիզմի օգտին։ Հին ապարատի այդպիսի
տարրերից են՝ սեյմը, պրեզիդենտը, ազգային ժողովը, վոեվոդները, կմետ-
ները, մարզի դիրեկտորները, ավագները և այլն։

Մեր երկրում ստեղծված յուրահատուկ պայմաններում տապալված
շահագործողները, ինչպես հայտնի է, ընտրական իրավունքից զրկվեցին,
որովհետև նրանք դիմում էին նոր կարգի դեմ պայքարի ամենասուր ձե-
վերի, նոր իշխանության կողմից ձեռնարկվող միջոցառումների սաբոտաժի
և այլն։ Հեղափոխության ներքին ու արտաքին նպաստավոր պայմանների
առկայության հետևանքով մյուս սոցիալիստական երկրներում նախկին շա-
հագործողները, ինչպես կանխատեսում էր Լենինը, ընտրական իրավունքից
չզրկվեցին և շուտով կիրառվեցին ընդհանուր, ուղղակի և հավասար ընտ-
րություններ փակ (գաղտնի) քվեարկությամբ։

Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը շահագործողներին ընտրական իրա-
վունքից զրկելը չէր համարում պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտ
հատկանիշը, պարտադիր պայմանը։

Սոցիալիստական հեղափոխությունները մյուս երկրներում հասցրին պրո-
լետարիատի դիկտատուրայի հաստատման՝ ժողովրդա-դեմոկրատական
հանրապետության ձևով։ Հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրայի ձե-
վերի բազմազանության մասին լենինյան ուսմունքը։ Լենինը ուղղակի գրել
է, որ սովետները պրոլետարիատի դիկտատուրայի ռուսական ձևն են։ Ժողո-
վրդա-դեմոկրատական հանրապետությունն էլ հաջողությամբ կատարում է
պրոլետարիատի դիկտատուրայի բոլոր ֆունկցիաները։ Էականում նրանք համ-
ընկնում են։

Ժողովրդա-դեմոկրատական երկրներում սոցիալիստական հեղափոխու-
թյուններն ունեցան սոցիալական ավելի լայն բազա, հենվեցին դասակար-
գային ավելի լայն դաշինքի վրա, որը կարևոր նշանակություն ունեցավ
հեղափոխության հաղթանակի համար։ Այն հասցրեց ազգային կամ հայ-
րենական ճակատի ստեղծմանը, բազմակուսակցական սիստեմին, ինչպես
նաև ռեակցիոն վերնախավերի մեկուսացմանը և դրանով իսկ նպաստեց
հեղափոխության դեմոկրատական էտապից խաղաղ ձևով անցնելու նրա
սոցիալիստական էտապին։

Այդ երկրներում ավելի ընդարձակվեցին բանվոր դասակարգի և գյու-
ղացիության դաշինքի շրջանակները։ Բանվոր դասակարգն այնտեղ հեղա-
փոխության ժամանակ դաշինքի մեջ էր ոչ միայն չքավոր, այլև միջակ
գյուղացիության հետ, քաղաքային բնակչության դեմոկրատականորեն տրա-
մադրված միջին խավերի հետ (հատկապես ԳԴՀ-ում)։ Մոնղոլիան և Չի-



նաստանը, կարելի է ասել, բերեցին դաշինքի նոր երանգներ՝ Մոնղոլիա-
յում գյուղացիությունը ըստ էության դաշինքի մեջ մտավ Սովետական Ռու-
սաստանի պրոլետարիատի հետ, իսկ Չինաստանում բանվոր դասակարգը
դաշինքի մեջ մտավ նաև ազգային բուրժուազիայի հետ։ Այս առանձնա-
հատկությունները կապված են այդ երկրների յուրահատուկ պայմանների
հետ։

Սովետական երկրում հասարակության քաղաքական կազմակերպման
բնորոշ գծերից մեկը միակուսակցական սիստեմի առկայությունն է։ Դա
ընդհանուր օրինաչափություն չէ։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրների
զարգացման համար բնորոշ դարձավ սոցիալիստական շինարարության
պլատֆորմի վրա կանգնած մի քանի քաղաքական կուսակցությունների առ-
կայությունը՝ բազմակուսակցականությունը։

Նախ պետք է նշել, որ ոչ բոլոր երկրներում կա բազմակուսակցակա-
նություն։ Մի շարք երկրներում (Ալբանիա, Հունգարիա, Ռումինիա, Հարավ-
սլավիա և այլն) միակուսակցական սիստեմ է։ Երկրորդ՝ զարգացման տեն-
դենցը դեպի միակուսակցական սիստեմն է (օր. Ռումինիայում եղել են մի
քանի կուսակցություններ, մնացել է մեկը), երրորդ՝ բազմակուսակցակա-
նության դեպքում էլ ղեկավար դերը պատկանում է կոմունիստական կու-
սակցությանը, չորրորդ՝ սովետական երկրում մյուս քաղաքական կուսակ-
ցություններն իրենք չուզեցին համագործակցել նոր իշխանության հետ։

1917 թ. նոյեմբերի 11-ին Վ. Ի. Լենինը գրում էր. «Մեղքը մերը չէ, որ
էսեռներն ու մենշևիկները հեռացան։ Նրանց առաջարկվում էր իշխանու-
թյանը մասնակցել, բայց նրանք ցանկանում են սպասել, մինչև որ կվեր-
ջանա կռիվը Կերենսկու հետ։ ...Մենք կառավարության մեջ մասնակցու-
թյան էինք հրավիրել բոլորին... Մենք սովետական կոալիցիոն կառավա-
րություն էինք ցանկանում։ Մենք ոչ ոքի սովետից չվտարեցինք» (Երկեր,
հ. 26, էջ 32)։

Արտադրության հիմնական միջոցների հանրայնացման մասին։

Այս բնագավառում ևս ՍՄԿԿ-ի փորձը կիրառվեց ստեղծագործաբար,
հաշվի առնելով տեղական պայմանները։ Մեր երկրում բուրժուազիայի սե-
փականացման միակ ձևը նրա ունեցվածքի անհատույց բռնագրավումն էր։
Այդ՝ Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, կարմիրգվարդիական գրոհ էր կա-
պիտալի դեմ։ Ինչքա՞ն վայնասուն, մեղադրանքներ եղան բոլշևիկների հաս-
ցեին։

«Բուրժուազիայի լակեյները մեզ հաճախ կշտամբել են,— ասել է Վ. Ի.
Լենինը,— թե մենք «կարմիրգվարդիական» գրոհ ենք մղել կապիտալի դեմ։
Այդ կշտամբանքն անհեթեթ է, արժանի հատկապես փողի պարկի լակեյ-
ներին։ Որովհետև «կարմիրգվարդիական» գրոհը կապիտալի դեմ իր ժամա-
նակ անպայման հանգամանքների թելադրանք էր... կապիտալը այն ժամա-
նակ դիմադրում էր ռազմականորեն...։ Ռազմական դիմադրությունն այլ
կերպ կոտրել չի կարելի, քան ռազմական միջոցներով...» (Երկեր, հ. 27,
էջ 293)։

Բայց այդ չի նշանակում, ասում էր Վ. Ի. Լենինը, թե «կարմիրգվար-
դիական» գրոհը տեղին է բոլոր հանգամանքներում, որ կապիտալի դեմ
պայքարի այլ եղանակներ չունենք։ Մենք հաղթեցինք թեթև հեծելազորով,
սակայն մենք ունենք նաև ծանր հրետանի, ճնշման մեթոդներից բացի
ունենք նաև կառավարման, համոզման մեթոդ (Նույն տեղը, էջ 294)։



digitised by A.R.A.R.@

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ազգային շահերին դավա-
ճանած բուրժուազիայի և օտարերկրյա բուրժուազիայի սեփականությունը
նույնպես բռնագրավվեց անհատույց ձևով, ինչպես մեզ մոտ, իսկ ազգային
շահերին չդավաճանած բուրժուազիայի սեփականությունը եա գնվեց: Ար-
տադրության միջոցների ետգնումը, որի մասին գրել են մարքսիզմ-լենի-
նիզմի կլասիկները, այսպիսով հնարավոր դարձավ միայն սոցիալիստական
հեղափոխությունների երկրորդ տուրից հետո և այս կամ այն ձևով կիրառ-
վեց ժողովրդա-դեմոկրատական համարյա բոլոր երկրներում: Շատ դեպ-
քերում, երբ բուրժուազիան հեղափոխության նկատմամբ իրեն լոյալ չէր
պահում, նրան տրվող կոմպենսացիան հասցվում էր նվազագույնի կամ բո-
լորովին դադարեցվում էր:

Սովետական Միությունում պետական կապիտալիզմը նշանակալի դեր
չխաղաց և գոյություն ունեցավ գլխավորապես օտարերկրյա կոնցեսիաների
և մանր ձեռնարկությունների կապիտալիստական վարձակալման ձևով:
Արտադրության հիմնական միջոցների կապիտալիստական սեփակա-
նության վերացման ժամանակ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում
պետական կապիտալիզմը ավելի մեծ դեր խաղաց, ավելի մեծ մասշտաբ-
ներով կիրառվեց, քան ՍՍՀՄ-ում: Այն կարևոր դեր խաղաց կապիտալիս-
տական սեփականությունը խաղաղորեն սոցիալիստականի վերափոխման
գործում:

Այսպիսով, սոցիալիստական երկրների փորձն արդյունաբերության
բնագավառում սոցիալիստական սեփականության ստեղծման երեք հիմնա-
կան ուղիներ տվեց՝ ա) կապիտալիստների սեփականության անհատույց
բռնագրավում, բ) երկրների մեծ մասի խոշոր բուրժուազիայի սեփականու-
թյան սոցիալիստական ազգայնացում կոմպենսացիայով սկզբնական էտա-
պում, գ) միջին ու մանր բուրժուազիայի սեփականության սոցիալիստա-
կան վերափոխում պետական կապիտալիզմի զանազան ձևերի կիրառման
միջոցով:

Հողի ազգայնացման մասին: Մեր երկրում և Մոնղոլիայում հողը
միանգամից դեկրետով հայտարարվեց պետական սեփականություն, ազ-
գայնացվեց: Մյուս սոցիալիստական երկրներում նրա միայն մի մասը (խո-
շոր անտառային մասսիվները, հողի ընդերքը, ջրերը, արդյունաբերական
ձեռնարկություններին և պետական տնտեսություններին հատկացված հո-
ղերը) ազգայնացվեց, իսկ հողի հիմնական մասը տրվեց գյուղացիներին
որպես նրանց սեփականություն: Դրա հետևանքով որոշ ժամանակ հողը
դարձավ առուծախի օբյեկտ, տրվեց վարձակալության: Հողը աշխատավոր
գյուղացիությանը տրվեց անվճար կամ աննշան վճարով: Շատ դեպքերում
վճարումը սիմվոլիկ բնույթ էր կրում և պետությունը շուտով վերացնում էր
գյուղացիների պարտավորությունները:

ՉԺՀ-ում, ԿԺԴՀ-ում, ՎԴՀ-ում և Ռումինիայում հողը կալվածատերերից և
կապիտալիստներից վերցվեց անհատույց, իսկ Չեխոսլովակիայում, Ալբա-
նիայում, Բուլղարիայում, Լեհաստանում, Հունգարիայում, ԳԴՀ-ում նախա-
տեսվում էր ետգնում, բայց փաստորեն այն միայն մասնակիորեն կի-
րառվեց:

Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը նշել է, որ այն երկրներում, որտեղ
երկար ժամանակ գոյություն ունի հողի մասնավոր սեփականություն և
գյուղացիների մոտ առաջացել է ուժեղ կապվածություն իրենց հողակտոր-



ներին՝ կոմունիստական կուսակցությունները սոցիալիստական հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո չպետք է առաջադրեն ամբողջ հողի ազգայնացման լոզունգը, այն գյուղացիությունը չի ընդունի: Վ. Ի. Լենինը գտնում էր, որ գալիք հեղափոխություններն, ըստ երևույթին, հողը ոչ թե կազգայնացնեն, այլ կբաժանեն գյուղացիներին: Եղավ այնպես, ինչպես կանխատեսում էր Վ. Ի. Լենինը:

Երկրների ինդուստրացման փորձի մասին: Սոցիալիստական ինդուստրացման պրոբլեմն առաջին անգամ հաջողությամբ լուծվեց Սովետական Միությունում, որի փորձը օգտագործվում է մյուս սոցիալիստական երկրներում: Սովետական Միությունում երկրի ինդուստրացումն իրականացվեց չափազանց անբարենպաստ պայմաններում՝ սոցիալ-տնտեսական, տեխնիկական և կուլտուրական տեսակետից հետամնաց, կապիտալիստական շրջապատման մեջ գտնվող երկրում, իրականացվեց միայն ներքին ռեսուրսներով, առանց դրսի օգնության և որևէ փորձի: Տնտեսական էֆեկտիվության, շահութաբերության նկատառումները երկրորդ պլան էին մղվում: Անհրաժեշտ էր անհապաղ ստեղծել համակողմանի, անկախ էկոնոմիկա, ապահովել երկրի լիակատար տնտեսական, դրանով իսկ նաև քաղաքական անկախությունը: Մյուս սոցիալիստական երկրները հնարավորություն ունեն այդպես չվարվելու:

Այդ երկրներում ինդուստրացման ներքին և արտաքին պայմանները, ինչ խոսք, շատ ավելի նպաստավոր են: Նրանք ունեն Սովետական Միության փորձը, ստանում են նրա օգնությունը, կա նաև փոխադարձ օգնություն: Ինդուստրացումն այնտեղ իրականացվում է հանգիստ պայմաններում, բնակչության միջոցների մոբիլիզացումը աննշան դեր է խաղում, զոհաբերությունների և զրկանքների հետ չի կապված: Այն իրականացվում է աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման, երկրների համագործակցության և փոխօգնության պայմաններում, երբ էֆեկտիվ կերպով զուգակցվում են նրանց ներքին և արտաքին ռեսուրսները, ավելի մեծ չափով են հաշվի առնվում տնտեսական արդյունավետության, շահութաբերության մոմենտները:

Միջազգային նշանակություն ունի նաև մեր երկրում գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման փորձը: Այստեղ էլ հիմնական սկզբունքներն օգտագործվում են ստեղծագործաբար: Սխալվում են նրանք, ովքեր անտեսելով մեր երկրի յուրահատուկ պայմանները, խոսում են կոլեկտիվացման սկզբունքների մասին առհասարակ, խիստ ուռճացնում մեզ մոտ տեղ գտած թերություններն ու սխալները, ամեն ինչ սխալ են համարում:

Ի՞նչ առանձնահատկություններ ուներ գյուղատնտեսության կոոպերացումը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում: 1. Կոոպերացումն այնտեղ իրականացվեց հողի մեծ մասի մասնավոր սեփականության առկայության պայմաններում, մի հանգամանք, որն, անշուշտ, կապված է որոշ դժվարությունների հետ, գյուղացիների մոտ ուժեղացնում է մանրբուրժուական սեփականատիրական ձգտումներ: 2. Եկամտի բաշխումը կատարվեց ոչ միայն ըստ աշխատանքի, այլև ըստ ներդրած հողաբաժինների: 3. Կոոպերացումը բերեց կոոպերատիվների ձևերի մեծ բազմազանություն: 4. Կոոպերացումը իրականացվեց ավելի հանգիստ պայմաններում, առանց ավելորդ շտապողականության, առանց դասակարգային պայքարի շատ սրման:



digitised by A.R.A.R.@

Մի շարք երկրներում կոոպերացումն իրականացրին ունենալով ավելի մեծ
տեխնիկական բազա: 5. Այդ երկրների կուլակության մեծամասնությունը,
որպես կանոն, չսեփականազրկվեց. կուլակության սահմանափակման քաղա-
քականությունը չվերածվեց նրա համընդհանուր սեփականազրկման: Կուլա-
կային տարրերը որոշակի պայմաններում հնարավորություն ստացան մըտ-
նելու կոոպերատիվ տնտեսությունները (Հունգարիա, ԳԴՀ, Չինաստան, Ռու-
մինիա, ՉՍՍՀ) և խաղաղ մեթոդներով վերադաստիարակվելու:
Ժողովրդական դեմոկրատիայի երկրները օգտագործել և օգտագործում
են ՍՄԿԿ-ի փորձը նաև կուլտուրական հեղափոխություն իրականացնելու
բնագավառում: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումով սկըս-
վեց համաշխարհային սոցիալիստական կուլտուրական հեղափոխության երկ-
րորդ էտապը, որն ընդգրկեց ժողովրդա-դեմոկրատական բոլոր պետություն-
ները: Նրանց փորձը մի անգամ ևս ցույց տվեց, որ կուլտուրական հեղա-
փոխությունը հանդիսանում է սոցիալիստական հեղափոխության օրգանա-
կան մասը, առանց որի հնարավոր չէ սոցիալիզմ կառուցել:
Այդ երկրներում կուլտուրական հեղափոխության առանձնահատկություն-
ները կապված են ներքին և արտաքին նպաստավոր պայմանների առկայու-
թյան հետ: Սովետական երկիրը նրանց զգալի օգնություն է ցույց տալիս իր
փորձով, կադրերով, միջոցներով: Նոր պայմաններում հին ինտելիգենցիայի
վերափոխումը և նորի ստեղծումը համեմատաբար հեշտ է կատարվում,
որովհետև դասակարգային պայքարն այդ երկրներում անցման շրջանում
այնպես սուր չէր, ինչպես մեր երկրում: Սակայն այնտեղ էլ կան դժվարու-
թյուններ, թույլ են տրվում սխալներ: Կուլտուրական հեղափոխության հետ
ընդհանուր ոչինչ չունի Չինաստանում 1966 թվականի աշնանից ծավալված
այսպես կոչված «կուլտուրական մեծ հեղափոխությունը»: Կուլտուրական
հեղափոխության լուծած խնդիրների մասշտաբները տարբեր են՝ երկրների
տարբեր խմբերի համար: Ավելի մեծ մասշտաբներ և ավելի դժվար խնդիր-
ներ են լուծվում Ասիայի սոցիալիստական երկրներում:
Շատ ուսանելի է նաև ՍՄԿԿ փորձը ազգային հարցի լուծման և բազմազգ
պետության ստեղծման բնագավառում: Մեր երկրի օրինակով առաջին ան-
գամ գործնականում ապացուցվեց, որ միայն սոցիալիզմն է ստեղծում բոլոր
հնարավորություններն ու պայմանները ոչնչացնելու ազգային ճնշման բոլոր
ձևերը, ազատ ու իրավահավասար ազգերին և ազգություններին կամովին
միավորելու միասնական պետության մեջ: Սոցիալիզմի հաղթանակն է ապա-
հովում ժողովուրդների իսկական բարեկամությունը, եղբայրական փոխօգ-
նությունը, ազգերի իսկական ծաղկումն ու մերձեցումը:
Համաշխարհային սոցիալիզմի զարգացումն այժմ իր տրամադրության
տակ ունի ոչ միայն Սովետական Միության, այլև ժողովրդական դեմոկրա-
տիայի երկրների փորձը: Մենք նկատի ունենք մասնավորապես արդյունա-
բերական տեսակետից զարգացած երկրներում (Չեխոսլովակիա, Գերմանա-
կան Դեմոկրատական Հանրապետություն) սոցիալիստական հեղափոխության
և սոցիալիզմի կառուցման փորձը: Այդ երկրները ցույց տվին, որ էկոնոմի-
կան և կուլտուրան բարձր տեմպերով են զարգանում ոչ միայն նախկինում
հետամնաց, այլև զարգացած երկրներում: Այնուհետև, նկատի ունենք նախ-
կինում թույլ զարգացած մի շարք երկրների՝ սոցիալիզմին անցնելու փորձը
զարգացման կապիտալիստական ստադիան շրջանցելով: Ասիայի սոցիա-
լիստական երկրները ապացուցեցին նոր պայմաններում սոցիալիզմին անց-



նելու հնարավորությունը անկախ նրանց զարգացման մակարդակից:
Սոցիալիստական հեղափոխությունը Կուբայում հերքեց բոլոր այն դոգ-
մատիկական պնդումները, ըստ որոնց սոցիալիստական հեղափոխություններն
անհնարին են առանց համաշխարհային պատերազմների առաջ բերած ճըգ-
նաժամի: Եթե պատմականորեն այնպես է ստացվել, որ անցած երկու հա-
մաշխարհային պատերազմները ավարտվեցին սոցիալիստական հեղափոխու-
թյուններով, ապա այժմ այդպիսի հեղափոխություններ միանգամայն հնա-
րավոր են առանց համաշխարհային պատերազմների:
Այժմ սոցիալիստական երկրներն օգտագործում են ոչ միայն մեր, այլև
մյուս երկրների փորձը, ստանում են ոչ միայն մեր օգնությունը, այլև օգնում
են մեզ, օգնում իրար: Սոցիալիստական երկրներն, օրինակ, արդյունաբերու-
թյան բնագավառում օգտագործում են Չեխոսլովակիայի և ԳԴՀ-ի փորձը մե-
քենաշինության և քիմիական արդյունաբերության գծով, Լեհաստանի փորձը
լեռնահանքային արդյունաբերության, նավաշինության և վագոնաշինության
գծով, Հունգարիայինը՝ թույլ հոսանքի էլեկտրատեխնիկայի և թեթև արդյու-
նաբերության գծով, Ռումինիայինը՝ նավթարդյունաբերության, Բուլղարիայի-
նը՝ գունավոր մետալուրգիայի և սննդարդյունաբերության գծով և այլն:
Բազմակողմանի համագործակցությունը, եղբայրական անշահախնդիր
փոխօգնությունը, նոր կյանքի կառուցման փորձի փոխանակումը սոցիալիս-
տական երկրների միջև հաստատված նոր տիպի փոխհարաբերությունների
բնորոշ գծերից են: Ապագայում հեղափոխական վերափոխումների և սոցիա-
լիզմի կառուցման ձևերի, մեթոդների և տեմպերի բազմազանությունն է՛լ
ավելի կաճի: Սակայն բոլոր այդ յուրօրինակություններով հանդերձ սոցիա-
լիզմի երկրները ընթանում են ընդհանուր ուղիով, միասնական ճակատով:
Մարքսիզմ-լենինիզմը անպայման ենթադրում է սոցիալիստական հեղա-
փոխության և սոցիալիզմի կառուցման գործում առանձին երկրների պատմա-
կան և ազգային առանձնահատկությունների հաշվառում: Սակայն նա դեմ է
դրանց գերագնահատմանն ու ուռճացմանը, որոնք տանում են դեպի հեռա-
ցում ընդունված և ստուգված ընդհանուր օրինաչափություններից, սոցիալիս-
տական ինտերնացիոնալիզմից, մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներից:



digitised by A.R.A.R.@

# ՄԱՍՆԱԳԵՏ ԿԱԴՐԵՐԻ ԱՌԱՋԻՆ ԴԱՐԲՆՈՑԸ

Հ. ՊՈՂՈՍՅԱՆ

Տարբեր դարերում ու ժամանակներում հայ իրականության մեջ գործել են զանազան կրթական հաստատություններ, որոնցից շատերն իրենց ժամանակին արժանացել են մեծ ճանաչման ու համբավի: Անիի, Գլաձորի, Տաթևի, Սանահինի միջնադարյան համալսարանների գոյության փաստը միայն վառ ապացույցն է հայ ժողովրդի՝ գիտության ու կրթության անհագ տենչի:

Հայկական կրթական կյանքի համար համեմատաբար բարենպաստ պայմաններ ստեղծվեցին XIX դարում, երբ Արևելյան Հայաստանը 1928 թվականին ազատագրվեց պարսկական լծից, անցավ ռուսական տիրապետության տակ, ձեռք բերելով շատ թե քիչ բարվոք վիճակ: Ստեղծվեցին նոր դպրոցներ, որոնցից հայ երիտասարդների կրթության գործում հատկապես երախտաշատ գործ կատարեցին Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը, Մոսկվայի Լազարյան և Էջմիածնի Գևորգյան ճեմարանները:

XIX դարում հայ առաջավոր մտավորականությունն առաջ էր քաշում մասնագիտական կրթության հարցը: Մեծ լուսավորիչ, հեղափոխական-դեմոկրատ Մ. Նալբանդյանը գտնում էր, որ «Մեր ազգին ուսման և լուսավորության հետքից (այսինքն՝ հանրակրթական դպրոցից հետո— Հ. Պ.) հարկավոր է տալ և կանոնավոր տնտեսական, գյուղական ու վաճառական գիտություն, որպեսզի հաստատ հիմքերի վերա կանգնի նորա թե երկրագործությունը և թե վաճառականությունը»:

Սակայն, Մ. Նալբանդյանի և նրա ժամանակի առաջավոր մտավորականության այդ ձգտումները չէին կարող արժանանալ ցարական իշխանությունների համակրանքին. նրանց համար ձեռնտու էին ժողովրդի և, հատկապես, ծայրամասերի ազգերի և ժողովուրդների տգիտությունն ու հետամնացությունը: Հասկանալի է, որ ցարական տիրապետության պայմաններում մասնագիտական ուսումնական հաստատություններ ստեղծելու ուղղությամբ ժողովրդի ու նրա լավագույն զավակների ոչ մի նախաձեռնություն հաջողությամբ պսակվել չէր կարող:

Դա տեղի ունեցավ միայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո: Հոկտեմբերով ծնունդ առավ կուլտուրական հեղափոխությունը, որի առաջին քայլը հայ իրականության մեջ Երևանի ժողովրդական համալսարանի հիմնադրումն էր: Նոր կարգերի հաստատումից ընդամենը մեկ ամիս անց, տնտեսական ու քաղաքական անասելի ծանր պայմաններում համալսարան հիմնադրելը, իրոք, խիզախություն էր: Բայց այդ միայն սկիզբն էր:

Հայաստանի սովետների առաջին համագումարում տված իր հաշվետու զեկուցման մեջ Ալ. Մյասնիկյանը գտնում էր, որ տնտեսական խնդիրների լուծման հետ միասին պետք է զբաղվել նաև երկրի լուսավորության գործով. «...մեր հաղթությունը կրթությունից, գիտությունից և դաստիարակությունից է կախված»,— ասում էր նա:

Հանրապետության ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետ մեկտեղ մեծանում էր մասնագետ կադրերի պահանջը: Եվ, ահա,



1921—1925 թվականներին հայ իրականության մեջ երևան եկան առաջին միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները, օգտագործելով նախկինում եղած արհեստավորական, առևտրական և ռեալական դպրոցների փորձը:

Միջնակարգ մասնագիտական անդրանիկ հաստատությունը մայրաքաղաքի գեղարվեստական ուսումնարանն էր, որը հիմնադրվեց 1921 թվականի սեպտեմբերի 1-ին, սակայն որոշ պատճառներով այնտեղ պարապմունքներն սկսվեցին 1922 թվականի փետրվարից: Այն սկզբում կոչվում էր Երևանի գեղարվեստական, իսկ որոշ ժամանակ անց՝ գեղարվեստական-տեխնիկական դպրոց: Նրա հիմնադիրն էր հանրահռչակ նկարիչ Մարտիրոս Սարյանը: Մամուլում հրապարակված նրա առաջին հայտարարությունից երևում է, որ դպրոցը պետք է ունենար նկարչական, ճարտարապետական, քանդակագործական, բրուտային, ջուլհակային և գրանիտի բաժիններ: Դժվարին էին ուսուցման առաջին տարիները ինչպես սովորողների, այնպես էլ ուսուցիչների համար: Չկար անհրաժեշտ նյութատեխնիկական բազա և, չնայած այդ ամենին, 1923 թվականին արդեն բացվում է դպրոցի աշակերտների ցուցահանդեսը, որի կապակցությամբ Մարտիրոս Սարյանը «Խորհրդային Հայաստան» թերթի թղթակցին ասում է. «Դպրոցը պետք է կազմակերպված լինի այնքան նպատակահարմար հիմունքներով, որ աշակերտները (մեծ մասամբ որբեր) իրենց ուսումնական շրջանում կարողանան ձեռք բերել գործնական արվեստների գիտություն, որով հնարավորություն ունենան իրենց սովորածն իսկույն կիրառել երկրի շինարարության և, մասնավորապես, ճարտարարվեստի արտադրողական գործերում...» («Խորհրդային Հայաստան», № 135, 24 հունիսի, 1923 թ.):

Ծանոթանալով այս գրույցին, իմանում ենք, որ սկզբնական շրջանում հարկ է եղել մշակել ուսումնական ծրագրեր, ստեղծել անհրաժեշտ արհեստանոց-արվեստանոցներ և առաջ տանել սովորողների ուսուցման գործը: 1923 թվականի հունիսին դպրոցին կից գոյություն ուներ ոսկերչանոց և բրուտանոց: Նախատեսվում էր ստեղծել յուղանկարչության, դեկորատիվ նկարչության և քանդակագործության, վիմագրության և ցինկոգրաֆիայի արհեստանոցներ: Սակայն միջոցները շատ սուղ էին:

Չնայած մեծ դժվարություններին, դպրոցը 1924 թվականի մայիսին արդեն ուներ չորս արհեստանոց: Այնտեղ դասավանդվում էին գծագրություն, նկարչություն և անդրիագործություն: 1924 թվականի առաջին ամիսներին այստեղ մշակվեցին դպրոցը վերակազմելու նախագիծն ու ծրագրերը, որոնք ներկայացվեցին լուսժողկոմատի հաստատությանը: Ծրագրերի մշակման հարցը իրագործվում էր մի հանձնաժողովի միջոցով, որի նախագահն էր ակադեմիկոս Ալ. Թամանյանը. նրա բաղձանքն էր՝ այս ուսումնական հաստատության բազայի վրա ստեղծել արվեստի բարձրագույն դպրոց: Ըստ նախագծի դպրոցը պետք է ունենար 3 աստիճան՝ ստորին, միջին և բարձր: Այդ ժամանակ դպրոցում արդեն սովորում էին 180 հոգի, դասատուներն էին՝ 6 նկարիչ, 2 արձանագործ և 5 վարպետ: Նույն թվականին հիմնադրվեց նաև Ռ. Մելիքյանի անվան Երևանի երաժշտական ուսումնարանը, որը մինչև 1938—39 ուս. տարին գործում էր Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիային կից:

1921 թվականին Սովետական Հայաստանի անդրանիկ լուսժողկոմ Աշ. Հովհաննիսյանի հրավերով Թիֆլիսից Երևան է ժամանում հայ ականավոր կոմպոզիտոր Ռոմանոս Մելիքյանը, իսկ նույն թվականի դեկտեմբերի 22-ին հիմնադրվում է Երևանի երաժշտական ստուդիան: Այդ ուսումնական հաստատությունը, որի նպատակն էր՝ ժողովրդական մասսաներին ծանոթացնել անցյալի մեր երաժշտությանը և պատրաստել երաժշտական կադրեր, դարձավ հայկական կոնսերվատորիայի հիմքը:

Առաջին ուսումնական տարվա վերջին ստուդիայի ղեկավարությունը դիմում է արհմիութենական ղեկավար մարմիններին, կարմիր բանակի հրամանատարությանը, մանկատներին և խնդրում ստուդիա ուղարկել քիչ թե շատ երաժշտական հակում ունեցող երիտասարդների: Շուտով հավաքվում է 558 դիմում, 1922 թվականի վերջին քննություններ են հանձնում ինչպես նոր



digitised by A.R.A.R.@

դիմողները, այնպես էլ նախորդ տարում ընդունված 80 սովորողները: Ստուդիա են ընդունվում 120 հոգի: 1923 թվականի նոյեմբերի 29-ին, Հայաստանում սովետական կարգերի հաստատման երրորդ տարեդարձի օրը ստուդիայի բազայի վրա բացվեց մեր հանրապետության երկրորդ բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ Երևանի կոնսերվատորիան:

Երևանի առաջին տեխնիկական թեքում ունեցող ինդուստրիալ տեխնիկումը բացվեց Ֆիրդուսի փողոցի № 29 տան ներքնահարկում: Երկրի արդյունաբերությանը տեխնիկներ տվող այդ առաջին ուսումնական հաստատությունը ծնվեց առանց տարրական նյութատեխնիկական հարմարությունների. այն ո՛չ հմուտ մասնագետ ուներ, ո՛չ դասագրքեր, ո՛չ հարմարավետ շենք և ոչ էլ անհրաժեշտ գրենական պիտույքներ: Ամեն ինչ ստեղծվեց բաց տեղում, կարիքի ու զրկանքների պայմաններում, ջանքերի մեծ լարումով ու տքնանքով:

Բացի հանրակրթական առարկաներից, այստեղ արդեն 1924 թվականին առաջին կուրսում անցնում էին գծագրական երկրաչափություն, շինարարական արվեստ, երկրորդում՝ մեքենագիտություն, նյութերի դիմադրություն, քիմիա, գեոդեզիա, էլեկտրատեխնիկա: Բոլոր առարկաներն ավանդվում էին մայրենի լեզվով: Արտադրական պրակտիկան 1924 թվականին անց էր կացվում Հիդրոշինում, Գրախտում, խճուղիների վարչությունում և Երևանի գավգործկոմի տրամադրության տակ եղած հիմնարկ-ձեռնարկություններում:

Տեխնիկումի երկու բաժիններում կադրեր էին պատրաստվում քաղաքացիական կառուցվածքների, ճանապարհների, ջրատեխնիկական կառուցվածքների, ուժեղ հոսանքի, էլեկտրական լույս և շարժիչ ուժ մատակարարող էլեկտրակայանների մասնագիտությունների գծով:

Այդ տարիներին միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ հիմնվեցին նաև հանրապետության այլ քաղաքներում ու շրջաններում: Այսպես, 1922 թվականին Լենինականում հիմնադրվեց ինդուստրիալ տեխնիկումը, որի դաշտավարական բաժնի հիման վրա 1924 թվականին ստեղծվեց դաշտավարական տեխնիկումը, որը գործում է մինչև օրս:

Հանրապետության գյուղատնտեսությունն ու նրա կարևոր ճյուղերը մասնագետներով ապահովելու նպատակով ստեղծվեցին մի շարք գյուղատնտեսական ուսումնական հաստատություններ: 1924 թվականին Նոր Բայազետում հիմնադրվեց կաթնա-տնտեսական տեխնիկումը (այժմ անասնաբուծական-անասնաբուժական), իսկ Ղարաքիլիսայում՝ գյուղատնտեսական տեխնիկումը: Հանրապետության մի շարք շրջաններում ստեղծվեցին նաև գյուղատնտեսական դպրոցներ:

Վերը նշված տարիներին մեր հանրապետությունում արագ թափով ծավալվեցին առևտուրն ու ապրանքաշրջանառությունը: Զգացվում էր համապատասխան կադրերի պահանջ: Եվ ահա 1926 թվականին բացվեց Հայկոոպի Երևանի կոոպերատիվ տեխնիկումը:

Այդ տարիներին հիմնադրվեցին նաև Երևանի և Լենինականի մանկավարժական ուսումնարանները, որոնցից վերջինը գործում է մինչև այսօր և իր գոյության 45 տարիների ընթացքում տվել է ավելի քան 3000 շրջանավարտ:

Ժամանակի երիտասարդությունը և, հատկապես, գյուղականը, խտացնում էր միջնակարգ մասնագիտական հաստատությունների ուսանողության շարքերը: Նրանց ոգևորում էր Ալ. Մյասնիկյանի՝ «Ավանգարդ» թերթում տպված հետևյալ խորհուրդը. «Գյուղում կինը տակավին քնած է: Տարիքավոր տղամարդը հաճախ ենթակա է ծերերին կամ գնում է ծերերի ճանապարհով: Ծերերը անցյալի բեկորներն են: Կան ջահելներ, երիտասարդներ: Նրանք են, որ կերպարանափոխելու են այսօրվա գյուղը: Կոմունիստական երիտասարդությունը գյուղում պետք է լինի հեղաշրջիչ ուժ»:

Մի քանի տարի տևող իմպերիալիստական պատերազմը, ապա դաշնակների տիրապետության ժամանակաշրջանը, աղքատությունը, տառապանքը և երկրի քայքայվածությունը ամեն ինչի վրա դրել էին իրենց խոր դրոշմը: Չնայած դրան, 1921—26 թվականներին Հայաստանի ծանր տնտեսական պայմաններում ստեղծվեցին մի շարք տեխնիկումներ և ուսումնարաններ: Այսպես՝ 1926 թվականին հանրապետությունում կային 2 գյուղատնտեսական, 1



կոոպերատիվ, 2 ինդուստրիալ, 5 մանկավարժական, 5 պրոֆտեխնիկական մասնագիտական հաստատություններ (ընդամենը 15):

Մեր երկրի առաջընթացին զուգընթաց աճում էր կադրերի պահանջը, որը բավարարելու նպատակով 1926—35 թվականներին, տասը տարվա ընթացքում, հանրապետությունում բացվեցին մի շարք նոր տեխնիկումներ և ուսումնարաններ:

1927 թվականին բացվեց Երևանի բժշկական ուսումնարանը, որը մինչև 1936 թվականը գործում էր բժշկական ինստիտուտին կից: Հանրապետությանն այն տվել է 9006 բուժքույր, բուժակներ, ատամնատեխնիկներ, ատամնաբույժներ, բուժլաբորանտներ, սանբուժակներ, մանկական բուժքույրեր, դեղագործներ և մանկաբարձներ: Վերջին 5—7 տարում ուսումնարանն իր ֆիլիալներն ստեղծեց Դիլիջանում, Ղափանում, Բասարգեչարում և Եղեգնաձորում, որոնցից առաջին երեքն այժմ գործում են որպես ինքնուրույն ուսումնարաններ:

Գյուղատնտեսության կոոպերացումն ու կոլեկտիվացումն առաջադրեցին միջին որակի նոր մասնագետների պահանջ: Բացվեցին մի շարք նոր ուսումնական հաստատություններ. 1927 թվականին Երևանում հիմնվեց ադրբեջանական գյուղատնտեսական տեխնիկումը, 1928-ին Ստեփանավանում, 1930 թվականին Երևանում ստեղծվեցին գյուղմեքենայացման, էլեկտրիֆիկացիայի (այժմ Լուսակերտի սովխոզ-տեխնիկում), Հոկտեմբերյանի (այժմ սովխոզ-տեխնիկում) և Գորիսի գյուղատնտեսական տեխնիկումները:

1929 թվականին սկսեցին գործել Երևանի հիդրոմելիորատիվ, 1932-ին՝ առևտրա-տնտեսագիտական տեխնիկումները. վերջինը հետագայում ընդգրկեց 1929 թվականից գոյություն ունեցող ֆինանսական տեխնիկումը: 1929 թվականին ստեղծվեց Երևանի լեռնա-մետալուրգիական տեխնիկումը, որը 1950-ական թվականների վերջերին տեղափոխվեց Ղափան: 1930 թվականին, Հայաստանում սովետական կարգերի հաստատման 10-ամյակին, բացվեց անդրկովկասյան քրդական մանկավարժական տեխնիկումը, որը ծավալուն աշխատանք տարավ քուրդ մանկավարժների պատրաստման գործում:

1930 թվականին, ընդամենը 10 տարվա ընթացքում, Հայաստանում ստեղծվեցին 46 միջնակարգ ուսումնական հաստատություններ՝ 5000 սովորողով: Այդ ժամանակ սույն հաստատություններն ամեն տարի հանրապետությանը տալիս էին 1000-ից ավելի շրջանավարտ: Իսկ եղած ութ բուհերում կային 2800 ուսանող:

Մինչև Հայրենական մեծ պատերազմը մեր հանրապետությունում արդեն կային 62 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն՝ 8559 սովորողով: Ներկայիս տեխնիկումների և ուսումնարանների հետ համեմատած, սովորողների թվով դրանք անհամեմատ փոքր էին: Եթե այժմ ունենք տեխնիկումներ, որտեղ սովորողների թիվը 2000-ից ավելի է, ապա այն ժամանակվա միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններից յուրաքանչյուրում միջին հաշվով սովորում էին 144 հոգի: Չնայած այդ բանին, դրանք մեծ դեր խաղացին հանրապետության ժողովրդական տնտեսությունը միջին մասնագիտական որակավորում ունեցող կադրերով ապահովելու գործում:

Հայրենական պատերազմի տարիներին միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների թիվը, բնականաբար, կրճատվեց, իսկ երբ ավարտվեց պատերազմը, և երկիրը վերստին լծվեց խաղաղ ստեղծագործական աշխատանքի, կրկին զգացվեց մեծ թվով նոր կադրերի պահանջ: 1945 թվականին Երևանի Ֆ. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի բազայի վրա հիմնադրվեց մեքենաշինական, իսկ 1952-ին՝ Լենինականի տեքստիլ կոմբինատի բազայի վրա՝ Լենինականի թեթև արդյունաբերության (տեքստիլ) տեխնիկումը:

1955—56 ուսումնական տարում միջնակարգ մասնագիտական հաստատությունների թիվը հասավ 45-ի՝ 17055 սովորողով:

Բուռն վերելք ապրեցին հանրապետության միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններն անցած յոթնամյակում: Այժմ ունենք 52



digitised by A.R.A.R.@

տեխնիկում և ուսումնարան, ավելի քան 37000 սովորողով։ Յուրաքանչյուր 10000 բնակչին ընկնում է միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ավելի քան 160, իսկ բուհերի՝ ավելի քան 195 ուսանող։

Ինչպես տեսնում ենք, բուհերի ուսանողության թիվը մեզ մոտ գերազանցում է տեխնիկումներում սովորողների թվին։ Այնինչ պետք է հակառակը լինի, քանի որ ժողովրդական տնտեսության մեջ յուրաքանչյուր բարձրագույն կրթությամբ մասնագետի դիմաց անհրաժեշտ են երեք-չորս միջին մասնագիտական կրթություն ունեցողներ։ Վերջին տարիներին միջոցներ են ձեռնարկվել նման համամասնություն ստեղծելու համար։

1966—67 ուսումնական տարում մեր հանրապետության տարբեր շրջաններում բացվեցին ութ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ։ Ինդուստրիալ տեխնիկումներ ստեղծվեցին Արարատում, Արթիկում, Ալավերդում, Հրազդանում և Սևանում։ Բացվեցին Բասարգեչարի բժշկական, Գորիսի մանկավարժական և Ղափանի երաժշտական ուսումնարանները։

Նախատեսվում է ընդլայնել տեխնիկումների և ուսումնարանների նյութատեխնիկական բազան, կառուցել ուսումնական շենքեր ու հանրակացարաններ։ 1967 թվականի ընթացքում նոր շենք ստացավ Լենինականի մանկավարժական ուսումնարանը, կավարտվի Երևանի երաժշտական, ռուսական մանկավարժական ուսումնարանների և Լենինականի հաստոցագործիքային տեխնիկումի կորպուսների ու թեթև արդյունաբերության տեխնիկումի 4-րդ հարկի շինարարությունը։ Երևանում կսկսվի մաթեմատիկական հաշվիչ մեքենաների և ռադիոէլեկտրակապի տեխնիկումների շենքերի կառուցումը։ Առաջիկայում նոր շենքեր կկառուցվեն Լենինականում, Կիրովականում և Բասարգեչարում։ Այս տարի կսկսվի Արարատի, Սևանի, Հրազդանի, Ալավերդու տեխնիկումների 300-տեղանոց հանրակացարանների շինարարությունը և այլն։

Մեր հանրապետության տեխնիկումներն ու ուսումնարանները կադրեր են պատրաստում Սովետական Միության գործող 460 մասնագիտություններից 135-ի գծով։

Միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում աշխատում են 1827 դասատու, որոնցից 1658-ը ունեն բարձրագույն, փոքր մասը՝ թերի բարձրագույն, շատ քչերը միջնակարգ մասնագիտական կրթություն։ Բոլոր տեխնիկումների դիրեկտորները, ուսմասվարները, բաժնի վարիչները և մեթոդիստները ունեն բարձրագույն կրթություն։

Պետք է նշել մի ուրախալի երևույթ։ Եթե 10—15 տարի առաջ միջնակարգ մասնագիտական հաստատությունները մայրաքաղաքում անհամեմատ մեծ թիվ էին կազմում, ապա այժմ տեխնիկումների և ուսումնարանների ճնշող մեծամասնությունը տեղավորված է հանրապետության մյուս քաղաքներում ու շրջաններում։ Այս հանգամանքն ավելի է հեշտացնում այդ վայրերում կադրերի պատրաստման գործը, քանի որ ուսումնական հաստատությունը արտադրությանը մոտիկ է գտնվում։

1966—70 թթ. ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի համաձայն նախատեսված է զգալի չափով ընդլայնել տեխնիկումների ու ուսումնարանների ցանցը։ 5 տարվա ընթացքում մեր հանրապետությունում բացվելու է 14 ուսումնական նոր օջախ։

Ամեն տարի միջնակարգ մասնագիտական հաստատությունները երկրին տալիս են մի քանի հազար շրջանավարտ։ Այսպես՝ 1964 թվականին շրջանավարտների թիվը կազմեց 3400 հոգի, որոնցից ցերեկային բաժիններն ավարտեցին 2100, երեկոյան ու հեռակա բաժինները՝ 1300 հոգի։ Այդ թվականին երեկոյան և հեռակա բաժինների շրջանավարտները կազմել են ընդհանուր շրջանավարտների 38,2 տոկոսը։ 1966 թվականին նրանց թիվը հասավ 5200-ի (2600-ը ցերեկային, 2600-ը հեռակա և երեկոյան բաժինները)։ Նրանցից շատերն իրենց արժանավոր լուման են ներդնում հանրապետության արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի բնագավառներում, դարձել են հանրապետության ճանաչված մասնագետներ, սոցիալիստական աշխատանքի հերոսներ, տաղանդավոր գիտնականներ, արվեստի, կուսակցա-



կան, սովետական ղեկավար աշխատողներ։ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոսներ Ա. Լ. Շահինյանը և Ն. Խ. Հարությունյանը Երևանի ինդուստրիալ տեխնիկումի շրջանավարտներից են, իսկ ակադեմիկոս Ա. Ա. Բաբաջանյանն ավարտել է Երևանի երաժշտական ուսումնարանը։

Վերջին տարիներին մեր հանրապետության տեխնիկումներում և ուսումնարաններում ուսանում են նաև սփյուռքահայ երիտասարդները։ Կյանքը զարմանալիորեն փոխվել է. եթե մի ժամանակ մայր հայրենիքի զավակները երազում էին կրթություն ստանալ եվրոպական և ռուսական ուսումնական հաստատություններում, ապա այժմ հակառակն է։ Աշխարհի տարբեր ծայրերից հայ երեխաների հայացքն ուղղված է Երևանի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատությունները։

ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը վերջին մի քանի տարիներին զգալի աշխատանք է տարել տեխնիկումներում և ուսումնարաններում սովորողների ուսման ու դաստիարակության գործը բարելավելու նպատակով։ Անհրաժեշտ էր բարձրացնել այնտեղ ավանդող դասատուների որակավորումը, մանկավարժական վարպետությունը, մանավանդ մեր ուսումնական հաստատություններում աշխատող դասատուների ճնշող մեծամասնությունը չունի մանկավարժական կրթություն։ Նրանց մանկավարժական գիտելիքներով զինելու համար հաճախակի կազմակերպվում են փորձի փոխանակում՝ մեր երկրի լավագույն ուսումնական հաստատությունների հետ, թեմատիկ սեմինարներ, խորհրդակցություններ...

Երևանում գիտա-մեթոդական կաբինետին կից գործում են 17 մեթոդական միավորումներ և առարկայական սեկցիաներ, կազմակերպվում սեմինարներ, դասախոսություններ, էքսկուրսիաներ, բաց դասեր։ Դասատուներին և դասղեկներին օգնելու նպատակով վերջին երեք տարիներին հրատարակվել են զգալի թվով ուսումնա-մեթոդական գրքեր։

Մի շարք միջնակարգ մասնագիտական հաստատություններում գործող սեմինարներում ուսումնասիրվում են մարքս-լենինյան թեորիայի, գիտական կոմունիզմի հետ կապված պրոբլեմներ, ընթացիկ մոմենտի, Սովետական Միության արտաքին և ներքին քաղաքականության, ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հարցերը։

Այդ հաստատությունների մանկավարժական կոլեկտիվները սիստեմատիկաբար զբաղվում են սովորողների կոմունիստական դաստիարակությամբ։ Այս տեսակետից լավագույն օրինակներ կան Երևանի քիմիկո-տեխնոլոգիական, ավտո-ճանապարհային, Երևանի և Լենինականի բժշկական ուսումնարանների, Կիրովականի սարքաշինական տեխնիկումում և այլուր։

Տեխնիկումների և ուսումնարանների ճնշող մեծամասնությունը ամեն ինչ անում է ինտերնացիոնալ կապերի ամրապնդման համար։ Այդպիսի կապեր են ստեղծվել Մոսկվայի, Կիևի, Օդեսայի, Ռիգայի, Կաունասի, Թբիլիսիի, Բաքվի, Սումգայիթի, Վիլնյուսի և այլ վայրերի ուսումնական հաստատությունների հետ։ Այդ տեսակետից հիշարժան է Երևանի շինարարական տեխնիկումում ստեղծված ինտերնացիոնալ ակումբի լավագույն աշխատանքը։

Հայկական ՍՍՀ-ում միջնակարգ մասնագիտական կրթության ասպարեզում ձեռք բերված նվաճումները մեր կուսակցության և սովետական կառավարության մշտական հոգատարության արդյունք են։ ՍՄԿԿ XXIII համագումարը լուրջ և կարևոր խնդիրներ է դրել ժողովրդական կրթության աշխատողների առաջ, որոնց լուծմանը ձեռնամուխ են եղել միջնակարգ մասնագիտական հաստատությունների կոլեկտիվները՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակը արժանավայել դիմավորելու վճռականությամբ։

digitised by A.R.A.R.@

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Արամուս գյուղի կոլտնտեսությունը Աբովյանի շրջանի առաջավոր տնտեսություններից է: Վերջին տարիներին, հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումներից հետո, կոլտնտեսությունն ինչպես արտադրանքի ծավալով, այնպես էլ ըստ տեսակների սիստեմատիկորեն կատարում և գերակատարում է գյուղատնտեսական մթերքների արտադրության և վաճառքի պլանները: Այսպես, 1966 թվականին նա հացահատիկի բերքատվության պլանը կատարեց 150, ծխախոտինը՝ 135, բանջարեղենինը՝ 168, կերային կուլտուրաներինը՝ 125 տոկոսով: Կատարվել են նաև հանրային անասունների գլխաքանակի ավելացման ու նրանց մթերատվության բարձրացման պլանները: Պլանային 1120 ցենտների փոխարեն պետությանն է վաճառվել 1530 ցենտներ հացահատիկ և 1500-ի փոխարեն՝ 2590 ցենտներ ծխախոտի հումք:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը նպաստել է դրամական եկամտի աճին, կոլտնտեսության էկոնոմիկայի ամրապնդմանը և կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացմանը:

1966 թվականին կոլտնտեսության դրամական եկամուտները պլանով նախատեսված 340,0 հազար ռուբլու փոխարեն կազմեցին 400,0 հազար ռուբլի, մեկ աշխօրի արժեքը՝ 3 ռուբլի 44 կոպեկ:

Արամուսցիներն այս հաջողությունները ձեռք են բերել կոլտնտեսության կուսկազմակերպության ամենօրյա ղեկավարությամբ ու օգնությամբ:

Արամուսի կոլտնտեսության հաջողությունները պայմանավորված են կադրերի հաջող ընտրությամբ: Այստեղ կուսկազմակերպության բյուրոյի քարտուղարը Ա. Հովհաննիսյանն է, որը միաժամանակ կոլտնտեսության ագրոնոմն է. նա ունի գյուղատնտեսական բարձրագույն կրթություն, լավ գիտի արտադրության էկոնոմիկան և տեխնոլոգիան: Կուսբյուրոյի քարտուղարը հմտորեն է գլխավորում 41 կոմունիստից բաղկացած կուսակցական կոլեկտիվի գործունեությունը, իր ամենօրյա աշխատանքում հենվում է գյուղի անկուսակցական լայն ակտիվի օգնության վրա:

Վատ չի աշխատում նաև կոլտնտեսության վարչության նախագահ Վ. Պապյանը, որը նույնպես գյուղատնտեսության մասնագետ է, արտադրության լավ կազմակերպիչ: Վ. Պապյանը որպես կոմունիստ մասնակցում է կուսկազմակերպության աշխատանքին, հաշվի նստում նրա կարծիքի հետ, տնտեսական հարցերը լուծելիս հենվում կուսկազմակերպության, կոմունիստների և ամբողջ ակտիվի վրա:

Կոլտնտեսության արտադրական բոլոր տեղամասերը հմուտ ձեռքերում են: Իսկ դա շատ կարևոր է. չէ՛ որ, վերջին հաշվով, ուղած գործի հաջողությունը մարդկանցից է կախված:



Այստեղ կոլտնտեսության կուսկազմակերպությունը հմտորեն է իրականացնում կոլտնտեսության վարչության գործունեությունը վերահսկելու իր կանոնադրական իրավունքը: Նա կուսբյուրոյի նիստերում, կոմունիստների ժողովներում սիստեմատիկորեն լսում է բրիգադավարների, ֆերմայի վարիչների, գյուղատնտեսության առանձին մասնագետների, կոլտնտեսության վարչության նախագահի զեկուցումներն ու ինֆորմացիաները արտադրական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի մասին, իմանում, թե ինչ է արվում կոլտնտեսությունում ագրոտեխնիկական կանոնների ու առաջավոր փորձի արմատավորման, աշխատատար պրոցեսների մեքենայացման և կարգապահության ամրապնդման համար:

Կուսակցական կազմակերպությունը հետևում է, որ թույլ չտրվեն ներկոլտնտեսային դեմոկրատիայի և գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումներ, չփչացվեն ու հափշտակվեն հասարակական բարիքները:

Անցյալ տարվա վերջերին ֆերմայում վատ էր կազմակերպվում անասունների խնամքը: Կուսբյուրոն մանրազնին ուսումնասիրեց ֆերմայի վիճակը: Կուսակցական ժողովում լսվեց ֆերմայի վարիչ, կուսանդամ Ս. Ղազարյանի զեկուցումը՝ անասունների ձմեռման ընթացքի և ծնի կամպանիայի վերաբերյալ: Միջոցառումներ մշակվեցին բացահայտված թերությունները կարճ ժամկետում վերացնելու համար:

Կուսակցական կազմակերպությունը ջանադրաբար ուսումնասիրում է արտադրական հարցերը, խորամուխ լինում կոլտնտեսության էկոնոմիկայի մեջ, կոլտնտեսականների ուշադրությունը սևեռում ներքին ռեզերվների մաքսիմալ օգտագործմանը, հոգ տանում պետությանը հանձնվող ծխախոտի որակի, կաթի յուղայնության բարձրացման և անասունների բտվածության մասին:

Այս տարվա հունվարին կուսկազմակերպության նախաձեռնությամբ հրավիրվեց բրիգադավարների, օղակավարների, գյուղատնտեսության մասնագետների և արտադրության առաջավորների խորհրդակցություն, որը քննարկեց 1966 թվականին պետությանը ծխախոտի հանձնման արդյունքները: Ծխախոտագործությունն արտելի տնտեսության կարևոր ճյուղն է և մեծ դեր է խաղում նրա էկոնոմիկայի զարգացման գործում: Միայն անցյալ տարի կոլտնտեսության 400.000 ռուբլի դրամական եկամտից 335000-ը (մոտ 84 տոկոսը) տվեցին ծխախոտագործները: Եկամուտներն անհամեմատ ավելի կլինեին, եթե կոլտնտեսությունը կատարեր պետությանը հանձնելիք ծխախոտի պլանը նաև ըստ տեսակների: Իսկ դրան կարելի է հասնել միայն այն դեպքում, երբ բոլոր բրիգադները ստանան այնպիսի բարձր բերք, ինչպես Ա. Հովհաննիսյանինը: Կոլտնտեսությունն անցյալ տարի ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 28,8, իսկ Ա. Հովհաննիսյանի ղեկավարած բրիգադան՝ 36 ցենտներ բերք: Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե բոլոր բրիգադներում ծխախոտի միջին բերքատվությունը կազմեր 36 ցենտներ, ապա կոլտնտեսությունը կունենար 288 ցենտներով ավելի լրացուցիչ հումք:

Խորհրդակցությունում լուրջ խոսակցություն բացվեց նաև ծխախոտի որակի մասին: Անցյալ տարի կոլտնտեսությունը չկատարեց պետությանը առաջին և երկրորդ տեսակի հումքի հանձնման պլանը, որի հետևանքով էլ զրկվեց ավելի քան 250 00 ռուբլու եկամուտից:

Խոսելով ներքին ռեզերվների ռացիոնալ օգտագործման մասին, անհրաժեշտ է հիշատակել, որ կոլտնտեսության կուսկազմակերպությունը լուրջ նշա-



digitised by A.R.A.R.@

նակություն է տալիս դաշտերից քարերը մաքրելուն, միջնակների վերացմանը և տրակտորահարմար տարածությունների ստեղծմանը:

Կոլտնտեսության կուսակցական կազմակերպությունը միշտ գործում է քաղաքական կազմակերպությանը հատուկ մեթոդներով: Այստեղ ներկուսակցական ամբողջ աշխատանքի կենտրոնում է մարդը: Կուսկազմակերպությունը գիտե յուրաքանչյուր կոլտնտեսականի թույլ և ուժեղ կողմերը, հետաքրքրվում է ոչ միայն այն բանով, թե նա ինչպես է աշխատում, այլև ինչպես է դրսևորում իրեն հասարակական կյանքում, ինչ է կարդում, ինչով հետաքրքրվում:

Կուսակցական կազմակերպության ագիտկոլեկտիվում ընդգրկված են առավել պատրաստված ու հեղինակավոր մարդիկ՝ ուսուցիչներ, գյուղատնտեսության մասնագետներ, կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողներ, ընդամենը 16 հոգի: Ագիտկոլեկտիվի ղեկավարը կուսբյուրոյի քարտուղար Ա. Հովհաննիսյանն է: Քաղաքական ագիտացիայի հիմնական թեմաներն են՝ կոմունիստական կուսակցության և սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականությունը, ագրոբիոլոգիական գիտության նվաճումները, գյուղատնտեսության արտադրության առաջավոր մարդկանց փորձը և այլն: Ագիտատորներ Է. Մնացականյանը, Ա. Աթանեսյանը, Ա. Կիրակոսյանը, Ա. Եղիազարյանը և ուրիշներ մեծ հարգանք են վայելում ունկնդիրների շրջանում: Նրանք իրենց զրույցներն անց են կացնում սիստեմատիկորեն, հագեցնում են կոնկրետ օրինակներով և կապում պրակտիկ խնդիրների հետ:

Կուսակցական կազմակերպությունն իր պրակտիկ գործունեության ընթացքում հենվում է գյուղական ինտելիգենցիայի վրա: Ուսուցիչներ Հ. Պետրոսյանը, Գ. Մխիթարյանը ղեկավարում են քաղխմբակները: Դպրոցի դիրեկտոր Հ. Փայտյանը, ուսուցչուհի Ա. Վարդանյանը, հին կուսակցական Պ. Առաքելյանը հաճախ են հանդես գալիս կոլտնտեսականների առջև. նրանց ելույթներն ու զրույցները լսվում են մեծ ուշադրությամբ: Մասսայական քաղաքական աշխատանքի բարելավումը նպաստեց սոցիալիստական մրցության ծավալմանը: Կոլտնտեսության բոլոր արտադրամասերը հոբելյանական պարտավորություններ են ստանձնել, իսկ մրցությունը հարևան Մայակովսկի գյուղի հետ՝ արամուսցիների համար տրադիցիա է դարձել: Այս երկու գյուղերը մշտապես փոխադարձ ստուգումներ են անցկացնում և արդյունքները քննարկում կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում:

Կոլտնտեսությունը ձեռք է առնում բոլոր միջոցները մրցությունից պատվով դուրս գալու համար:

Սակայն այս ամենը չի նշանակում, թե կոլտնտեսային կուսկազմակերպության գործունեությունը զերծ է թերություններից: Այստեղ դեռևս բարձր է գյուղատնտեսական, մասնավորապես անասնապահական մթերքների ինքնարժեքը: Անցյալ տարի տավարի մսի ինքնարժեքը 46 տոկոսով գերազանցեց գնման գները, ոչխարինը՝ 26, կաթինը՝ 47, իսկ մեկ ցենտներ բրդի ինքնարժեքը 400 ռուբլու փոխարեն կազմեց 820 ռուբլի: Բացի այդ, կուսկազմակերպությունը պատշաճ ուշադրություն չի նվիրում անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացմանն ու ավտոմատացմանը: Եվ դա ոչ այն պատճառով, որ տնտեսությունը դրանց համար նյութական միջոցներ չունի: Այստեղ, ինչպես հարկն է, չի գնահատվում տեխնիկայի դերն աշխատանքի արտադրողականության բարձրացման և անասնապահական մթերքների ինքնարժեքի իջեցման գործում:

Անհրաժեշտ է, որ կուսկազմակերպությունն իր ուշադրությունը սևեռի



գյուղի աշխատավորության բարեկեցության ու նրա կուլտուրայի բարձրացմանը, պայմաններ ստեղծի կոլտնտեսականների կուլտուրական հանգստի լավ կազմակերպման համար:

Արամուս գյուղի կուսակցական կազմակերպությունը չպետք է բավարարվի ձեռք բերածով: Նա պետք է այնպես աշխատի, որ բարձրացնի ներկուսակցական աշխատանքի մակարդակը, ավելի լավ ղեկավարի արտադրությունը և տնտեսության բոլոր տեղամասերում ապահովի բարձր ապրանքայնություն ու շահութաբերություն:

Ջ. ՍՈՒԼԹԱՆՈՎ
ՀԿԿ Կենտկոմի հրահանգիչ

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐՆ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

Գորիսի շրջանի Յայջի գյուղի սովխոզի աշխատավորները խոստացել են հոբելյանական տարում արտադրել 1100 ց. միս, 5000 ց. կաթ, 78 ց. բուրդ, 7 490 ց. հացահատիկ, 225 ց. բանջարեղեն, 140 տոննա պտուղներ, ինչպես նաև կուտակել 1 200 տոննա խոտ, 1 200 տոննա ծղոտ, 1 100 տոննա սիլոս և այլն:

Մրցության մեջ մտնելով հարևան Շինուհայր գյուղի սովխոզի աշխատավորների հետ, յայջցիները եռանդուն գործում են ստանձնած պարտավորությունները անթերի կատարելու համար: Սովխոզի կոմունիստները, որոնք տեղաբաշխված են արտադրության վճռական տեղամասերում, հանդես են գալիս սոցիալիստական մրցության ավանգարդում: 56 կոմունիստներից 48-ն աշխատում են անմիջապես արտադրության մեջ և գրեթե բոլորն էլ կատարում ու գերակատարում են առաջադրանքները:

Ահա առաջավոր կոմունիստ Գուրգեն Ավետյանը, որը շուրջ 10 տարի է, ինչ խոզապահ է և միշտ էլ բարեխղճորեն է կատարում իր պարտականությունները: 1966 թվականին սովխոզը մսի արտադրության պլանի 40 տոկոսը կատարել է խոզի մսի արտադրության հաշվին: Այդ գործում իր համեստ բաժինն ունի կոմունիստ Գ. Ավետյանը, որը ներկայումս խնամում է 286 խոզ և ամեն կերպ ձգտում գերազանցել նախորդ տարվա ցուցանիշները:

Կոմունիստներն իրենց լավ են դրսևորում նաև ոչխարաբուծության բնագավառում: Անցյալ տարի սովխոզը պլանային 87-ի դիմաց արտադրել է 105 ց. բուրդ: Այդ գործում ևս իրենց արժանի լուման են մուծել կոմունիստները: Նրանցից Ջիվան Գրիգորյանը բարձրագույն կրթությամբ զոոտեխնիկ է, 14 տարի շարունակ ղեկավարում է ոչխարաբուծական ֆերման և հասել է արտադրական բարձր ցուցանիշների: Ֆերմայի աշխատողները սիրում ու հարգում են Ջ. Գրիգորյանին, որպես գործիմաց ղեկավարի և անկեղծ ընկերոջ:

Սովխոզի անվանի հովիվների մասին խոսելիս չի կարելի շրջանցել կոմունիստ Ծատուր Ղուկասյանին, որն իր խնամած 378 մաքուց ստացել և պահպանել է 386 գառ: Նա այժմ պայքարում է յուրաքանչյուր ոչխարից 3,6 կգ. բուրդ ստանալու համար:

Ծ. Ղուկասյանը սովխոզի միակ առաջավոր հովիվը չէ: Նրա պես աշխատում, բարձր ցուցանիշների են ձգտում նաև կոմունիստ հովիվներ Վաղարշակ Մելիքսեթյանը, Սահակ Սահակյանը և ուրիշներ:

Կոմունիստները մեծ եռանդով են աշխատում նաև հանրային անասնաբուծության մյուս ճյուղերում: Օրինակ, Ներսես Հարությունյանը խնամում է 64 գեր մոզիներ: Նրանցից ամեն մեկի քաշն արդեն հասնում է 120—140 կգ-ի:



digitised by A.R.A.R.@

Սովխոզի ճանաչված մարդկանցից է կթվորուհի Լուսիկ Ավանեսյանը։
Նա 1966 թվականին կաթի արտադրության սահմանված առաջադրանքը գե-
րակատարել է 15 ցենտներով և այժմ պայքարում է հոբելյանական տարվա
առաջադրանքը 200 ցենտներով գերակատարելու համար։ Անցած 5 ամսվա
մրցության հանրագումարները ցույց են տալիս, որ կոմունիստ կթվորուհին
կհասնի իր նպատակին։

Իր պարտականությունները բարեխղճորեն է կատարում կոմունիստ մե-
խանիզատոր Արմենակ Վարդանյանը։ Նա այս տարի պլանից դուրս կատա-
րել է 35 հեկտար գարնանացան, դաշտ է փոխադրել 600 տոննա գոմաղբ և
100 տոննա հանքային պարարտանյութ։

Բարձրացնելով կոմունիստների առաջատար դերը արտադրության բոլոր
տեղամասերում, Յալչիի սովխոզի կուսկազմակերպությունը դրանով իսկ լայն
թափ է հաղորդում նախատոնական մրցությանը։ Սովխոզի բանվորներն ու
բանվորուհիները, ընդօրինակելով կոմունիստներին, պայքարում են ստանձ-
նած պարտավորությունները հաջող կատարելու և մեծ Հոկտեմբերի 50-ամյա-
կը արժանավայել դիմավորելու համար։

Ա. ՇԱԼՈՒՆՑ

## ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ՂԵԿԱՎԱՐՈՒՄ Է ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

ՍՄԿԿ XXIII համագումարի պատմական որոշումների հաջող կատար-
ման, հոբելյանական տարում բարձր ցուցանիշներ ձեռք բերելու և պանծալի
տոնը արժանավայել դիմավորելու համար մեր կոլտնտեսությունը մրցության
մեջ է մտել Հարևան Վ. Դվինի կոլտնտեսության հետ։ Դրան զուգընթաց, սո-
ցիալիստական լայն մրցություն է ծավալվել արտելի ներսում. մրցում են դաշ-
տավարական բրիգադները, օղակները, անասնապահական ֆերմաները, վա-
րորդներն ու մեխանիզատորները, բոլոր աշխատողները։

Կուսակցական կազմակերպության բյուրոյի և կոլտնտեսության վարչու-
թյան որոշմամբ սահմանվել են փոխանցիկ կարմիր դրոշներ և ստեղծվել է
մրցության արդյունքներն ամփոփող ժյուրի, որը գլխավորում է կոլտնտեսու-
թյան վարչության նախագահ Ա. Միրզոյանը։ Սիստեմատիկորեն լույս են
տեսնում կոլտնտեսության «Այգեգործ» պատի թերթը (խմբկոլի նախագահ
Մ. Հովհաննիսյան) և բրիգադային «Իլյիչովկաները», որոնց էջերում մեծ տեղ
է հատկացվում սոցիալիստական մրցությանը։

Կուսակցական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը
հաճախ լսում և քննարկում են բրիգադների հաշվետվությունները՝ ստանձ-
նած սոցիալիստական պարտավորությունները կատարելու մասին։ Գնալով
աճում է աշխատողների ակտիվությունը, բարձրանում մրցողների նախաձեռ-
նությունը։ Կուսկազմակերպությունն ամեն կերպ ուժեղացնում է քաղաքական
ու գաղափարական աշխատանքը՝ ստանձնած պարտավորությունները կատա-
րելու համար, լայնորեն պրոպագանդում է մեծ Հոկտեմբերի նվաճումները,
խրախուսում կոլտնտեսականների արտադրական նախաձեռնությունն ու ինք-
նագործունեությունը, վառ պահում մարդկանց հայրենասիրությունը։

Ինչպես միշտ, կոմունիստները համաժողովրդական մրցության նախա-
ձեռնողներ և կազմակերպողներ են։ Կոմունիստ բրիգադավարներ Գ. Հայրա-
պետյանը, Դ. Հովհաննիսյանը, Վ. Ստեփանյանը և Ա. Ավետիսյանը լավա-
գույն ժամկետներում ու բարձր որակով են կատարել այգիների փորման և



պարարտացման գործը. յուրաքանչյուր հեկտարին տվել են 800 կգ. ազոտային և ֆոսֆորային պարարտանյութ, ժամանակին ավարտել կերային, բոստանաբանջարանոցային կուլտուրաների սածիլման և ցանքի աշխատանքները, իսկ այժմ զբաղված են ցանքերի մշակությամբ։

Լավ է ընթացել այգիների բուժումը։ Գործի են դրվել բոլոր սրսկիչ մեքենաները։ Իրենց պարտականությունները բարեխղճորեն են կատարել մեխանիզատորներ Յու. Սարգսյանը, Ռ. Միրզոյանը, Վ. Մանվելյանը, Գ. Թորոսյանը։ Այս ընկերներին գործնական մեծ օգնություն է ցույց տվել ու տալիս է տրակտորային բրիգադայի բրիգադավար, կուսանդամ Կ. Գյուլնազարյանը։

Դաշտային աշխատանքներին ակտիվորեն են մասնակցում շարքային կոմունիստներ Վ. Մկրտչյանը, Գ. Ասատրյանը, Գ. Հարությունյանը, Գ. Մարտիրոսյանը, Հ. Պողոսյանը, Վ. Սուքիասյանը և շատ ուրիշներ, որոնք կատարում ու գերակատարում են արտադրական նորմաները, օգնում են մնացողներին, բարձր պահում կոմունիստի կոչումը։

Պտղաբուծությունը մեր տնտեսությունում համարվում է ամենաշահութաբեր ճյուղը. կոլտնտեսության եկամտի գրեթե 70 տոկոսն ստացվում է այդ ճյուղից։ Այդ նկատառումով կոլտնտեսությունը ծրագրել է աստիճանաբար նվազեցնել ցածր բերք տվող այգիների տարածությունը և տնկել նոր, լարային ու տնկաշարային սիստեմի այգիներ, որոնց մշակումը հիմնովին կմեքենայացվի։ Այդ ուղղությամբ արդեն որոշ աշխատանք կատարված է. տնկվել է 9 հեկտար նոր այգի և աշնանը կտնկվի ևս 4 հեկտար։ Բացի դրանից տնկվել է նաև 3,5 հեկտար պտղատու այգի, լարերի վրա բարձրացվել են 7,5 հեկտար խաղողի այգու վազեր. իսկ այս աշնանը կբարձրացվի ևս 4 հեկտարի։ Աշխատելով սոցիալիստական մրցության նշանաբանով, կոլտնտեսականները արմատավորում են այգեգործության զարգացման նոր ձևերը։

Մտնելով մեծ Հոկտեմբերի 50-ամյակի պատվին ծավալված համաժողովրդական մրցության մեջ, մեր կոլտնտեսությունը պարտավորվել է ընթացիկ տարում արտադրել կաթ՝ 1.727, միս՝ 515, բուրդ, 44, խաղող՝ 7.790, պտուղ՝ 540, բանջարեղեն՝ 5.844 ցենտներ, ձու 110 հազար հատ։ Կուսկազմակերպությունը ղեկավարելով սոցմրցությունը, կոմունիստների և բոլոր աշխատողների ջանքերը ուղղում է այդ պարտավորությունների կատարմանը։

Դ. ԱՎԱԳՅԱՆ
Արտաշատի շրջանի Գետաշենի կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար

## ՊԱՏԱՍԽԱՆ ՀԱՐՑԵՐԻՆ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

Խմբագրությունը նամակներ է ստանում ընթերցողներից, որոնք խնդրում են պարզաբանել կուսակցական հաշվետու-ընտրական ժողովների անցկացման հետ կապված մի քանի հարցեր։

Ո՞վ է սահմանում հաշվետու-ընտրական ժողովի ժամկետները։

ՍՄԿԿ կանոնադրության համաձայն, այդպիսի ժողովներ անց են կացվում նախորդ հաշվետու-ընտրական ժողովից մեկ տարի անց։ Ինչ վերաբե-



digitised by A.R.A.R.@

րում է այս կամ այն կուսկազմակերպությունում ժողովի անցկացման կոնկ-րետ ժամկետին, ապա այն սահմանվում է կուսկազմակերպության կողմից, համաձայնեցնելով կուսակցության շրջկոմ-քաղկոմի հետ։

**Որքա՞ն կոմունիստներ պետք է ներկա լինեն ժողովին, որպեսզի այն համարվի իրավասու։**

Հաշվետու-ընտրական ժողովը կարևոր իրադարձություն է կուսկազմա-կերպության կյանքում, նրանում կոմունիստները հանրագումարի են բերում մեկ տարվա աշխատանքը, որոշում առաջիկա խնդիրները, ընտրում կուսբյու-րոյի, կուսկոմիտեի, արդյունաբերական, առևտրի ձեռնարկություններում, սովխոզներում և այլուր, ադմինիստրացիայի գործունեության վերահսկողու-թյան իրականացման հանձնաժողովների նոր կազմ։ Ուստի այդ ժողովը պետք է նախապատրաստել այնպես, որպեսզի ներկա լինեն բոլոր կոմու-նիստները։ Այդ նպատակով ոչ միայն նախօրոք հայտարարում են հաշվետու-ընտրական ժողովի ժամանակի և տեղի մասին, այլև ադմինիստրացիայի հետ միասին մանրակրկիտ հաշվի են առնում այնպիսի հարցեր, ինչպիսիք են ժողովի ժամանակ կոմունիստներին աշխատանքի վայրում փոխարինումը, գործուղումը և այլն։

Այն հարցը, թե որքան կոմունիստների ներկա լինելու դեպքում է ժողո-վը համարվում իրավասու, որոշում են իրենք՝ կոմունիստները։ Պրակտիկան ցույց է տալիս, որ հաշվետու-ընտրական ժողովներին, որպես կանոն, ներ-կայանում են կազմակերպության կազմի երեք քառորդից ավելին։ Այսպես, կուսակցությունում, ամբողջությամբ վերցրած, նախորդ հաշվետու-ընտրական ժողովներին մասնակցել են կոմունիստների մոտ 87 տոկոսը։

**Կուսակցական խմբի կազմակերպիչն ընտրվում է բա՞ց, թե՞ փակ քվեար-կությամբ։**

Կուսակցական խմբի կազմակերպիչի ընտրությունները կարող են անց-կացվել բաց քվեարկությամբ, եթե կոմունիստները չեն պնդում նրա ընտրու-թյունն անցկացնել փակ (գաղտնի) քվեարկությամբ։

**Կարելի՞ է արդյոք կուսակցական հաշվետու-ընտրական ժողովն անց-կացնել դռնբաց։**

Կուսկազմակերպության աշխատանքի մասին հաշվետու-զեկուցման քըն-նարկումը և կուսակցական օրգանի նոր կազմի ընտրությունները ներկուսակ-ցական գործ են։ Հաշվետու-ընտրական ժողովներն անց են կացվում դռնփակ։ Որոշ ընկերներ հարցնում են. ինչպե՞ս վարվել այնպիսի դեպքերում, երբ նման ժողովներում քննադատվում են թերություններ, որոնց վերացումը կախ-ված է անկուսակցականներից, ասենք, անկուսակցական տնտեսվարից, ին-ժեներից։ Երբեմն բավական է քարտուղարի զրույցն այն ընկերների հետ, որոնք պետք է ուղղեն թերությունը. մյուս դեպքում կոմունիստները հարցը դնում են արհմիութենական, կոմերիտական կամ այլ կազմակերպություն-ներում, կոլեկտիվի ընդհանուր ժողովում և այլն։ Բոլոր առաջարկություննե-րը, քննադատական դիտողությունները անպայման հաշվի են առնվում և կուսկազմակերպությունը վերահսկում է դրանց իրականացումը։

**Կարելի՞ է կոմունիստին ընտրել կուսօրգանի կազմում, եթե նա տվյալ կազմակերպությունում հաշվառման մեջ չէ։**

Այն դեպքում, երբ անհրաժեշտություն է ծագում ամրապնդել սկզբնա-կան կուսկազմակերպությունը, շրջկոմը (քաղկոմը) կարող է հաշվետու-ընտ-



րական ժողովին երաշխավորել կուսակցական օրգանում ընտրել կուսանդա-մի, որը տվյալ կուսկազմակերպության մեջ հաշվառման մեջ չէ։

Կուսակցական աշխատանքի բարելավմամբ շահագրգռված կոմունիստ-ներն, իհարկե, հաշվի են նստում այդ երաշխավորության հետ։ Նման պրակ-տիկայում կուսակցական կյանքի նորմերի խախտում չկա։ Ժողովի մասնա-կիցները քննարկման և գաղտնի քվեարկության միջոցով, վերջիվերջո, իրենք են լուծում երաշխավորված ընկերոջը կուսբյուրոյի, կոմիտեի կազմում ընտ-րելու կամ չընտրելու հարցը։

**Կարելի՞ է արդյոք ՍՄԿԿ անդամին հեռակա կարգով ընտրել կուսակ-ցական օրգանում։**

Եթե կոմունիստները լավ գիտեն կուսանդամին, իսկ նա հարգելի պատ-ճառով ներկա չէ ժողովում, ապա նրանք կարող են հեռակա կարգով նրան ընտրել կուսակցական բյուրոյի, կոմիտեի կազմում։

**Երբ կուսկազմակերպությունում կուսակցական անդամների թիվը 15-ից պակաս է, կարելի՞ է ընտրել քարտուղարի երկու տեղակալ։**

Ըստ ՍՄԿԿ կանոնադրության նման կուսկազմակերպություններում ըն-տրըվում են կուսկազմակերպության քարտուղար և նրա տեղակալ։ Բայց եթե կուսակցական ժողովը նպատակահարմար է գտնում, ելնելով ընդհանուր գոր-ծի շահերից, ընտրում է քարտուղարի երկու տեղակալ։

**Կարելի՞ է արդյոք քարտուղարի և նրա տեղակալի ընտրություններն անցկացնել մեկ ցուցակով։**

Այն սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողո-վում, որտեղ բյուրո չի ընտրվում, քարտուղարի և նրա տեղակալի ընտրու-թյունները քննարկվում են որպես երկու ինքնուրույն հարցեր։ Ժողովի մաս-նակիցներին համապատասխանաբար տրվում են երկու բյուլետեն գաղտնի (փակ) քվեարկության համար։ Այդ դեպքում ժողովի օրակարգը գրվում է այսպես. հաշվետվություն կուսկազմակերպության քարտուղարի աշխատան-քի մասին, կուսկազմակերպության քարտուղարի ընտրություն, կուսկազմա-կերպության քարտուղարի տեղակալի ընտրություն։

**Կարո՞ղ են արդյոք կուսբյուրոյի կազմում ընտրել մեկ տարվա կուսակ-ցական ստաժ չունեցող ՍՄԿԿ անդամի։**

Կարող են։ Սակայն չի կարելի նրան ընտրել կուսբյուրոյի քարտուղար, որովհետև ՍՄԿԿ կանոնադրության համաձայն կուսբյուրոյի քարտուղար կա-րող է լինել միայն առնվազն մեկ տարվա կուսակցական ստաժ ունեցող կո-մունիստը։

**Ինչպե՞ս վարվել, եթե առաջադրված թեկնածուի մասին առարկություն է ստացվել։**

Հարկավոր է քննարկել առարկությունը և բաց քվեարկությամբ որոշել՝ տվյալ թեկնածությունը թողնե՞լ, թե՞ հանել գաղտնի (փակ) քվեարկության ցուցակից։ Այն թեկնածությունները, որոնց դեմ առարկություններ չեն ստաց-վել, բաց քվեարկության չեն դրվում, և նրանք մտցվում են գաղտնի քվեար-կության ցուցակի մեջ։

**Ինչպիսի՞ սկզբնական կազմակերպություններում են անցկացվում կու-սակցական կոնֆերանսները։**

Կուսակցական կոմիտեների ընտրությունները, որպես կանոն, անց են կացվում համագործարանային, համակոլտնտեսային և համասովխոզային կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում։ Առանձին դեպքերում,



digitised by A.R.A.R.@

խոշոր կուսկազմակերպություններում, ուր հաշվվում են 500-ից ավելի կոմունիստներ, մարզկոմի, երկրկոմի և միութենական հանրապետության կոմկուսի Կենտկոմի թույլտվությամբ հաշվետվություններն ու ընտրությունները կարող են անցկացվել ոչ թե համագործարանային կուսակցական ժողովներում, այլ կուսակցական կոնֆերանսներում: Արտադրամասային կուսկազմակերպություններից համագործարանային կուսակցական կոնֆերանսի պատգամավորներ են ընտրվում կոմունիստների արտադրամասային ժողովներում փակ (գաղտնի) քվեարկությամբ: Գործարանային կուսակցական կոնֆերանսի ներկայացուցչության նորմաները սահմանվում են ձեռնարկության կուսկոմիտեի կողմից, շրջկոմ-քաղկոմի համաձայնությամբ:

**Կարո՞ղ են արդյոք սկզբնական կուսկազմակերպություններում անցկացնել խորհրդակցություններ կուսակցական օրգանի նոր կազմի թեկնածությունները նախօրոք նշելու համար:**

ՍՄԿԿ Կենտկոմի կողմից հաստատված «ղեկավար կուսակցական օրգանների ընտրությունների անցկացման մասին հրահանգին» համապատասխան, կուսակցական հաշվետու-ընտրական ժողովների (կոնֆերանսների) որոշմամբ կարող են հրավիրել արտադրամասային կուսկազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություններ: Նրանց նպատակն է՝ նախօրոք նշել կուսակցական օրգանի ապագա կազմի թեկնածուները: Թեկնածուները խորհրդակցության անունից առաջադրվում են ժողովում: Դա, հասկանալի է, չի սահմանափակում ժողովի մասնակիցների, կոնֆերանսի պատգամավորների իրավունքները բուն իսկ ժողովում (կոնֆերանսում) թեկնածուների առաջադրման և քննարկման ժամանակ:

**Ժամանակավոր հաշվառման մեջ եղած կուսանդամները արդյո՞ք մասնակցում են ընտրություններին:**

Այո, մասնակցում են տվյալ կուսկազմակերպության բոլոր ՍՄԿԿ անդամների հետ համահավասար:

**Կուսժողովը հաշվետու-ընտրական ո՞ւմ աշխատանքն է գնահատում. ընտրովի օրգանի՞, թե՞ ամբողջ կուսկազմակերպության:**

Ժողովը գնահատական է տալիս ընտրովի կուսակցական օրգանի՝ կուսբյուրոյի, կուսկոմիտեի, այնտեղ, ուր բյուրո չի ընտրվում, կուսկազմակերպության քարտուղարի աշխատանքին:

**Սակավանդամ կուսկազմակերպություններում ընտրվո՞ւմ են արդյոք հաշվիչ հանձնաժողովներ:**

Եթե կուսկազմակերպությունում կուսանդամների թիվը տասից պակաս է, ապա հաշվիչ հանձնաժողովներ չեն ընտրվում: Նման կուսկազմակերպություններում ժողովը ձայների հաշվումը (քարտուղարի և նրա տեղակալի ընտրությունների) հանձնարարում է ժողովում նախագահողին կամ կուսանդամներից մեկին: Քվեարկության արդյունքները մտցվում են անմիջապես ժողովի արձանագրության մեջ:

**Կարո՞ղ է արդյոք անկուսակցական ընկերն ընտրվել ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովի անդամ:**

Ո՛չ, չի կարող: Դա կուսկազմակերպության հանձնաժողովն է, և ընտրվում է միայն ՍՄԿԿ անդամներից և անդամության թեկնածուներից: Սակայն այդ հանձնաժողովները կարող են, ելնելով իրադրությունից, իրենց աշխատանքում ներգրավել արհմիութենական, կոմերիտական, անկուսակցական ակտիվիստներին («Партийная жизнь», № 14, 1967 г.):

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋԸ*

Ս. ՂԱՐԻԲՅԱՆ

Ինչպես ժողովրդատնտեսության մյուս ճյուղերում, այնպես էլ գյուղատնտեսության մեջ աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման հարցը երբեք այնպիսի սրությամբ ու խորությամբ չի դրվել, ինչպես այժմ: Դա հետևանք է այն բանի, որ վերջին տարիներին գյուղատնտեսության բնագավառում ոտնահարվել էին անձնական և հասարակական շահերի զուգակցման սոցիալիստական սկզբունքները: Այժմ կուսակցությունն ու կառավարությունը հետևողական աշխատանք են կատարում այդ սկզբունքների ճիշտ կիրառման համար:

Ցպետք է մոռանալ, որ դեռևս սովետական իշխանության ստեղծման առաջին տարիներին Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս նյութական շահագրգռվածության հարցին: Աշխատանքի վերաբերյալ կոդեքսների և տարիֆային դրույթների մշակումը, նէպի իրագործումը, պարենմասնատրումը պարենհարկով փոխարինելը և այլ միջոցառումները Լենինը կատարել է ելնելով աշխատավոր ժողովրդի նյութական շահագրգռվածության բարձրացման, նրանց անձնական ու հասարակական շահերի ճիշտ զուգակցման օբյեկտիվ անհրաժեշտությունից: Չէ՛ որ արտադրության պրոցեսում նյութական շահերը հանդես են գալիս ոչ միայն կապիտալիզմի, այլև սոցիալիզմի օրոք. այն դրսևորվում է հատկապես եկամուտների բաշխման պրոցեսում:

Սոցիալիզմի ժամանակ յուրաքանչյուր աշխատող ձգտում է սիստեմատիկ կերպով բարելավել իր կյանքի նյութական, կուլտուրական ու կենցաղային պայմանները, ավելի շատ արտադրել, ավելի բարեկեցիկ ապրել: Դրանք ոչ թե կապիտալիստական, այլ սոցիալիստական առաջադիմական ձգտումներ են: Ուստի մեր խնդիրն է վարձատրության այնպիսի կարգ սահմանել, որպեսզի յուրաքանչյուր աշխատող մաքսիմալ կերպով օգտագործի իր ունակություններն ու բավարարի ինչպես հասարակության, այնպես էլ իր անձնական պահանջմունքները:

ՍՄԿԿ XXIII համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ այս կապակցությամբ ասված է. «Սոցիալիզմը այնպիսի հասարակարգ է, որի սկզբունքն է վարձատրությունն ըստ աշխատանքի քանակի և որակի, որը հե-

---

* Քննարկման կարգով տպագրելով ընկ. Ս. Ղարիբյանի հոդվածը, խմբագրությունը գյուղատնտեսության մինիստրության, գիտահետազոտական ինստիտուտների և սովխոզների աշխատողներին հրավիրում է հանդես գալ տվյալ հարցի առթիվ:



digitised by A.R.A.R.@

տնապես ենթադրում է տնտեսական խթանների գործողության, նյութական շահագրգռվածության և աշխատավոր միլիոնավոր մասսաների ներգրավում երկրի տնտեսական կյանքի ղեկավարման մեջ։ Սոցիալիստական ձեռնարկության արտադրանքը ստեղծվում է ամբողջ կոլեկտիվի ջանքերով։ Ուստի միանգամայն օրինաչափ է յուրաքանչյուր աշխատողին ըստ նրա անձնական աշխատանքի նյութապես խրախուսելու հետ մեկտեղ ապահովել ամբողջ կոլեկտիվի նյութական շահագրգռվածությունը ձեռնարկության գործունեության վերջնական արդյունքներով։ Դա հնարավորություն կտա ավելի լրիվ զուգորդել անձնական և հասարակական շահերը» (Լ. Ի. Բրեժնև, «ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցում ՍՄԿԿ XXIII համագումարին», 1966 թ., էջ 63—64)։

Դա վերաբերում է բոլոր ձեռնարկություններին, դրանց թվում և սովխոզներին, որոնց աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումը, անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգակցումը բացառիկ կարևոր նշանակություն ունեն տնտեսության շահութաբերությունն ավելացնելու համար։ Այդ կապակցությամբ հանգամանորեն խոսենք հիմնական երկու հարցի մասին.

### 1. Սովխոզների բանվորների աշխատանքի հիմնական վարձատրության մասին

Սովխոզների բանվորների աշխատանքի հիմնական վարձատրությունը կատարվում է համապատասխան տարիֆային դրույքներով և գործավարձային սիստեմով։ Մեր կարծիքով հիմնական վարձատրության այս երկու ձևն էլ քիչ են խթանում գյուղատնտեսության մթերքների արտադրության ավելացմանը։ Վարձատրության գործավարձային սիստեմն իր մեջ ամփոփում է բանվորի կատարած աշխատանքի քանակական, մասամբ էլ որակական կողմերը, որոնք (մինչև վերջնական բերքի ստացումը) հարաբերական հասկացողություններ են։ Այն ռեալ կարող է արտահայտվել միայն վերջնական արդյունքի մեջ։

Սեզոնի ընթացքում, գործավարձային աշխատանքներ կատարելիս, բանվորները գլխավորապես մտածում են միայն տվյալ օրվա, շաբաթվա կամ ամսվա վաստակի մասին, ուշադրություն չդարձնելով որակի վրա։ Որոշ աշխատանքներ, որոնց նորման ցածր է, բանվորները կատարում են կրկնակի, հաճախ էլ եռակի չափով, ի վնաս որակի։ Այսպես, օրինակ՝ դաշտավարության մեջ որոշ բանվորներ վաղ գարնանից աշխատում են ծխախոտի ջերմոցներում, ապա տարբեր դաշտերում գոմաղբ են փոխադրում, հետո մասնակցում քարհավաքի, հացահատիկի ցանքի, կարտոֆիլի տնկման, նրանց մշակության և այլնի աշխատանքներին։ Ամռանը այդ նույն բանվորները մասնակցում են խոտհնձին, այնուհետև հացահատիկի, կարտոֆիլի, ծխախոտի բերքահավաքին։ Այս բոլոր աշխատանքները կատարելու ընթացքում բանվորներին առաջին հերթին հետաքրքրում է քանակական կողմը. նրանք միշտ պայքարում են շատ արտադրանք տալու ու բարձր աշխատավարձ ստանալու համար։ Իսկ թե սեզոնի վերջում տվյալ կուլտուրայից ինչպիսի բերք կստացվի, բանվորին քիչ է հետաքրքրում, քանի որ նա չգիտի իր ավելի ներդրած աշխատանքի, սովորականից ավելի գործադրած ջանքերի համար տարվա վերջին ինչ կստանա։

Տարիներ առաջ մշակված աշխատանքի վարձատրության միասնական տարիֆային վեցկարգյա սիստեմը, որով այժմ ղեկավարվում են բոլոր սովխոզները, չի արտացոլում ներկայումս կատարվող տարբեր որակի, տարբեր բարդության ու մասնագիտության աշխատանքների էությունը։ Կան շատ դեպքեր,



երբ տարիֆային կարգերի տարբեր գնահատման հետևանքով առաջ են գալիս «ձեռնտու» և «անձեռնտու» աշխատանքներ, «ձեռնտու և անձեռնտու» մեքենաներ ու գյուղգործիքներ։ Այսպես. տրակտորիստը ДТ—54 տրակտորով փոցխ անելու դեպքում մեկ արտադրական նորմա կատարելու համար ստանում է 3 ռ. 20 կ., իսկ վար անելու դեպքում՝ 5 ռ. 50 կ.։ Այս երկու աշխատանքները, ինչ խոսք, միմյանցից ինչ-որ չափով տարբերվում են, բայց վարը կրկնակի անգամ բարդ ու ծանր աշխատանք չէ, քան փոցխելը։ Ուստի սխալ է գնահատման մեջ եղած նման մեծ տարբերությունը։ Այսպիսի շատ օրինակներ կան նաև մյուս աշխատանքների տարիֆային կարգերում։ Դրանից ելնելով որոշ տնտեսագետներ (Կուզինով Պ., Վոլոսենկո Գ.) առաջարկում են կատարելագործել տարիֆային կարգերը՝ ելնելով աշխատանքի բարդությունից, ագրեգատի կազմից, մասնագիտությունից։ Նրանք առաջարկում են 6-ի փոխարեն սահմանել տարիֆային 2—3 կարգ (Вопросы экономики, № 9, 1966 г.)։

Մեր կարծիքով, ինչպես ձեռքի, այնպես էլ տրակտորային բոլոր աշխատանքները նպատակահարմար է դիֆերենցել 2—3 կարգերում, ընդ որում մեկ կարգի գնահատումը մյուսի համեմատ պետք է տատանվի միայն 10 տոկոսի չափով։ Այսպիսի կարգեր սահմանելու դեպքում կվերանան «ձեռնտու և անձեռնտու» աշխատանքներ հասկացողությունը, բանվորները առանց խտրության կկատարեն իրենց պրոֆիլին համապատասխան բոլոր գործերը։

Սովխոզներում տարվա կամ սեզոնի վերջում մթերքներ ստանալու համար դաշտավարության բնագավառի բանվորներին լրացուցիչ վճարում են ստացած աշխատավարձի 25, իսկ անասնապահության բնագավառի բանվորներին՝ 15 տոկոսի չափով։ Այդ գումարները նախօրոք հաշվարկվում ու մտցվում են աշխատավարձի ֆոնդի մեջ և համարվում են հիմնական վարձատրության մի մասը։ Վարձատրության այս մասի նպատակն է բանվորներին շահագրգռել մինչև տարվա վերջը մասնակցելու արտադրության պրոցեսին։ Սակայն այդ տոկոսների հաշվարկման ու վճարման կարգը շատ անորոշ է ու բարդ, մատչելի չի բանվորներին. նրանք չգիտեն, թե տարվա վերջին իրենք ինչ կստանան այդ 25 տոկոսի հաշվին։ Այդ իմանալու համար բանվորները պետք է սպասեն մինչև բոլոր աշխատանքները ավարտվեն, ապա հաշվապահությունում ամփոփվի աշխատավարձի ֆոնդի ծախսը բոլոր ճյուղերում՝ միասին վերցրած։ Եվ եթե աշխատավարձի ֆոնդի տնտեսում լինի, ապա այն կբաժանեն բոլոր բանվորներին՝ աշխատավարձի համամասնությամբ։ Բազմաճյուղ բրիգադաներում ծխախոտագործի, կարտոֆիլագործի, ճակնդեղագործի, հացահատիկ մշակողի աշխատանքի արդյունքը լցվում է մի ընդհանուր կաթսայում, կատարվում ձախ հավասարեցում, ապա նորից բաշխվում։ Բաշխման այս կարգը մեռցնում է բանվորների շահագրգռվածությունը արտադրության վերելքի գործում։ Այս կապակցությամբ միանգամայն իրավացի են մի շարք տնտեսագետներ, որոնք պահանջում են վերանայել վարձատրության ներկա կարգը և այն ավելի մոտեցնել սոցիալիզմի սկզբունքներին՝ «Յուրաքանչյուրին ըստ ունակության, յուրաքանչյուրին ըստ աշխատանքի»։

Սովխոզներում տարեվերջյան 25 և 15 տոկոսով լրացուցիչ վճարման գոյություն ունեցող կարգը բնավ չի օգնում արտադրության արագ զարգացմանը։ Այսպես. իմանալով, որ աշխատավարձի չափը կախված է պլանային առաջադրանքներից և տեխնոլոգիական քարտերով նախատեսված գումարի ու փաստացի ծախսվածի տարբերությունից, որոշ սովխոզների ղեկավարներ ձգտում են ցածր պլաններ ընդունել, տեխնոլոգիական քարտերում աշխատա-



digitised by A.R.A.R.@

վարձի ֆոնդը ուռճացնել և արհեստական կերպով աշխատանքի վարձաչափերը մեծացնել։ Թուլանում է պայքարը պլանային առաջադրանքները գերակատարելու համար, քանի որ առաջ է գալիս մտավախություն, թե հաջորդ տարում պլանները կավելացնեն, որից աշխատավարձի լրացուցիչ ֆոնդը կպակասի։ Նման սուբյեկտիվ մոտեցման դեպքում հաճախ տարեվերջյան վարձատրությունները մեծ չափերի են հասնում այնպիսի տնտեսություններում, որտեղ նույն աշխատանքային ծախսումներով ավելի քիչ բերք են ստացել, քան հարևան տնտեսությունում։

Աշխատանքի և վարձատրության ոչ ճիշտ կազմակերպման հետևանքով հաճախ բանվորների մոտ ոչ միայն պասսիվություն է ստեղծվում, այլև, առանձին դեպքերում, որոշ մարդիկ հանրային ունեցվածքին խորթ աչքով են նայում։ Այսպիսի պայմաններում «խիստ հսկողությունը», «վարչարարությունը», ժողովները, որոշումներն ու հրամանները արտադրության վերելքին քիչ են օգնում։ Վիճակը կարգավորելու համար արտադրությանը պետք է նայենք ոչ թե վարչարարական, այլ սոցիալ-տնտեսական օրենքների ակնոցներով, արտադրության և բաշխման մեջ թույլ տված սխալները շտկելու, անհատական և հասարակական շահերի միասնություն ստեղծելու տեսանկյունով։

Հայաստանի գյուղատնտեսական էկոնոմիկայի և կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտի գիտական աշխատող Խ. Ավագյանը ուսումնասիրելով սովխոզներում աշխատանքի վարձատրության հարցերը, առաջարկում է աշխատանքի վարձաչափերը սահմանել որոշ կայուն ժամանակաշրջանի համար, որպեսզի բանվորը տեսնի ու պարզ հասկանա իրեն տրվող վարձատրության չափը, որպեսզի այն համամասնորեն աճի աշխատանքի արտադրողականության աճման հետ։ Ինչ խոսք, որ առաջարկվող նոր ձևը ավելի ճիշտ ու շահագրգռեցուցիչ է։ Վ. Պոլիժիյը, Տ. Միլչինը առաջարկում են բանվորների նյութական շահագրգռվածությունը կապել բերքատվության աստիճանական բարձրացման հետ։ Նրանք գտնում են, որ 15 կամ 25 տոկոսի փոխարեն նպատակահարմար է տարվա վերջին բանվորներին լրացուցիչ վճարել ըստ ստացված բերքի՝ հետևյալ չափերով.

| Կարտոֆիլի մեկ տոննայի համար | | |
|---|---|---|
| Մինչև 100 ց. 1 հ-ից ստանալու դեպքում | | 4 ռ. 20 կ. |
| 100—110 | » | 4 ռ. 80 կ. |
| 110—120 | » | 5 ռ. 30 կ. |
| 120—130 | » | 5 ռ. 80 կ. |
| 130—140 | » | 6 ռ. 10 կ. |
| 140 և ավելի | » | 6 ռ. 50 կ. |

В. Положий, „Нормирования и расценка для дополнительной оплаты" (Эканомика сельского хозяйства, стр. 9, № 2, 1966 г.)

| Խաղողի մեկ տոննայի համար | | |
|---|---|---|
| 30—35 ց. 1 հ-ից ստանալու դեպքում | | 10 ռ. 90 կ. |
| 37—40 | » | 15 ռ. 40 կ. |
| 40—45 | » | 19 ռ. 60 կ. |
| 45—50 | » | 23 ռ. 90 կ. |

Т. Мильчан, „Аккордно-прогрессивная оплата труда в растениеводстве" (Экономика сельского хозяйства, № 8, 1966 г.)

Վարձատրության այս ձևը պրակտիկայում ավելի մեծ արդյունք կտա, քանի որ այն ճիշտ է դրսևորում աշխատանքի արտադրողականության, աշխատավարձի, անհատական ու հասարակական շահերի փոխհարաբերությունները։



Բանվորների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է էլ ավելի պարզեցնել ու մատչելի դարձնել հիմնական վարձատրության այդ մասը։ Մեր կարծիքով նպատակահարմար է տարվա վերջին պլանները կատարելու և մթերքներ ստանալու համար բանվորներին վճարել ոչ թե ստացած աշխատավարձի 15—20, այլ իր արտադրած մթերքների 5—10 տոկոսի չափով, դրամով կամ բնամթերքով, բանվորի ցանկությամբ։ Պրակտիկայում արդարացված վարձատրության այս ձևը ավելի պարզ է, հասկանալի ու շահագրգռող։ Յուրաքանչյուր բանվոր հենց տարվա սկզբին կարող է հաշվել, թե բացի ամսական աշխատավարձը, տարվա վերջին ինչքան կարող է ստանալ տվյալ մթերքից, որը ինքն է արտադրում։ Դա լուրջ խթան կհանդիսանա պլանային առաջադրանքների կատարման համար։ Զպետք է խուսափել բանվորին բնամթերային վարձատրություններ տալու փորձված պրակտիկայից։ Այնտեղ, որտեղ բանվորները գերադասում են ստանալ մթերք, պետք է անվախ կերպով այն տալ, քանի որ բնամթերային վարձատրությունը բանվորին սերտորեն կապում է հողին, նրան ավելի հոգատար, պարտաճանաչ է դարձնում շատ ու որակով մթերքներ արտադրելու գործում։ Բանվորը պարզ տեսնում է իր անձնական շահը ընդհանուրի մեջ և ջանք չի խնայում միշտ բարձրացնելու արտադրության մակարդակը։ Բնամթերային վարձատրություններն ավելի են մոտեցնում բանվորների անձնական շահերը հասարակականին։ Մեր կարծիքով, սովխոզի բանվորը կամ կոլտնտեսականը իր արտադրած մթերքների որոշ մասը պետք է անպայման անձամբ ինքը տնօրինի։

## 2. Լրացուցիչ վարձատրության մասին

Սովխոզների տիպային կանոնադրությամբ նախատեսված են լրացուցիչ վարձատրությունների ու պարգև-հավելումների մի շարք ձևեր, որոնք պետք է կատարելագործել ու պարզեցնել։ Այսպես, օրինակ՝ նախատեսվում է պլանային առաջադրանքները գերակատարելու դեպքում գերակատարված մթերքների արժեքի 20 տոկոսը, ինքնարժեքով հաշված, տալ տվյալ մթերքի արտադրության վրա աշխատող բանվորներին՝ որպես լրացուցիչ վարձատրություն։ Լրացուցիչ վարձատրության այս ձևը նույնպես չի շահագրգռում բանվորներին, քանի որ ռեալ պլանավորման դեպքում գերակատարման հարցը լուրջ դժվարությունների հետ է կապված։ Բանվորները պետք է արտակարգ ջանքեր գործադրեն, բազմաթիվ միջոցառումներ կիրառեն, որ կարողանան ռեալ պլանից ավելի արտադրանք տալ։ Այդպիսի ջանքերի գործադրման պայմաններում հնարավոր է 10—15 տոկոսով պլանները գերակատարել, իսկ դրա 20 տոկոսը, որը տարվա վերջին նոր պետք է տրվի բանվորին, շատ չնչին է։ Յուրաքանչյուր բանվոր զգալով լրացուցիչ վարձատրության այս մասի աննշան լինելը, դադարում է արտակարգ ջանքեր գործադրել պլանների գերակատարման համար։

Հովիվների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով մեր հանրապետության բոլոր սովխոզների համար միասնական կարգով նախատեսված է 100 մայր մաքուց 95 գառ և ավելի ստանալու դեպքում ավելի ստացած գառների տասից մեկը (գառները գառնարածին հանձնելու ժամանակ) տալ հովվին որպես լրացուցիչ վարձատրություն։

Այս կարգի համաձայն Ալագյազի, Սիսիանի, Գորիսի շրջանների որոշ տնտեսություններում հովիվները կարող են լրացուցիչ վարձատրություն ստանալ։ Բայց մի՞թե դա կշահագրգռի Սևանի, Կամոյի, Մարտունու, Բասարգեչա-



digitised by A.R.A.R.@

րի շրջանների և համանման շրջանների սովխոզների հովիվներին, որոնք ավելի մեծ ջանքեր են գործադրում, բայց մաքիների միջին գառնատվությունը տարիներ շարունակ 75—85 տոկոսից չի անցնում։ Ուստի լրացուցիչ վարձատրության միասնական նորման բոլոր սովխոզներին հրամցնելը ճիշտ չի։ Այս հարցերը մշակելիս անպայման պետք է հաշվի առնել տվյալ տնտեսության փաստացի մակարդակը, բնակլիմայական, կերակրման, խնամքի և այլ յուրահատուկ պայմանները։

Լինում է և հակառակը. որոշ տնտեսություններ արհեստական կերպով ցածր պլաններ են ընդունում և հեշտությամբ գերակատարում։ Դրա համար, իհարկե, նրանք մեծ գումարներ են ստանում որպես լրացուցիչ վարձատրություն։ Այսպիսի տնտեսություններում հաճախ լրացուցիչ վարձատրությունները ավելին են լինում, քան հիմնականը։ Այս սուբյեկտիվ մոտեցումը վնաս է հասցնում արտադրությանը և աղավաղում նյութական շահագրգռվածության բարձրացման ու բաշխման սկզբունքները։

Լրացուցիչ վարձատրության այս կարգի թերությունները ավելի սուր կերպով արտահայտվում են դաշտավարության բնագավառում, որտեղ մինչև արտադրանք ստանալը արտադրության պրոցեսին մասնակցում են բազմաթիվ բանվորներ, որոնք տարբեր ժամանակ կատարում են բոլորովին տարբեր քանակի ու որակի աշխատանքներ։ Այս բոլոր աշխատանքները գումարվում են, հավասարեցվում ստացած աշխատավարձի միջոցով և տարվա վերջին համախառն արտադրանքի պլանի գերակատարման 20 տոկոսի արժեքը հավասարապես բաժանվում աշխատավարձի համամասնությամբ։ Մինչդեռ ընթացիկ աշխատանքներ կատարելու ժամանակ տրված աշխատավարձը չի կարող իր մեջ լիարժեք կերպով արտահայտել յուրաքանչյուր բանվորի մոտեցումը, հարվածայնությունը, խիղճը և այլ գործոններ, որից կախված է բերքատվության բարձրացումն ու պլանների գերակատարումը։

Դեռ 1921 թվականին Վ. Ի. Լենինը խիստ քննադատության ենթարկեց Տրոցկու «Հարվածայնություն արտադրության մեջ, հավասարություն սպառման մեջ» մանրբուրժուական տեսակետը, որով Տրոցկին առաջարկում էր բանվորներին իրենց ստացած տարբեր չափի աշխատավարձը մուծեն ընդհանուր կաթսա և այնտեղից ստանան հավասար քանակությամբ գոյամիջոցներ։ Հակառակ Տրոցկու, Լենինը գտնում էր, որ գերազանցությունը հարվածայնության մեջ գերազանցություն է նաև սպառման մեջ։ Առանց դրա գերազանցությունը մշուշ է, երազանք։ Այնուհետև խոսելով բանվորների աշխատավարձի չափի ու գրանցման կարգի մասին, Վ. Ի. Լենինն ասում է, որ աշխատավարձը պետք է մշտապես խթանի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, աշխատողների հանդես բերած նախաձեռնության ու ինքնագործունեության զարգացմանը, աշխատավարձի չափը պետք է կախված լինի աշխատանքի արտադրողականության մակարդակից, իսկ աշխատավարձի գրանցման սիստեմն այնքան պարզ պետք է լինի, որ ամեն մի աշխատավոր միշտ կարողանա տեսնել, որ վարձատրության չափը կախված է իր աշխատանքի արդյունքից։

Սովխոզների բանվորների աշխատանքի լրացուցիչ վարձատրության գործում ճշտությամբ չի կիրառվում լենինյան այս ցուցումը, որի հետևանքով շատ սովխոզներում ցածր է բանվորների նյութական շահագրգռվածությունը, ցածր է և արտադրության մակարդակը։ Ահա թե ինչու շատ գիտնականներ ու պրակտիկ աշխատողներ իրենց կարծիքն են հայտնում ու պահանջում սով-



խոզներում կատարելագործել աշխատանքի վարձատրությունը։ Տ. Միլլինը, քննադատելով սովխոզներում գոյություն ունեցող ակորդա-պրեմիալ վարձատրության սիստեմը, ասում է.

«Աշխատանքի ակորդային-պարգևատրման սիստեմում մարմնավորված է հիանալի գաղափար՝ վարձատրում արտադրանքի դիմաց։ Սակայն նրա կիրառման սկզբից արդեն անցել է 4 տարի, բայց այն պահանջվող արդյունք չի տվել։ Մեծածավալ հաշվարկի հետևանքով պրակտիկ աշխատողները չեն կարող որևէ կերպ պարզորոշ պատկերացնել, թե արտադրանքի դիմաց ինչ կստանան տարեվերջին» (Экономика сельского хозяйства, № 8, 1966 г.):

Վ. Գուբաշևը նույնպես քննադատում է սովխոզներում անասնապահության մեջ կիրառվող լրացուցիչ վարձատրության ձևերը։ Նա ասում է, որ այստեղ աշխատանքի վարձատրության և պարգևատրման առկա սիստեմը լուրջ խոչընդոտում է այդ ճյուղի զարգացումը։

Հ. Սմբատյանը, Խ. Ավագյանը, Կ. Պանկովան, Լ. Ջավերնյաևան, Մ. Լեմեշևը, Ս. Օգորոդնովը, Պ. Կուդինովը, Գ. Մ. Վոլոսենկոն և ուրիշներ նույնպես առաջարկում են կատարելագործել վարձատրության գոյություն ունեցող կարգը։

Բացի լրացուցիչ վարձատրության վերոհիշյալ ձևերից, սովխոզների տիպային կանոնադրությամբ նախատեսվում է մի շարք պարգևատրումներ ու հավելավճարումներ սեզոնային տարբեր աշխատանքներ կատարելու համար։ Օրինակ, նախատեսված է մեխանիզատորներին և գարնանացան կուլտուրաների վրա աշխատող բանվորներին գարնանացանը կատարելու և լավ ծիլեր ստանալու դեպքում պարգևատրել 1,5 ամսվա աշխատավարձի չափով։ Նույն չափով և նույն նպատակով պարգևատրումներ են նախատեսված ցանքերի մշակման և բերքահավաքի համար։ Սովխոզի դիրեկտորին իրավունք է տրվում սեզոնային բանվորներին, այգեգործության բնագավառի աշխատողներին և արտադրանք չտվող այլ բանվոր-ծառայողներին պարգևատրել իրենց ստացած աշխատավարձի 20 տոկոսի չափով։ Այս բոլոր պարգևատրումները չպետք է գերազանցի 5—6 ամսվա աշխատավարձի գումարին։ Պրակտիկան ցույց է տվել, որ այդ պարգևատրումները կախված են շատ սուբյեկտիվ գործոններից և չեն նպաստում արտադրության վերելքին։ Իրականում այդպիսի պարգևատրումներ քիչ են լինում և եթե լինում են, ապա սուբյեկտիվ բնույթ են կրում։

Կանոնադրությամբ նախատեսվում է սովխոզի բանվորներին պարգևատրել նաև արտադրական ծախսերի կրճատման և ինքնարժեքի իջեցման համար (դաշտավարության բնագավառում տնտեսված գումարների 25, իսկ անասնաբուծության բնագավառում՝ 40 տոկոսը)։ Ինչ խոսք, որ լավ է նախատեսված, բայց պարգևատրումների այսպիսի բազմազանության և բարդության պայմաններում ոչ մի բանվոր չի կարող նախապես իմանալ, թե իր որոշակի աշխատանքով ինչ չափով կարող է ինքնարժեքը իջեցնել և ինչ չափով պարգևատրվել։

Լ. Ջավերնյաևան քննադատելով սովխոզներում աշխատանքի լրացուցիչ վարձատրության գոյություն ունեցող կարգը, ասում է. «Ներկայումս հիմնական վարձատրության հետ գոյություն ունի նաև մոտ 100 տարբեր հավելավճար, որը բավականին բարդացնում է վարձատրումը, աշխատողների համար այն դարձնելով քիչ հասկանալի» (Вопросы экономики, № 3, 1967 г.):

Նա իրավացի կերպով հարց է բարձրացնում՝ պարզեցնել վարձատրու-



digitised by A.R.A.R.@

թյունների սիստեմը այնպես, որ հասկանալի լինի բոլոր բանվորներին և խթանի արտադրության վերելքին։

Այնքան, որքան լրացուցիչ վարձատրությունները հիմնականում կապված են լրացուցիչ եկամուտների ստացման հետ, ուստի անհրաժեշտ է արմատավորել լրացուցիչ վարձատրության այնպիսի ճկուն սիստեմ, որը ճիշտ արտահայտի ու ճիշտ զուգակցի անհատական և հասարակական շահերը, այսինքն՝ գերպլանային արտադրանքի այն մասը պետք է տալ բանվորին, որով նա շահագրգռված լինի։ Մեր կարծիքով գերպլանային արտադրանքի ոչ թե 20, այլ 60—80 տոկոսը, այն էլ բնամթերային ձևով, պետք է տալ բանվորին, դուրս գալով այդ մասի արտադրության վրա կատարված ուղղակի ծախսումները։ Պրակտիկան ցույց է տվել, որ լրացուցիչ վարձատրության այսպիսի կարգը խիստ բարձրացնում է բանվորների նյութական շահագրգռվածությունը։ Նրանք ո՛չ մի ջանք չեն խնայում պլանային առաջադրանքների գերակատարման համար։ Այս ձևը ճիշտ է զուգակցում անհատական և հասարակական շահերը, բոլոր բանվորները հանդես են գալիս որպես արտադրության կազմակերպիչներ, արտադրության տերեր և մասնագետներ, այլևս չեն սպասում կարգադրությունների ու ցուցումների, յուրաքանչյուր բանվոր գործում է հողագործի իր խղճով։

Առանձին տնտեսագետների մոտ ավելորդ մտավախություն է առաջ գալիս, թե ինչպե՞ս կարելի է գերպլանային արտադրանքի 60—80 տոկոսը տալ բանվորին, մտածելով, թե այն շատ կլինի և հետո նրա արտադրության վրա կատարված ծախսերը զգալի են։ Հաշվումները ցույց են տալիս, որ եթե ընդհանուր աշխատավարձի ֆոնդի 25 տոկոսի փոխարեն տալիս ենք գերակատարված մթերքների 60—80 տոկոսը, ապա աշխատավորների վարձատրության ֆոնդը միակողմանի չի մեծանում, այլ համամասնորեն բարձրանում են թե՛ աշխատանքի արտադրողականությունը և թե՛ աշխատանքի վարձատրությունը։

Գերպլանային արտադրանքի այսպիսի բաշխման միջոցով բանվորների նյութական շահագրգռվածության բարձրացման, անհատական և հասարական շահերի միմյանց ճիշտ զուգակցման պրակտիկան լայն կերպով տարածված է նաև ժողովրդական դեմոկրատական երկրներում։ 1967 թվականի մարտին Մոսկվայում կայացած Սովետական Միության և այդ երկրների գյուղատնտեսության էկոնոմիկայի, գիտահետազոտական ինստիտուտների դիրեկտորների գիտական կոնֆերանսում Բուլղարիայի ներկայացուցիչ Գենչին, Հունգարիայի ներկայացուցիչ Մարտոն Յանոշը խոսելով նյութական շահագրգռվածության մասին, նշում էին, որ իրենց մոտ պետական գյուղատնտեսական ձեռնարկություններում նյութական շահագրգռվածության բարձրացման մասսայական տարածված ձևերից մեկը բանվորներին բնամթերային ձևով լրացուցիչ վարձատրություն տալն է։ Նրանք գերպլանային արտադրանքի 50—80 տոկոսը տալիս են բանվորներին բնամթերային ձևով՝ որպես լրացուցիչ վարձատրություն։

Մեզ մոտ բոլոր սովխոզները շահութաբեր դարձնելու և տնտհաշվարկի փոխադրելու համար պետք է կիրառել բազմապիսի միջոցառումներ, որոնք արդարացվել են պրակտիկայում։ Այսպես, օրինակ՝ Կամոյի շրջանի Սարուխանի սովխոզը մինչև 1963 թվականը յուրաքանչյուր հեկտարից ստանում էր 50—60 ցենտներ կարտոֆիլի բերք։ 1963 թվականից սկսած սովխոզի ղեկավարները ներքին կարգով համաձայնվում են եղած 120 հեկտար կարտոֆիլի



ցանքերը ամրացնել բանվորներին՝ հետևյալ պայմանով. բանվորները պետք է իրենց ամրացված հողակտորներից (հեկտարից 100 ցենտների հաշվով) բերքը հանձնեն սովխոզին, իսկ ավելին ստացածի 60 տոկոսը մնում է իրենց անվճար՝ որպես լրացուցիչ վարձատրություն։ Աշխատանքի վարձատրության այս ձևը անմիջապես փոխեց բանվորների վերաբերմունքը հողի նկատմամբ և մեկ հեկտարի միջին բերքատվությունը հասավ մինչև 200—250 ցենտների։

Հացառատի սովխոզում 1962 թվականից սկսած նման ձևով կազմակերպվեց բանջարաբույծների աշխատանքը, որի շնորհիվ մեկ հեկտարի բերքը 300 ցենտներից հասավ 710-ի։ Աշխատանքի կազմակերպման ու վարձատրման նույնպիսի միջոցառումներ կիրառվում են նաև հանրապետության շատ տնտեսություններում՝ ելնելով տեղի ուրույն պայմաններից։ Անհրաժեշտ է ուսումնասիրել այս բնագավառում կատարված փորձը և այն տարածել բոլոր տնտեսություններում։

Ամփոփելով սովխոզներում աշխատանքի վարձատրության մեր կողմից առաջարկվող փոփոխությունները, բանվորների աշխատանքի վարձատրությունը հիմնականում բաղկացած կլինի երկու մասից.

Առաջին մասը վերակառուցված, 2—3 կարգյա տարիֆներով ու ճշտված արտադրական նորմաներով հաշվարկված գործավարձային աշխատավարձն է, որը բանվորները ստանալու են ամեն ամիս ընթացիկ աշխատանքներ կատարելու համար։ Այս աշխատավարձը իր մեջ հիմնականում ամփոփում է բանվորի կատարած աշխատանքի քանակական, մասամբ և որակական կողմը։ Վարձատրության այս մասը արտադրության վերելքի գործում կամ գերպլանային արտադրանք ստեղծելու հարցում համեմատաբար պասիվ դեր է կատարում։

Երկրորդ մասը աշխատանքի լրացուցիչ վարձատրությունն է (դրամական կամ բնամթերային)։ Նպատակահարմար է պլանային առաջադրանքների կատարման համար՝ արտադրանքի 5—10 տոկոսը, իսկ գերակատարման համար՝ գերակատարվածի 60—80 տոկոսը տալ արտադրողներին՝ որպես լրացուցիչ վարձատրություն։ Դա աշխատանքի վարձատրության այն ակտիվ մասն է, որից կախված է արտադրության վերելքի ապահովման հարցը։ Վարձատրության այս կարգը բանվորի համար շատ պարզ, հասկանալի ու շահագրգռեցուցիչ է։ Բանվորը տարվա սկզբին ստանալով պլանը, անմիջապես հաշվում է, թե ինքը ինչ կարող է արտադրել և դրանից ինչ կստանա։ Վարձատրության այս մասում է, որ ամփոփվում է անձնական և հասարակական շահերի միասնությունը։

Մեր կողմից քննարկման ներկայացված վերոհիշյալ միջոցառումները հավասարապես ընդունելի չեն կարող լինել բոլոր տնտեսությունների համար։ Այն կարող է գերազանցապես ընդունելի և օգտակար լինել Սևանի ավազանի շրջանների, Հայկական ՍՍՀ լեռնային մյուս շրջանների սովխոզների համար, որոշակի կերպով այն համապատասխանեցնելով տեղի պայմաններին։

Կիրառելով վերոհիշյալ և համանման միջոցառումներ, հնարավոր է բոլոր սովխոզները դարձնել շահութաբեր և պայմաններ ստեղծել տնտհաշվարկի անցնելու համար։



digitised by A.R.A.R.@

# ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՀԱՄԱՐ

## ԹԱՄԱՐԱ ՏԵԼԵԳԱՆՈՎԱ

Տնտեսավարման նոր սիստեմով հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման ուղղությամբ ձեռնարկված միջոցառումների մի զգալի մասը պատկանում է ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման ցուցանիշների բարելավմանը։

Տնտեսական պրակտիկայում երկար տարիներ օգտագործվող համախառն արտադրանքի ու ինքնարժեքի փոխարեն ՍՄԿԿ Կենտկոմի (1965 թ.) սեպտեմբերյան պլենումը որոշեց կիրառել առավել օբյեկտիվ ցուցանիշներ՝ իրացված արտադրանքը և եկամտաբերությունը։

Կենսագործելով կուսակցության Կենտկոմի որոշումները, Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության կարի արդյունաբերության ձեռնարկությունները վերջին ժամանակաշրջանում որոշակի գործ են կատարել արտադրանքի իրացման և եկամտաբերության բարձրացման լծակների ճիշտ օգտագործման ուղղությամբ։ 1965 թվականին հանրապետության կարի արդյունաբերության ձեռնարկությունները, ամբողջությամբ վերցրած, արտադրանքի իրացման պլանը գերակատարեցին 2,5 տոկոսով, բացի կարի № 5 և № 6 ֆաբրիկաներից, որոնք որոշ չափով պլանը թերակատարեցին։ 1966 թվականին բոլոր ֆաբրիկաները, առանց բացառության, գերակատարեցին արտադրանքի իրացման պլանները։ Դրա շնորհիվ բոլոր ճյուղերում արտադրանքի իրացումը, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց 12,3 տոկոսով։

Կարի ֆաբրիկաներում արտադրանքի իրացման բարելավումը հիմնականում արդյունք է այն բանի, որ դրանցից մի քանիսը 1965 թվականի հուլիսի մեկից առևտրական կազմակերպությունների հետ անցան ուղղակի տնտեսական կապերի։ Դրան հավանություն տվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի վեցերորդ գումարման հինգերորդ սեսիան։ Սեսիայի որոշման մեջ ասված է. «Որպեսզի ձեռնարկություններն ավելի լավ զգան շուկայի կոնյունկտուրան և գնորդների պահանջմունքների փոփոխությունները, պետք է լայնորեն կիրառեն ձեռնարկությունների (միավորումների) և դրանց արտադրանքը վաճառող խանութների միջև անմիջական կապ հաստատելու պրակտիկան»։

Արտադրանքի իրացման նոր ձևի ներգործությունը կարի արդյունաբերության ձեռնարկություններում արդեն զգացվում է։ Դա առանձնապես դրսևորվել է № 1 ֆաբրիկայում, որն առևտրական կազմակերպությունների հետ ուղղակի պայմանագրով աշխատող ձեռնարկություններից մեկն է և կարճ ժամանակամիջոցում բարելավել է իր գործունեությունը։ Ֆաբրիկան 1964 թվականին իրացման պլանը թերակատարեց 3,8 տոկոսով և պլանավորված 77 հազար ռուբլի շահույթի փոխարեն տարին փակեց 127 հազար ռուբլի վնասով։ 1965 թվականին անցնելով արտադրանքի իրացման նոր ձևին, նա իրացման պլանը գերակատարեց 4,3 տոկոսով և պլանով նախատեսված 77 հազարի դիմաց ստացավ 144 հազար ռուբլու շահույթ։ 1966 թվականին այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմեցին 11,5 տոկոս, 161,0 հազար և 305,0 հազար ռուբլի։ Թեև կարի արտադրության ճյուղերում, ամբողջությամբ վերցրած, արտադրանքի իրացման պլանը տարեցտարի գերակատարվում էր, բայց 1965 թվականի վերջին ֆաբրիկայում 310,6 հազար ռուբլու պատրաստի արտադրանք էր կուտակված։ Եթե դրանք իրացվեին նույն տարում, ապա իրացման



պլանը 2,5-ի փոխարեն կգերակատարվեր 3,4 տոկոսով։ Իրացման նոր ձևի առավելությունը ակնբախ կերպով երևում է հետևյալից. 1966 թվականին, երբ կարի արդյունաբերության բոլոր ձեռնարկություններն անցան առևտրական կազմակերպությունների հետ արտադրանքի իրացման ուղղակի կապին, ֆաբրիկաներում գրեթե վերացվեցին պատրաստի արտադրանքի գերնորմատիվային կուտակումները, որի շնորհիվ իրացման պլանը գերակատարվեց վերը նշված չափով (12,3 տոկոս)։

Կարի արդյունաբերության ճյուղի արտադրանքի թողարկումը պլանավորվում է, ելնելով առևտրական ձեռնարկությունների հետ կնքած պայմանագրերից։ Այդ ճյուղի տնտեսական գործունեության արդյունքները գնահատելիս առաջնությունը տրվում է իրացվող արտադրանքի ծավալին։ Այս ամենի շնորհիվ բարձրացել է ֆաբրիկաների կոլեկտիվների պատասխանատվությունն արտադրանքի որակի համար։ Իրացման պլանի, հետևապես և շահույթի պլանի կատարումը մեծ մասամբ պայմանավորված է թողարկվող արտադրանքի որակով, քանի որ ֆաբրիկան դրա իրացումից շահույթ կստանա։ Բայց երբեմն պատահում են դեպքեր, երբ իրացված արտադրանքի որակը չի համապատասխանում տեխնիկական նորմատիվային փաստաթղթերի պահանջներին։ Այսպես, օրինակ. կարի ֆաբրիկաներն առաջին տեսակի արտադրանքի թողարկման 1965 թվականի պլանը կատարել, իսկ շատ ձեռնարկություններ նույնիսկ գերակատարել էին, մինչդեռ առևտրական կազմակերպությունները շարունակում էին ստանալ ստանդարտներին և տեխնիկական պայմաններին չհամապատասխանող ապրանքներ։ Դա երևում է ստորև բերված աղյուսակից.

Հայգլխհագուստառ բազայի կարի արտադրանքի հսկիչ-ստուգման արդյունքները 1965 թվականին *(ըստ ձեռնարկությունների)*

| | Ստուգված արտադրանքը (հատով) | Դրանցից | |
|---|---|---|---|
| | | իջեցվել են ցածր տեսակ (հատով) | վերադարձվել են շտկման (հատով) |
| կարի № 1 ֆաբրիկա . . . . . . . . . . | 3226 | 132 | 477 |
| » № 2 » . . . . . . . . . . | 64978 | 2531 | 5322 |
| » № 3 » . . . . . . . . . . | 3280 | 216 | 10 |
| » № 5 » . . . . . . . . . . | 1976 | 126 | 113 |
| » № 6 » . . . . . . . . . . | 3830 | 27 | 1743 |
| «Կրասնի շվեյնիկ» կարի ֆաբրիկա . . . . | 1900 | 103 | 135 |
| Կիրովականի կարի ֆաբրիկա . . . . . . . | 3660 | 176 | 937 |

Աղյուսակը ցույց է տալիս, որ 1965 թվականի տվյալներով կարի արդյունաբերության ձեռնարկությունների կողմից առաջին տեսակի արտադրանքի թողարկման պլանի կատարումը չի համապատասխանում իրականությանը։ Կարի № 2 ֆաբրիկան, օրինակ, առաջին տեսակի արտադրանքի թողարկման պլանը թեև գերակատարել էր 1,3 տոկոսով, բայց ստուգված 64908 հատ արտադրանքից 5322-ը վերադարձվել էր՝ թերությունները վերացնելու համար, իսկ 2531-ը իջեցվել էր ցածր տեսակի։ Կարի № 5 ֆաբրիկայում 1976 հատ ստուգված արտադրանքից 126-ը ցածր տեսակի էին, իսկ 113-ը վերադարձվել էր թերությունները վերացնելու համար, մինչդեռ, ըստ տվյալների, ֆաբրիկան առաջին տեսակի արտադրանքի թողարկման պլանը գերակատարել էր 0,8%-ով։

Նույն երևույթը նկատվել է նաև 1966 թվականին։ Ճյուղում առաջին տե-



digitised by A.R.A.R.@

տակի արտադրանքի թողարկման պլանը գերակատարվել է 1,9 տոկոսով։ Այնուհանդերձ կարի № 1 ֆաբրիկային վերադարձվել է շտկման 8686 հատ արտադրանք, № 3-ին՝ 7310, Կիրովականի կարի ֆաբրիկային՝ 6728 հատ և այլն։ Սրա, ինչպես նաև ոչ-ճիշտ դրոշմավորման հետևանքով ձեռնարկությունները առևտրական կազմակերպություններին վճարել են մոտ 60 հազար ռուբլու տուգանք։

Որպեսզի կանխվի սահմանված ստանդարտներին և տեխնիկական պայմաններին չհամապատասխանող արտադրանքի առաքումը առևտրական կազմակերպություններին, անհրաժեշտ է տվյալ ձեռնարկությունում ուժեղացնել տեխնիկական հսկողության բաժինների աշխատանքը։ Նորմալ չի կարելի համարել այն երևույթը, որ ֆաբրիկաներում մինչև օրս տեխնիկական հսկողության բաժիններն ապահովված չեն որակյալ աշխատողներով։ № 1 կարի ֆաբրիկայում, օրինակ, ՏՎԲ-ի պետը չունի լրիվ միջնակարգ կրթություն, № 2, № 3 և № 5 կարի ֆաբրիկաներում ՏՎԲ-ի պետերն ունեն միջնակարգ մասնագիտական կրթություն, № 6 և «Կարմիր շվեյնիկ» կարի ֆաբրիկաներում նրանք ունեն ոչ մասնագիտական միջնակարգ կրթություն։

Արտադրանքի որակի բարելավման գործում մեծ նշանակություն ունի ձեռնարկության կոլեկտիվի նյութական խրախուսումը։ Հայտնի է, որ որքան բարձր է արտադրանքի որակը, այնքան մեծ է պահանջարկը, այն լավ է իրացվում և ձեռնարկությունն ավելի շատ շահույթ է ստանում։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան նյութական խրախուսման չափը պայմանավորված է իրացման պլանի կատարմամբ և արտադրության եկամտաբերության բարձրացմամբ։ Ձեռնարկության եկամտաբերությունն որոշվում է շահույթի հարաբերությամբ հիմնական ֆոնդերի ու շրջանառու միջոցների նկատմամբ։

ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության կարի ձեռնարկությունների եկամտաբերության տվյալների վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ ցուցանիշը (ճյուղի մասշտաբով), ամբողջությամբ վերցրած, բարձրանալու տենդենց ունի։ Սակայն, ըստ առանձին տարիների, այն տարբեր ձեռնարկություններում տատանվում է։ Այսպես, կարի № 1 ֆաբրիկան 1962 թվականին եկամտաբեր չէր։ 1963 թվականին բարելավվեց իր ֆինանսական դրությունը և նրա հիմնական ֆոնդերի ու շրջանառու միջոցների մեկ ռուբլուն ընկնող եկամտաբերությունը կազմեց 6 կոպեկ։ 1964 թվականին ձեռնարկության աշխատանքի արդյունքը նորից վատացավ և պլանավորված շահույթի փոխարեն ֆաբրիկան տարին փակեց վնասով։ Իսկ 1965 և 1966 թվականներին, երբ ֆաբրիկան առևտրական կազմակերպությունների հետ ուղղակի կապի մեջ էր, պլանավորվածից 2 անգամ ավելի շահույթ ստացավ։ Կարի № 3 ֆաբրիկան 1962 թվականին աշխատում էր վնասով. բարելավելով իր գործունեությունը, 1963 թվականին հիմնական ֆոնդերի և շրջանառու միջոցների մեկ ռուբլու հաշվով տարին փակեց 21 կոպեկ եկամտաբերությամբ, 1964-ին՝ 81 կոպեկ, 1965 թվականին եկամտաբերությունը իջավ 40 կոպեկի, իսկ 1966-ին բարձրացավ մինչև 62 կոպեկի։

Այդ վիճակն ավելի պարզ երևում է ներքոհիշյալ աղյուսակում։

Չնայած առանձին ֆաբրիկաներում եկամտաբերության որոշ տատանումներին, այնուամենայնիվ, կարի արտադրության ճյուղի բոլոր ձեռնարկությունները 1966 թվականին եկամտաբեր էին։ Ըստ որում, ամբողջ ճյուղի գծով եկամտաբերությունը կարող էր ավելի բարձր լինել։ Սակայն ֆաբրիկաներում



Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության կարի արտադրության ճյուղի եկամտաբերության ցուցանիշները

| | Հիմնական ֆոնդերի ու շրջանառու միջոցների մեկ ռուբլուն ընկնող շահույթը (կոպեկներով) | | | | |
|---|---|---|---|---|---|
| | տարիներ | | | | |
| | 1962 | 1963 | 1964 | 1965 | 1966 |
| Ամբողջ ճյուղի գծով . . . . . | 19 | 25 | 41 | 41 | 51 |
| Կարի № 1 ֆաբրիկա . . . . . | — | 6 | — | 15 | 20 |
| » № 3 » . . . . . . . | 25 | 15 | 40 | 32 | 36 |
| » № 3 » . . . . . . . | — | 21 | 81 | 40. | 62 |
| » № 4 » . . . . . . . | 32 | 53 | 79 | 98 | 1 . 14 |
| » № 5 » . . . . . . . | — | 5 | 28 | 27 | 25 |
| » № 6 » . . . . . . . | 48 | 52 | 56 | 68 | 78 |
| «Կրասնի շվեյնիկ» . . . . . | 53 | 91 | 99 | 88 | 96 |
| Կիրովականի կարի ֆաբրիկա | 33 | 28 | 36 | 24 | 46 |

ապրանքանյութական արժեքների գների իջեցումը և վճարված տույժերի զգալի գումարն ազդեցին շահույթի վրա։

Ֆաբրիկան արտադրանքի իրացումից որքան շատ շահույթ ստանա, այնքան մեծ կլինի նրա խրախուսման ֆոնդը։ Նոր պայմաններում ձեռնարկության նյութական շահագրգռվածության գործում հիմնական ուղղությունը, անշուշտ, այդ ֆոնդն է, որը հնարավորություն կընձեռի բարձրացնելու բանվորների միջին աշխատավարձը։

Տնտեսավարման նոր սիստեմին անցած ձեռնարկություններում միջին ամսական աշխատավարձի աճը հիմնականում ձեռք է բերվել նյութական խրախուսման ֆոնդից՝ պարգևատրումների վճարման հաշվին։ 1966 թվականի 10 ամսվա ընթացքում, 1965 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատ, երկրի արդյունաբերական ձեռնարկություններում միջին ամսական աշխատավարձն աճել է 4,6 տոկոսով։

Հայտնի է, որ թեթև արդյունաբերության մեջ ամենացածրը կարի արտադրության բանվորների աշխատավարձն է. այն տեքստիլ արդյունաբերության միջին ցուցանիշից ցածր է 7,8, կաշվի-կոշիկի ճյուղի միջինից՝ 13,2 տոկոսով, իսկ արդյունաբերության մյուս ճյուղերի միջինից՝ 15—20 տոկոսով։ Հիմնականում դրանով էլ բացատրվում է աշխատողների մեծ հոսունությունն արտադրության այս ճյուղում, որը կարի արդյունաբերության մեջ կազմում է 20—22 տոկոս։ Դա բացասաբար է անդրադառնում թողարկվող արտադրանքի որակի վրա, որովհետև որակավորված բանվորների փոխարեն աշխատանքի են անցնում դեռևս որակավորում չունեցողները։ Այդ է պատճառը, որ 1966 թվականին կադրերի պատրաստման վրա կատարվել են զգալի ծախսեր՝ շուրջ 19 հազար ռուբլի։

Միջին աշխատավարձը, նյութական շահագրգռվածությունը և արտադրանքի որակը բարձրացնելու նպատակով 1965 թվականին կարի № 3 և № 4 ֆաբրիկաները փորձնական կարգով փոխադրվեցին աշխատանքի վարձատրման ժամանակավարձային պարգևատրման սիստեմին, որը բանվորների համար պահպանում է գործավարձի տարիֆային դրույքը, իսկ առաջին տեսակի արտադրանք թողարկելու համար պարգև է սահմանվում դրույքի 40 տոկոսի չափով։ Կարի № 3 ֆաբրիկայի փորձը ցույց տվեց, որ երբ արտադրության



digitised by A.R.A.R.@

կազմակերպումն անհրաժեշտ մակարդակի վրա չէ, աշխատավարձի վճարման ժամանակավարձային-պարգևատրման նման սիստեմի դեպքում աշխատանքի արտադրողականությունն իջնում է։ Ահա թե ինչու եռամսյա փորձից հետո ֆաբրիկան նորից փոխադրվեց գործարքային աշխատավարձի։

№ 4 ֆաբրիկայում մինչև այժմ աշխատում են ժամանակավարձային պարգևատրման սիստեմով և եթե առաջին տեսակի արտադրանքի պլանը 1965 թվականին ֆաբրիկան գերակատարեց 1,7 տոկոսով, բայց դրա հետ միասին աշխատանքի արտադրողականությունը, 1964 թվականի համեմատությամբ, իջավ 14,3 տոկոսով։ Դրա հետևանքով ֆաբրիկան ունեցավ աշխատավարձի գերածախս (3 տոկոս), իսկ արտադրության ծախսերը բարձրացան 7,5 տոկոսով։

Այդ տեսակետից ուշադրության է արժանի Տիրասպոլի կարի ֆաբրիկայի աշխատանքի փորձը։ Այդ ֆաբրիկայում կիրառում են պարգևատրման փորձնական ձևը, ըստ որի բանվորի աշխատավարձը գոյանում է 3 մասից. առաջին. պահպանվում է գործավարձի տարիֆային դրույքը, երկրորդ. առաջին տեսակի արտադրանքի թողարկման համար տրվելիք պարգևը և երրորդ. արտադրանքի որակի պլանը գերակատարելու համար տրվելիք պարգևը։ Պարգևատրման այս կարգով խստորեն հաշվի է առնվում նաև արտադրանքի թողարկման վրա բանվորի ծախսած ժամանակը։ Դա հնարավորություն է տալիս արտադրանքի որակի բարձրացումը հակասության մեջ չդնել աշխատանքի արտադրողականության հետ։ Ժամանակավարձային պարգևատրման այս կարգի արմատավորումը նպաստեց հիշյալ ֆաբրիկայի տեխնիկա-տնտեսական գրեթե բոլոր ցուցանիշների բարելավմանը։ Այսպես, 1965 թվականի 9 ամսում, 1964 թվականի համապատասխան ժամանակամիջոցի համեմատ, արտադրության ծավալը (հաշված նորմատիվային մշակման արժեքով) ավելացավ 10,8, շահույթը՝ 26,2 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 6,2 տոկոսով։ Զգալիորեն բարելավվեց նաև արտադրանքի որակը։ Եթե 1964 թվականի առաջին կիսամյակում ֆաբրիկան ետ ստացավ շուրջ 200000 միավոր արտադրանք, ապա 1965 թվականի առաջին կիսամյակում այն իջավ 25 տոկոսով։ 1965 թ. 9 ամսում առաջին տեսակի արտադրանքի տեսակարար կշիռը հասավ 95,6 տոկոսի, 1964 թ. նույն ժամանակաշրջանի 94,5 տոկոսի դիմաց։

Աշխատանքի վարձատրության այդ սիստեմի կիրառումը հնարավորություն կընձեռի բարձրացնել բանվորի միջին աշխատավարձը, միաժամանակ մեծանա աշխատողների շահագրգռվածությունն արտադրանքի որակական ցուցանիշների կատարման ու գերակատարման գործում, որը, անշուշտ, դրական ներգործություն կունենա արտադրանքի իրացման և ձեռնարկության եկամտաբերության բարձրացման վրա։

Այսպիսով, ուսումնասիրությունները հաստատում են, որ ՀՍՍՀ կարի արտադրության ճյուղում կան արտադրանքի որակի բարձրացման չօգտագործված շատ ռեզերվներ, որոնց մոբիլիզացումը հնարավորություն կընձեռի բարձրացնելու թողարկվող արտադրանքի իրացումը, ստանալու մեծ շահույթ և ձեռնարկության խրախուսման ֆոնդ ստեղծելու հաշվին բարձրացնելու աշխատողների նյութական շահագրգռվածությունը, հասնելու արտադրության արդյունավետության բարձրացման, ձեռնարկության ողջ կոլեկտիվի աշխատանքի որակական ու քանակական ցուցանիշների բարելավման։

Այդ հարցի բարեհաջող լուծմանը կնպաստի պլանավորման ու արտադրության տնտեսական խթանման նոր սիստեմի հետևողական ներդնումը։

---

# ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՈՐԱԿՅԱԼ ԱՇԽԱՏՈՒԺԸ

ԱԼ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Սոցիալիստական արտադրահարաբերություններն ստեղծում են բոլոր անհրաժեշտ պայմանները բարձր որակավորում ունեցող աշխատողների գիտելիքները, փորձն ու կարողությունները ծառայեցնելու արտադրության կատարելագործմանն ու նրա ցուցանիշների բարելավմանը։ Սակայն պրակտիկայում այդ հնարավորությունները միշտ լրիվ չեն օգտագործվում։

Տեխնիկական առաջադիմությունն ու արտադրական ապարատի մշտական կատարելագործումը պահանջում են, որպեսզի բարձրորակ մասնագետների աշխատանքն օգտագործվի ինժեներա-տեխնիկական գործունեության վճռող օղակներում։ Սակայն շատ ձեռնարկություններում հնարավոր չէ տարբերել ինժեների և տեխնիկի, երբեմն նաև ինժեների ու բանվորի ֆունկցիաները։ Հաճախ բարձրագույն կրթությամբ ինժեներներն այնպիսի աշխատանքներ են կատարում, որոնք առանձնակի պատրաստականություն չեն պահանջում։ Ինժեներա-տեխնիկական անձնակազմի աշխատաժամանակի ֆոնդի վերլուծությունը ցույց է տալիս, որ տեխնոլոգ-կոնստրուկտորները, տնտեսագետներն իրենց աշխատաժամանակի միայն 50—60 տոկոսն են տրամադրում հիմնական ֆունկցիաների կատարմանը։ Ժամանակի մնացած մասը ծախսվում է ամեն տեսակ հաշվետվություններ, տեղեկանքներ կազմելու, ձևեր ու բլանկներ լրացնելու վրա, այսինքն՝ ինժեներա-տեխնիկական ուժերն օգտագործվում են ոչ ռացիոնալ։ Մյուս կողմից՝ ինչպես ցույց են տալիս տվյալները, ինժեներա-տեխնիկական անձնակազմի մեջ մեծ տեսակարար կշիռ են կազմում պրակտիկները՝ համապատասխան մասնագիտական կրթություն չունեցողները։ (Տես հաջորդ էջի աղյուսակը)։

Ինչպես տեսնում ենք, պրակտիկների տեսակարար կշիռը չի կրճատվում, այլ աճում է։

Արդյունաբերության առանձին ճյուղերում պրակտիկների տեսակարար կշիռն ավելի բարձր է։ Անտառային, թղթի և փայտամշակման արդյունաբերության մեջ (1966 թվականի տվյալներով)՝ 53,6 տոկոս, շինանյութերի՝ 41,9 տոկոս, թեթև արդյունաբերության մեջ՝ 52,3 տոկոս։ Ավելին, արդյունաբերության որոշ ճյուղերում պրակտիկների տեսակարար կշիռը մեծացել է. մեքենաշինության ու մետաղամշակման մեջ այն 1966 թվականին հասել է 39,2 տոկոսի (1963 թվականի 33,0-ի դիմաց), քիմիական արդյունաբերության մեջ՝ 18,9—23,2 տոկոս և այլն։ Մեծ է պրակտիկների տեսակարար կշիռը ինժեներների շրջանում։ 1966 թվականին ինժեներներից բարձրագույն կրթություն ունեին 50, միջնակարգ մասնագիտական կրթություն՝ 27 տոկոսը, իսկ մնացածները պրակտիկներ էին։



digitised by A.R.A.R.@

Հանրապետության արդյունաբերության մեջ մասնագետների կազմը, ըստ կրթության

(տոկոսներով)

| 1/XII-1963 թ. | | | | 15/XI-1966 թ. | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Ընդամենը մասնագետ | այդ թվում | | | Ընդամենը մասնագետ | այդ թվում | | |
| | բարձրագույն կրթութ. | միջնակ. մասնագիտ. կրթութ. | պրակտիկներ | | բարձրագույն կրթութ. | միջնակ. մասնագիտ. կրթութ. | պրակտիկներ |
| 100 | 32,4 | 32,0 | 35,6 | 100 | 30,1 | 31,3 | 38,6 |

Ի՞նչն է պատճառը, որ բարձրագույն կրթությամբ ինժեներներ ու տեխնիկներ պահանջող որոշ պաշտոններ զբաղեցնում են պրակտիկները: Սրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ Հայաստանում ինժեներա-տեխնիկական կադրերի պատրաստման գործը սկսվել է միայն երեսնական թվականներին և ծավալվել հատկապես Հայրենական մեծ պատերազմից հետո: Մյուսն այն է, որ կադրեր պատրաստող ուսումնական հաստատությունները լիովին հաշվի չեն առնում ժողովրդական տնտեսության այժմյան պահանջները:

Այս ամենի հետևանքով արտադրական պրոցեսի վրա ինժեներա-տեխնիկական աշխատողների ներգործության արդյունավետությունը չի համապատասխանում նրանց թվի հետ: Նրանց աշխատանքի արդյունավետությունը նվազում է երկուստեք. մի կողմից՝ արտադրա-տեխնիկական և կազմակերպչական հարցերը լուծվում են մասնագետների սահմանափակ խմբի միջոցով, մյուս կողմից՝ բարձրագույն կրթությամբ մասնագետները ժամանակի մեծ մասը օգտագործում են ոչ-մասնագիտական գիտելիքներ պահանջող աշխատանքներում: Պարզ է, որ ինժեներա-տեխնիկական աշխատանքներում զբաղված պրակտիկներն իրենց գիտելիքների սահմանափակության հետևանքով արդյունավետ չեն ներգործում արտադրական պրոցեսի վրա:

Լուրջ մտահոգություն է պատճառում գյուղատնտեսության մասնագետների ոչ ռացիոնալ օգտագործումը. նրանց մեծ մասն օգտագործվում է ոչ գյուղատնտեսական աշխատանքներում: Այդ են վկայում ստորև բերվող տվյալները: (Տես 95-րդ էջի աղյուսակը):

Աղյուսակից երևում է, որ գյուղատնտեսական բարձրագույն կրթությամբ մասնագետների ավելի քան 60 և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների 31,2 տոկոսն զբաղված է ոչ-գյուղատնտեսական ճյուղերում: Թերևս սրանց միայն մի մասի զբաղվածությունն այլ ճյուղերում օրինաչափ է (ուսումնական հաստատություններում կադրերի պատրաստման և գիտական աշխատանքներով զբաղվածները), իսկ մնացածների զբաղվածությունը այդ ճյուղերում դժվար թե բացատրվի ժողովրդատնտեսական անհրաժեշտությամբ: Ավելի շուտ այն ունի որոշ պատճառներ: Գաղտնիք չէ, որ նրանցից շատերը չեն գնում շրջաններ: Դրա գլխավոր պատճառն այն է, որ գյուղական որոշ վայրեր իրենց կուլտուր-կենցաղային պայմաններով խիստ ետ են մնում քաղաքից, զգալի է նաև աշխատավարձի տարբերությունը և այլն:



Գյուղատնտեսական պրոֆիլի մասնագետների բաշխումը ըստ աշխատանքի վայրի

(1966 թ. նոյեմբերի 15-ի դրությամբ, տոկոսներով)

| | Բարձրագույն կրթությամբ | Միջնակարգ-մասնագիտական կրթությամբ |
|---|---|---|
| Աշխատում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, | 100 | 100 |
| այդ թվում՝ | | |
| Գյուղատնտեսության մեջ | 38,1 | 68,8 |
| Արդյունաբերության մեջ | 10,8 | 10,8 |
| Շինարարության մեջ | 0,8 | 1,4 |
| Ուսումնական հաստատութ. և կուլտ.-լուս. հիմնարկն. | 12,8 | 4,0 |
| Գիտական հիմնարկներում | 17,3 | 1,8 |
| Այլ աշխատանքներում | 20,2 | 13,2 |

Գյուղատնտեսության մասնագետներին այլ ճյուղերում օգտագործելու պատճառով գյուղի ղեկավար աշխատողների ու մասնագետների մեջ պրակտիկները զգալի տեսակարար կշիռ են կազմում: Այսպես, ըստ մասնագետների հաշվառման տվյալների, 1966 թվականին հանրապետության սովխոզների ղեկավար աշխատողների ու մասնագետների 37,0 տոկոսը բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն չունեին: Կոլտնտեսություններում այդ թիվն ավելի մեծ էր (53,8 տոկոս): Այստեղից պարզ է, թե որքան սուր է դրված որակյալ մասնագետներով գյուղն ապահովելու հարցը: Այն լուծելու համար գյուղատնտեսության մասնագետների պատրաստումն ընդլայնելուց և նրանց նպատակահարմար ու ռացիոնալ օգտագործելուց բացի, մեծ նշանակություն ունի գյուղական վայրերում բնակչության կենսամակարդակի բարձրացումն ու նրանց կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը:

Գյուղը մասնագետներով ապահովելու գործին մեծապես կարող է նպաստել գյուղատնտեսության մասնագետների նյութական շահագրգռվածության բարձրացումը: Դրան կարելի է հասնել մարդկանց նյութական շահագրգռության ապահովմամբ: Հայտնի է, որ շատ դեպքերում գյուղատնտեսության մեջ զբաղված որակյալ մասնագետի վարձատրության չափն ավելի ցածր է, քան վարչա-կառավարչական հիմնարկում կամ ոչ-արտադրական այս կամ այն ճյուղում զբաղված համապատասխան որակավորում ունեցող մասնագետներինը: Պարզ է, որ այս դեպքում գյուղատնտեսության մասնագետները կձգտեն զբաղմունք գտնել նման ոլորտներում:

Մասնագետների վարձատրության պրակտիկայում կան թերություններ, որոնք չեն նպաստում նրանց ռացիոնալ օգտագործմանը, ինժեներներին ու տեխնիկներին չեն շահագրգռում բարձրացնելու իրենց որակավորումը: Այսպես, բավական է որևէ մեկը զբաղեցնի ինժեներական այս կամ այն հաստիքը, և նա, անկախ կրթությունից, որակավորումից, աշխատանքային ստաժից, ստանում է այնքան աշխատավարձ, որքան միևնույն պաշտոնում երկար տարիներ աշխատած, բարձրագույն կրթությամբ որակյալ մասնագետը: Վարձատրության այս ձևը չի կարող խթանել դիպլոմավորված մասնագետներին՝ իրենց աշխատանքի արդյունքների, որակավորման բարձրացման մեջ: Մեր կարծիքով, մասնագետների վարձատրության սիստեմը պետք է կազմակերպել այնպես, որ այն ուղղակի կախման մեջ դրվի ո՛չ թե զբաղեցրած պաշտոնից, այլ արտադրությանը տված օգուտից, մասնագետի որակավորումից, աշխատանքային ստաժից և այլն: Դիպլոմավորված մասնագետների աշխատանքի



digitised by A.R.A.R.@

նման խրախուսումը պրակտիկներին կմղի մասնագիտական կրթություն ստանալու:

Մասնագետների օգտագործման վիճակը նախանձելի չէ շինարարության մեջ: 1966 թվականին շինարարական կազմակերպություններում ղեկավար աշխատողներից բարձրագույն մասնագիտական կրթություն ունեին 32,5, միջնակարգ մասնագիտական՝ 36,7 տոկոսը, պրակտիկներ էին 30,8 տոկոսը:

Պրակտիկայում նկատվում է նաև հակառակ երևույթ. բարձրագույն կրթություն ունեցող որոշ մասնագետներ զբաղված են այնպիսի աշխատանքներում, որոնք չեն պահանջում նույնիսկ միջնակարգ կրթություն: Տնտեսագիտական գրականության մեջ նման փաստերը տարբեր հեղինակներ մեկնաբանում են տարբեր կերպ. երբեմն նշվում է, որ ինժեներների օգտագործումը այսպես կոչված «բանվորական աշխատանքներում» ապացուցում է ֆիզիկական ու մտավոր աշխատանքների միջև եղած տարբերությունների վերացումը: Ինչ խոսք, որ երբ արտադրության մեջ արմատավորվում է այնպիսի տեխնիկա ու տեխնոլոգիա, որ բանվորից պահանջում է ինժեներա-տեխնիկական գիտելիքներ, նախկինում բանվորի կատարած աշխատանքը փոխարինվում է ինժեների աշխատանքով: ՀՍՍՀ ԿՎՎ-ի համապատասխան հետազոտության նյութերը ցույց են տալիս, որ հանրապետությունում ինժեներների օգտագործումը բանվորական աշխատանքներում բնավ նշված երևույթի արդյունքը չէ:

Բարձրագույն կրթությամբ մասնագետները բանվորական աշխատանքներում, ըստ պատճառների
(տոկոսներով ընդհանուրի նկատմամբ)

| Ընդամենը մասնագետ, որոնք աշխատում են որպես բանվորներ | Այդ թվում ըստ պատճառների | | | | |
|---|---|---|---|---|---|
| | ազատ տեղի բացակայություն, ըստ մասնագիտության | տվյալ բնակավայրում համապատասխան մասնագիտութ. աշխատանքի բացակայութ. | ավելի բարձր աշխատավարձ | առողջական վիճակի պատճառով | այլ պատճառներ |
| 100 | 13,6 | 38,5 | 16,6 | 5,8 | 25,5 |

Այստեղից չի կարելի հետևցնել, թե ինժեներներին որպես բանվորներ օգտագործելը մտավոր ու ֆիզիկական աշխատանքների միջև եղած տարբերության վերացման արտահայտություն է: Այդպիսի հետևությունն անհիմն է:

Ինժեներա-տեխնիկական աշխատանքի ռացիոնալ կազմակերպման և օգտագործման համար անհրաժեշտ է կոնկրետ, լայն հետազոտությունների միջոցով պարզել առկա թերությունների պատճառները, կոնկրետ միջոցառումներ մշակել դրանց վերացման համար, ճշտել մասնագետների լրացուցիչ պահանջարկը, կատարելագործել նրանց պատրաստման, բաշխման պլանավորումը և այլն:

Որակյալ մասնագետների ոչ-ռացիոնալ օգտագործման մասին է վկայում հանրապետության արդյունաբերության մեջ նրանց և տեխնիկների, ինչպես նաև շարքային ծառայողների թվի հարաբերակցության անհամապատասխանությունը: Բարձր և միջին որակավորում ունեցող մասնագետների միջև առավել նորմալ հարաբերակցությունը պետք է լինի 1 : 4 (տե՛ս «Экономическая газета», 15 сентября, 1965 г., стр. 9), այսինքն՝ 1 բարձրագույն կրթությամբ մասնագետին պետք է ընկնի 4 միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող: Սակայն մեր հանրապետության արդյունաբերության մեջ այդ հարաբերակցությունը դեռևս բավարար չէ: Այսպես, մասնագետների հաշվառման 1966 թվականի տվյալներով արդյունաբերության մեջ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ կադրերի հարաբերակցությունը կազմել է 1 : 1,3, իսկ ինժեներներինը՝ 1 : 1,6, որը ոչ միայն ռացիոնալ չէ, այլև ետ է միութենական համապատասխան ցուցանիշից (ՍՍՀՄ-ում այդ ցուցանիշները 1964 թվականին 1 : 2,5 և 1 : 2,8 էին):

Այս երևույթի գլխավոր պատճառներից մեկը բուհերի և տեխնիկումների ոչ-ռացիոնալ զարգացումն է: Վերջին տարիներին ուսումնական հաստատություններն ավարտողների թվի հարաբերակցությունը կազմել է 1 : 1,2 (կամ բուհ ավարտող մեկ մասնագետի դիմաց տեխնիկումն ավարտում են 1,2 մարդ), այսինքն՝ ավելի ցածր, քան ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների հարաբերակցությունը:

Պարզ է, որ նման դրությունից կարելի է դուրս գալ բուհերի զարգացման համեմատ տեխնիկումների ցանցի ընդլայնման առաջանցիկ տեմպերի ապահովման դեպքում:

Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ կադրերի հարաբերակցության նորմալացումը հնարավորություն կընձեռի ինժեներների ոչ-բարձր պատրաստականություն պահանջող ֆունկցիաները հանձնել միջնակարգ մասնագիտական կրթության համեմատաբար ցածր որակավորում ունեցող մասնագետներին, որի շնորհիվ բարձրագույն կրթություն ունեցող կադրերի ուշադրությունը կկենտրոնացվի արտադրության զարգացման ու կատարելագործման, տեխնիկական առաջադիմության հանգուցային հարցերի վրա: Դա, անշուշտ, կհանգեցնի ինժեներա-տեխնիկական աշխատանքի արդյունավետության բարձրացմանը: Անհրաժեշտ է բարձրացնել մասնագետների պատրաստման մակարդակը և սահմանել ճիշտ համամասնություններ: Այդ են պահանջում արտադրության զարգացումը, գիտա-տեխնիկական առաջընթացը:

Մասնագետների օգտագործումն ու պատրաստումը բարելավելու հարցին լուրջ ուշադրություն նվիրեց ՍՄԿԿ ԿԿ սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը: Նրա նյութերում բազմիցս ընդգծվել է, որ իրականացվող տնտեսական ռեֆորմի հաջողությունը մեծապես կախված է մասնագետների լրիվ և ռացիոնալ օգտագործումից, ինչպես նաև նրանց տնտեսական գիտելիքների մակարդակից: Վերջինս այժմ ձեռք է բերում առանձնակի կարևորություն:

Այժմ բոլոր մասնագետների տնտեսագիտական գիտելիքների դերը խիստ մեծանում է: Չնայած դրան տնտեսագետների տեսակարար կշիռը մասնագետների թվում ցածր է: Այսպես, հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն կրթություն ունեցող տնտեսագետները 1963 թվականին կազմել են բարձրագույն կրթությամբ բոլոր մասնագետների 6,2, 1966-ին՝ 6,8 տոկոսը. միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողները՝ 6.3 և 9,3 տոկոսը:

Ինչպես տեսնում ենք, տնտեսագետների աճը (հատկապես բարձրագույն կրթությամբ) նշանակալի չէ այն դեպքում, երբ ժողովրդական տնտեսությունն ունի տնտեսագետների մեծ կարիք: Այդ ապացուցվում է նրանով, որ պրակտիկների ամենաբարձր տեսակարար կշիռն ընկնում է տնտեսագետներին: Օրինակ, 1965 թվականի նոյեմբերի 15-ի դրությամբ պրակտիկները կազ-



digitised by A.R.A.R.@

*մեջ են գլխավոր հաշվապահների 61, նորմավորողների 53,7, ինժեներ-տնտեսագետների և տնտեսագետների 42,2 տոկոսը։ Գրեթե նույնն է վիճակը ՍՍՀՄ-ում ընդհանրապես։ Վ. Ելյուտինը գրում է, որ երկրի հաշվապահների երեք քառորդը պրակտիկներ են։*

*Իհարկե, այս ամենից չպետք է հետևություն անել, որ ընդհանրապես ժողովրդական տնտեսության մեջ պրակտիկներն անելիքներ չունեն։ Մենք հեռու ենք այդ կարծիքից։ Մեր երկրում թե՛ տնտեսական, թե՛ հասարակական կյանքում խոշոր դեր են կատարել բանվորների ու գյուղացիների ծոցից դուրս եկած պրակտիկ ղեկավար կադրերը, որոնցից շատերն այսօր էլ արդարացնում են իրենց։ Կարևորն այն է, որ կյանքում, արտադրության մեջ ղեկավար աշխատանքի պրակտիկ փորձ ունեցող կադրերի կողքին նպատակահարմար օգտագործվեն բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող մասնագետները։*

*Ցածր է նաև բարձրագույն կրթություն ունեցող որոշ տնտեսագետների պատրաստականությունը։ Դա մասամբ բացատրվում է տնտեսագիտության և ձեռնարկությունների տնտեսական աշխատանքի նշանակության երբեմնի թերագնահատմամբ, ինչպես նաև նրանով, որ «լուրջ արատներ ունի ուսանողների պատրաստման որակը (խոսքը տնտեսագիտական մասնագիտության մասին է — Ա. Վ.), հատկապես երեկոյան և հեռակա բաժիններում։ Անհիմն է քաղաքատնտեսության դասընթացի տևողության կրճատումը։ Կոնկրետ էկոնոմիկաների դասընթացները հաճախ անցնում են ցածր մակարդակով»* («Экономическая газета», 19 декабря, 1965 г., стр. 24)*։*

*Տնտեսագիտության դերի բարձրացման և մասնագետներին տնտեսագիտական գիտելիքներով զինելու գործում վճռող նշանակություն ունեցավ կուսակցության Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը։ Նրա որոշումների հաջող իրագործումը ուղղակի թե անուղղակի՝ դնում են տնտեսագիտության, տնտեսագետների դերի բարձրացման, բոլոր մասնագետներին տնտեսագիտական գիտելիքներով զինելու հարցը։*

*Տեխնիկական հետագա առաջադիմությունը, արտադրության զարգացումն ու կատարելագործումը կհանգեցնեն որակյալ մասնագետների նկատմամբ եղած պահանջարկի ավելի մեծացման։ Ուստի, անհրաժեշտ է ընդլայնել բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների ցանցը, բարելավել կադրերի պատրաստման գործը։*

*Այս և նման հարցերի լուծումը կնպաստի ընթացիկ հնգամյակի խնդիրների հաջող լուծմանը։*





# ԱԶԱՏԱՆՆ ԱՌԱՋ, ԱԶԱՏԱՆՆ ԱՅԺՄ

Ազատանը Շիրակի ամենահին և հարուստ պատմություն ունեցող բնակավայրերից մեկն է։ Պատմական փաստերը հիմք են տալիս ասելու, որ գյուղը հիմնադրվել է ավելի քան մեկ և կես հազարամյակ առաջ։

Թեև դարերի խորքից է գալիս Ազատանի պատմությունը, բայց նրա իսկական ծաղկումն ու բարգավաճումն սկսվում է Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու օրից։

Կես դար է, ինչ հաղթանակած Հոկտեմբերի ազատարար դրոշը փողփողում է մեր երկրի վրա։ Այդ դրոշի ներքո նոր կյանք են կառուցում նաև Հայաստանի աշխատավորները, նրանց թվում և կոմունիստականի բարձր կոչման արժանացած Ազատանի կոլտնտեսականները (Ախուրյանի շրջան), որոնք 1966 թվականը փակեցին արտադրական բարձր ցուցանիշներով, որի համար էլ կոլտնտեսությունը պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։

Մեր տնտեսության հիմնական ճյուղերն են դաշտավարությունն ու անասնապահությունը։ Չնայած կոլտնտեսության 1200 հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների զգալի մասն անջրդի է, բայց ագրոկանոնների ճիշտ կիրառման շնորհիվ ամեն տարի բարձր բերք է ստացվում։ Այսպես, հնգամյակի առաջին տարում մեկ հեկտարի միջին բերքատվությունը պլանով նախատեսված 14,5 ցենտների փոխարեն կազմեց 18,6։ Կոլտնտեսության պահեստում կուտակվեց 22.300 ցենտներ հացահատիկ, որից պլանով նախատեսված 1700 ցենտների փոխարեն պետությանը վաճառվեց 2300 ցենտներ։

Մեզ մոտ մեքենայացված են հացահատիկային կուլտուրաների և խոտաբույսերի մշակման ու բերքահավաքի աշխատանքները. դրա շնորհիվ ցածր է այդ կուլտուրաների ինքնարժեքը։ Այսպես, մեկ ցենտներ հացահատիկի ինքնարժեքը 1966 թվականին կազմեց 4,7 ռուբլի, մինչդեռ պետությանը վաճառքի գինը 9 ռուբլի է։

Ազատանի կոլտնտեսությունը զբաղվում է նաև շաքարի ճակնդեղի մշակմամբ, որի ցանքատարածությունը 365 հեկտար է։ Ամեն տարի կատարվում ու գերակատարվում են բերքատվության և վաճառքի պլանները։ Անցյալ տարի համախառն բերքը 130.000 ցենտներ էր. մեկ հեկտարից նախատեսված 304 ցենտների դիմաց միջին հաշվով ստացվեց 358 ցենտներ բերք։

Հողամշակության կուլտուրան բարձրացնելու, աշխատանքի կազմակերպումն ու վարձատրությունը ճիշտ հիմքերի վրա դնելու շնորհիվ տրակտորադաշտավարական հինգերորդ բրիգադան (բրիգադավար Թ. Թովմասյան) մեկ հեկտարի միջին բերքատվությունը հասցրեց 411, իսկ այդ բրիգադայի ճակնդեղագործուհի Ե. Թովմասյանը՝ 450 ցենտների։ Երկրորդ բրիգադայի ճակնդեղագործուհի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ա. Սևոյանը մեկ հեկտարից ապահովեց 470 ցենտներ բերք։

Բերքատվության պլանային առաջադրանքները գերակատարելու համար ճակնդեղագործները միայն որպես հավելյալ վարձատրություն ստացան 120.000 ռուբլի և մեծ քանակությամբ շաքարավազ։

Կոլտնտեսության մյուս եկամտաբեր ճյուղը անասնապահությունն է, որից տարեկան ստացվում է 300.000 ռուբլի դրամական եկամուտ։ Ամեն տարի պետությանը վաճառվում է՝ կաթ 4550 ցենտներ, միս՝ 1200, բուրդ՝ 110, ձու՝ 160.000 հատ։

Արհեստական սերմնավորման միջոցով մեզ հաջողվեց բարելավել անասունների ցեղը, որի շնորհիվ բարձրացավ նրանց մթերատվությունը և իջավ մեկ միավոր արտադրանքի ինքնարժեքը։

Անցյալ տարի կոլտնտեսությունը դաշտավարությունից և անասնապահությունից ստացավ



digitised by A.R.A.R.@

800000 ռուբլու դրամական եկամուտ, իսկ տնտեսության ամբողջ եկամուտը կազմեց 1.500.000 ռուբլի:



Գյուղատնտեսության արտադրության ինտենսիվացման կարևորագույն պայմաններից մեկը նրա կոմպլեքսային մեքենայացումն է, որի շնորհիվ մենք կարողանում ենք բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ավելացնել մթերքների արտադրությունը և իջեցնել դրանց ինքնարժեքը:

Մեծ է մեր կոլտնտեսության մեքենայական պարկը: Այնտեղ կա տարբեր մարկայի 20 տրակտոր ու 30 շարքացան, հացահատիկի 7 կոմբայն, 22 կուլտիվատոր, 10 խոտհնձիչ, 19 ավտոմեքենա և բազմաթիվ այլ կցվող գործիքներ ու մեքենաներ:

Տնտեսության 60 մեխանիզատորներն էլ աչքի են ընկնում լավ ու բարեխիղճ աշխատանքով: Կոմբայնավարներ Ս. Գևորգյանը, Ժ. Մոսոյանը, Գ. Պետրոսյանը մեկ հեկտարից միջին հաշվով հավաքեցին 20—21 ցենտներ բերք և տնտեսեցին 5300 կգ վառելանյութ:

Հիանալի աշխատեցին նաև ճակնդեղագործ մեխանիզատորներ Կ. Սահակյանը, Լ. Մոսոյանը և Վ. Մկրտչյանը: Նրանք հմուտ ճակնդեղագործների հետ մեկտեղ յուրաքանչյուր հեկտարից ստացան 380—410 ցենտներ բերք:

Մեզ մոտ դեռևս լրիվին մեքենայացված չէ ճակնդեղի մշակությունը: Ներկայումս մեքենաներով միայն կատարվում են ցանքը, միջշարքային փխրեցումը, բույսերի սնուցումը և քանդումը, իսկ մնացած աշխատանքները (քաղհաննոսրացում, հավաքում, մաքրում) ձեռքով են կատարվում, որը բարձրացնում է մեկ միավոր արտադրանքի ինքնարժեքը: Ժամանակն է, որ մեր գիտաշխատողները մտածեն այդ մասին և մեր պայմաններին հարմար շաքարի ճակնդեղի կոմբայն ստեղծեն:

Մեզ մոտ որոշ գործ է կատարված նաև անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ: Կաթնա-ապրանքային ֆերմաներում տեղադրված են կթի ագրեգատ, աղբ փոխադրիչներ և ավտոխմիչներ: Իհարկե, այս ամենը դեռևս գոհացուցիչ չէ: Տնտեսությունը գործնական քայլեր է կատարում, որպեսզի մոտ ապագայում անասնապահական բոլոր օբյեկտները ապահովի համապատասխան մեքենաներով ու սարքավորումներով:

Գյուղատնտեսական տեխնիկան արդյունավետ օգտագործելու ուղղությամբ էական դեր է խաղում կոլտնտեսության տիպային արհեստանոցը, որը գործում է լրիվ ծանրաբեռնված, առանց պարապուրդների: Այն ունի խառատային, փականագործական, դարբնոցային, վառելիքի պոմպերի, էլեկտրասարքավորումների ստուգման և կանոնավորման արտադրամասեր, գազային ու եռակցման ապարատներ:

Ակատանի կոլտնտեսության հաջողությունները պայմանավորված են նաև ցանքատարածությունների ոռոգմամբ և պարարտացմամբ: Վերջին տարիներին տնտեսության ոռոգելի տարածություններն ընդարձակվեցին 300 հեկտարով: Ոռոգելի նոր հողերում սկսեցին մշակել շաքարի ճակնդեղ և այլ շարահերկ կուլտուրաներ, որոնց յուրաքանչյուր հեկտարից ստացանք 18,6 ցենտներ հացահատիկ և 358 ցենտներ շաքարի ճակնդեղ:

Նկատի ունենալով բերքատվության բարձրացման գործում հողերի պարարտացման մեծ նշանակությունը, ամեն տարի դաշտ ենք տեղափոխում՝ գոմաղբ 4000—5000 տոննա, սուպերֆոսֆատ՝ 750, սելիտրա՝ 350 և կալիական աղ՝ 150 տոննա:

Դրա հետ միասին մենք կատարում ենք բարձր բերքատու սերմերի ընտրություն: Երկու տարի է, ինչ մշակում ենք «Անքիստ առաջին» տեսակի ցորեն (այն Միության մեջ հայտնի է բարձր բերքատվությամբ), որի ցանքատարածության ամեն մի հեկտարից ստացվեց 30—35 ցենտներ բերք: Այս տարի արել ենք ամեն ինչ, որպեսզի այդ նույն տեսակի ցորենի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվի 50—60 ցենտներ բերք:



Կոլտնտեսային կարգը ո՛չ միայն ռեալ պայմաններ ստեղծեց և խոշոր չափով նպաստեց գյուղատնտեսական արտադրության կարգացմանը, այլև արմատապես վերափոխեց գյուղի աշխատավորության կյանքը: Մինչև կոլտնտեսության հիմնադրումը Ակատանը խղճուկ, հողե տանիքներով, հետամնաց ու անհրապույր մի բնակավայր էր. միակ կուլտուրական օջախը խրճիթ-ընթերցարանն էր, որից քչերն էին օգտվում: Իրադրությունը փոխվեց, երբ կոլտնտեսությունն աստիճանաբար սկսեց տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդվել: Դրանից հետո, առանձնապես հետպատերազմյան ժամանակաշրջանում, գյուղը հիմնովին փոխեց իր դեմքը:

Նախասովետական շրջանի համեմատությամբ այն մեծացել է ավելի քան երեք, իսկ բնակչությունն աճել է երկու անգամ (այժմ գյուղն ունի 3600 բնակիչ):

Վերջին մի քանի տարիների ընթացքում 750 տնտեսությունից 700-ը կառուցել են նոր, հարմարավետ բնակարաններ: Կոլտնտեսականների ընտանիքներից շատերն ունեն ջեռուցման սիստեմ, ռադիոընդունիչ, լվացքի մեքենա, հեռուստացույց, սառնարան, գազօջախ և անձնական գրադարան: Գյուղի աշխատավորները ստանում են ավելի քան 1290 օրինակ թերթ և ամսագիր:

Սովետական իշխանության տարիներին գյուղից 160 հոգի ստացել են բարձրագույն կրթություն. նրանցից շատերը գիտական աշխատողներ են (գիտության թեկնածուներ, դոկտոր-պրոֆեսոր), կուսակցական և պետական ակտիվ գործիչներ: Տարբեր բուհերում սովորում են 30 ակատանցի:

Այժմ Ակատանում կա մեծ ակումբ՝ իր բոլոր հարմարություններով, հիվանդանոց, բաղնիք, 4 խանութ, 2 մանկապարտեզ ու մանկամսուր, եռահարկանի դպրոցական շենք, ուր սովորում են 850 աշակերտ, տնային իրերի վերանորոգման, կարի անհատական պատվերների արհեստանոցներ, անասնաբուժարան: Կառուցվում է ունիվերսալ խանութի երկհարկանի շենք: 1967 թվականին կկառուցվի ճաշարան, տաղավար, տիպային նոր բաղնիք և այլն: 1968 թվականին գյուղը կունենա խմելու բարձրորակ ջուր:

Գյուղը տվել է նաև բազմաթիվ նշանավոր մարդիկ, այդ թվում քանից ավելի կուսակցական և պետական ապարատի աշխատողներ, որոնցից արժանի է հիշատակել 1919 թվից ՍՄԿԿ անդամ, հին հեղափոխական Վանյա Դավթյանին, որն իր կենդանության ժամանակ վարել է պատասխանատու աշխատանք:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին բազմաթիվ ակատանցիներ կորավիզ կանգնեցին իրենց սիրասուն հայրենիքին: Նրանցից շատերը դյուցազնաբար մարտնչեցին թշնամու դեմ և իրենց պայծառ կյանքը տվեցին հայրենիքի պաշտպանությանը: Այդպիսիներից է բոլորի կողմից ճանաչված անմոռաց ընկեր, ՀԿԿ Կենտկոմի նախկին երրորդ քարտուղար, դիվիզիայի կոմիսար Խաչիկ Հակոբջանյանը:

Նախկին ծառայուրկ Ակատանն այժմ այգեստան է դարձել: Ամենուր ձգվում են դեկորատիվ ու պտղատու այգիները:

Գյուղն ուզում է իր միջոցներով, առանց պետության օգնության, շատ նոր օբյեկտներ կառուցել, սակայն զգացվում է շինանյութերի խիստ պակաս, չկան տիպային նախագծեր:

Մեր կոլտնտեսությունը կառուցում է կենցաղսպասարկման օբյեկտներ, որտեղ պետք է դրվի ջեռուցման սիստեմ: Բայց դրա և մոնտաժային մյուս աշխատանքների համար չկա համապատասխան կազմակերպություն: Հաճախ մենք ստիպված մոնտաժային գործը հանձնում ենք մասնավոր մարդկանց: Մինչդեռ ժամանակն է, որպեսզի գյուղական շինարարության մինիստրությունը զբաղվի շինմոնտաժային աշխատանքներով:

Հոբելյանական այս տարում, երբ սովետական պետությունը և ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը նշելու են Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հիսունամյակը, ակատանցիներն աշխատում են այդ փառավոր տարելիցը դիմավորել բարձր ցուցանիշներով: Նրանք որոշել են 1200 հեկտար հասկավոր կուլտուրաների ամեն մի հեկտարից ստանալ 20 ցենտներ պահեստային հացահատիկ, ապահովել 24.000 ցենտներ համախառն բերք, 365 հեկտար շաքարի ճակնդեղի պլանտացիաներից ստանալ և պետությանը վաճառել 130.000 ցենտներ համախառն բերք, մեկ հեկտարի բերքատվությունը հասցնելով 360 ցենտների: Մենք միաժամանակ պարտավորվել ենք արտադրել 7500 ցենտներ կաթ, 1400 ցենտներ միս, 7000 ցենտներ բանջարեղեն ու գյուղատընտեսական այլ մթերքներ:

Ակատանցիներն ամեն ինչ կանեն, որպեսզի պատվով դիմավորեն մեծ Հոկտեմբերի 50-ամյակը:

*Ե. ՄՈՎՍԻՍՅԱՆ*

*Ախուրյանի շրջանի Ակատանի կոլտնտեսության վարչության նախագահ*





digitised by A.R.A.R.@

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ *ամբիոն*

# ԴԻԱԼԵԿՏԻԿԱՅԻ ՈՐՈՇ ՏԱՐՐԵՐ ԴԻԴՐՈՅԻ ԲՆԱՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ժ. ԴԱՆԻԵԼՅԱՆ

*Փիլիսոփայական մտքի զարգացման պատմության մեջ XVIII դարի ֆրանսիական մատերիալիզմն ամենախոշոր էտապներից մեկն է։ Այն մինչմարքսյան մատերիալիզմի բարձրագույն ձևն է։ Ճիշտ է XVIII դարի ֆրանսիական մատերիալիզմը մետաֆիզիկական, մեխանիստական էր՝ պայմանավորված այն ժամանակաշրջանում բնագիտության մեջ մեխանիկայի տիրապետությամբ։ Սակայն այդ դեռևս չի նշանակում, թե այդ մատերիալիզմի այս կամ այն ներկայացուցչի մոտ չկային դիալեկտիկական մտածողության տարրեր։*

*XVIII դարի ֆրանսիական բուրժուական հեղափոխության նախապատրաստման ժամանակաշրջանը բնականաբար իրականության հեղափոխական քննարկման անհրաժեշտություն էր հարուցում, մանավանդ այդ հեղափոխությունը գաղափարապես նախապատրաստողները շահագրգռված էին իրականության օբյեկտիվ, ճիշտ մեկնաբանմամբ։*

*Ուստի, զարմանալի չէ, որ այդ մատերիալիզմի փայլուն դեմքերից մեկը՝ էնցիկլոպեդիստների պարագլուխ Դենի Դիդրոն քաջատեղյակ էր հին հունական դիալեկտիկային և յուրացրել էր փիլիսոփայական մտքի նվաճումները։*

*Այստեղ մենք կշոշափենք դիալեկտիկայի միայն ամենահիմնական հարցերի ըմբռնումը Դիդրոյի մոտ։*

*Երևույթների փոխադարձ կապը և կախվածությունը քննարկելիս, ամենից առաջ, աչքի է ընկնում մատերիայի և նրա գոյության ձևերի՝ ժամանակի ու տարածության փոխհարաբերության պրոբլեմի զարմանալիորեն ճիշտ Դիդրոյի դիալեկտիկական ըմբռնումը։ Նա գրում է. «Նույնիսկ աբստրակցիայում ես չեմ կարող անջատել ժամանակը և տարածությունը կեցությունից։ Նշանակում է այդ երկու հատկությունները էականորեն յուրահատուկ են նրան* (Д. Дидро, Собр. соч., т. 2, стр. 342)։ *Դժվար չէ նկատել, որ Դիդրոն այս հարցում շատ առաջ է անցել իր դարից։ Այն ժամանակ, երբ մտածողների վրա իշխում էին բացարձակ ժամանակի և բացարձակ տարածության նյուտոնյան մետաֆիզիկական պատկերացումները, որոնք իբր կարող էին գոյություն ունենալ մատերիայից, ինչպես նաև միմյանցից անկախ, որպես սուբստանցիոնալ էություններ, Դիդրոյի մտքերն այդ հարցում հնչում էին լիովին օրիգինալ։ Բավական է դրանք համեմատել ժամանակի և տարածության մասին էնգելսի ասույթների հետ, որպեսզի երևա մեր հավաստման ճշտությունը։ Էնգելսը գրում է. «...ամեն մի կեցության հիմնական ձևերը ժամանակն ու տարածությունն են. կեցությունը ժամանակից դուրս նույնպիսի մեծագույն անմտություն է, որքան և կեցությունը՝ տարածությունից դուրս» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, 1952, էջ 60)։*

*Ինչպես տեսնում ենք, նույնիսկ աբստրակցիայում Դիդրոն տարածության ու ժամանակի անջատումը մատերիայից (կեցությունից) համարում էր անմտություն։ Էնգելսը, իհարկե, նույն միտքը ձևակերպում է ավելի կոնկրետ և պարզ, ավելի խոր է հիմնավորում։ Սակայն չի կարելի չնկատել երկու մտածողների մտքերի ընդհանրությունը։*

*Բնության գիտական ըմբռնման հարցում Դիդրոյի մեծագույն ծառայությունը նրա անխոնջ ձգտումն էր ոչ միայն հավաստելու, այլև գիտականորեն ապացուցելու, որ չնայած բնության երևույթների բազմազանությանը, նրանք միասնական են իրենց հիմքում՝ նյութականության մեջ։ Որքան էլ հեռացած լինեն բնության առարկաներն ու երևույթները միմյանցից, նրանց միջև չեն կարող լինել բացարձակ սահմաններ։*

*Ուշագրավ է փիլիսոփայության առարկայի մասին Դիդրոյի բնորոշումը. «Թեկուզ և մի փաստի բացարձակ անկախությունը անհամատեղելի է ամբողջության պատկերացման հետ, իսկ առանց ամբողջության պատկերացման չկա փիլիսոփայություն»* (Д. Дидро, Собр. соч., т. I, стр. 306)։ *Դիդրոյի կողմից փիլիսոփայության բնորոշումը համարյա նման է դիալեկտիկայի էնգելսյան բնորոշմանը, դիալեկտիկա, որը, էնգելսի դիպուկ արտահայտությամբ՝ գիտություն է «համընդհանուր կապի մասին»* (Բնության դիալեկտիկա, *էջ 3)։*

*Դիդրոն չէր ժխտում բնության մեջ որակական տարբերությունները, որոնք սակայն չէր էլ բացարձակացնում։ Նա չէր ընդունում ոչ մի բացարձակ սահման երևույթների միջև։ Հիրավի, մատերիայի կառուցվածքի մասին մետաֆիզիկական-մեխանիստական պատկերացումների դարում Դիդրոն արտահայտում է բեղմնավոր դիալեկտիկական միտք այն մասին, որ այնպիսի ֆիզիկական երևույթներ, ինչպիսիք են ձգողականությունը, մագնիսականությունն ու էլեկտրականությունը, մեկ ընդհանուր էության տարբեր դրսևորումներն են։ Այս առթիվ նա գրում է, որ «...ձգողականությունը, մագնիսականությունը, էլեկտրականությունը ոչ այլ ինչ են, քան նույն հատկության տարբեր դրսևորումները» (Նույն տեղը, էջ 335)։*

*Ի տարբերություն օրգանական և անօրգանական մատերիայի բացարձակ հակադրության, XVIII դարի մետաֆիզիկական պատկերացումների՝ Դիդրոն ելնում էր այն բանից, որ նրանց միջև հակադրությունը բացարձակ չէ, որ կա ավելի շատ նմանություն, քան տարբերություն։ Միաժամանակ Դիդրոն ժխտում էր մետաֆիզիկական պնդումն այն մասին, որ որակապես տարբեր իրերի հիմքում ընկած է ինչ-որ բացարձակ համասեռ մի բան, որը չի դրսևորում ոչ մի տարբերություն։ Այսպիսին էր մատերիայի ըմբռնումը Սպինոզայի (ըստ նրա տերմինոլոգիայի՝ սուբստանցիայի) և XVIII դարի ֆրանսիական մատերիալիստների կողմից, որոնք գտնում էին, որ մատերիայի հիմքում ընկած են ինչ-որ բացարձակապես համասեռ փոքրագույն մասնիկներ՝ ատոմներ, որոնց մեխանիկական համակցությունից առաջանում է բնության երևույթների ամբողջ բազմազանությունը։ Դիդրոն շատ լավ գիտեր, որ մատերիայի բացարձակ միասեռությունից, բացարձակ նույնությունից չէին կարող առաջանալ որակապես տարբեր առարկաներն ու երևույթները։*





digitised by A.R.A.R.@

Պայքարելով աշխարհի, որպես բացարձակապես առանձին բաժանված մասերի մետաֆիզիկական մասնատման դեմ, Դիդրոն ձգտում է գտնել այն միջանկյալ օղակները, որոնք կապում են բնության տարբեր երևույթները։ Նա գրում է. «…տիեզերքը մի միասնական մեքենա է, որի մեջ ամեն ինչ կապակցված է և որի մեջ բոլոր իրերը մեկը մյուսի հանդեպ բարձրանում կամ իջնում են աննկատ աստիճաններով, այնպես որ այդ շղթայում չկա ոչ մի ընդհատում…» (Д. Дидро, Собр. соч., т. 7, стр. 86)։ Հիմնվելով իր ժամանակակից խոշոր բնագետ Բյուֆֆոնի բնագիտական հետազոտությունների վրա, Դիդրոն ցույց տվեց, որ անանցանելի սահմանները կենդանական, բուսական և հանքային աշխարհների միջև կարծեցյալ են, որ այդ հասկացությունները (կենդանի, բույս, հանք), ադեկվատ արտացոլելով բնության երևույթների միջև եղած որակական տարբերությունը, միաժամանակ աղճատում են իրականությունն այն իմաստով, որ նրանք չեն արտացոլում բոլոր այն միջանկյալ կապերը, որոնք հանդես են գալիս կենդանական, բուսական և հանքային աշխարհների միջև և ակամա ստեղծում են դրանց միջև անանցանելի սահմանի մասին ինչ-որ պատրանք։

Այս առթիվ Դիդրոն գրում է, որ «բնության ստեղծագործությունների մեծ բաժանումը՝ կենդանիների, բուսականության և հանքանյութերի, իրենով չի պարփակում բոլոր նյութական իրերը» (նույն տեղը, էջ 89)։ Նա պահանջում է անվերջ գումարն ընդհանուր այն հասկացությունների, որոնք արտացոլեն բնության տարբեր բնագավառների եղած միջանկյալ կապերը, որի հետևանքով կանհետանան նրանց միջև թվացող անանցանելի սահմանները։ Այդպիսի հասկացություններն անհրաժեշտ են հատկապես բնության այն էությունների բնորոշման համար, որոնց դժվար է դասել այս կամ այն բնաշխարհի կարգը։ Այսպես, գոյություն ունեն կենդանիների այնպիսի տեսակներ, որոնք հիշեցնում են բույսերի և, ընդհակառակը, բույսերի այնպիսի տեսակներ, որոնք հիշեցնում են կենդանիների և այստեղ չկա կտրուկ սահման։

Ուսումնասիրելով և բացահայտելով կենդանիների և բույսերի միջև գոյություն ունեցող միջանկյալ օղակները, Դիդրոն հետապնդում էր մի գլխավոր նպատակ, այն է՝ բացահայտել այդպիսի միջանկյալ օղակներ նաև օրգանական և անօրգանական աշխարհների միջև կամ, ինչպես ինքն է արտահայտվում՝ բուսական և հանքանյութային աշխարհների միջև։ Դիդրոն, ինչպես և նրանից հետո Լամարկը, նկատել էին, որ տարբեր և, հատկապես, բուսական ու հանքային աշխարհների միջև կապ ստեղծելու համար չեն բավարարում կապակցող օղակները, սակայն դրանք ոչ մի դեպքում չեն հերքում այդպիսի կապի առկայությունը, այլ միայն խոսում են բնագիտության զարգացման ցածր մակարդակի մասին, որը դեռ անկարող է ապացուցել այդ կապի գոյությունը։ Դիդրոն հավատացած էր, որ բնագիտության հետագա զարգացումը կապացուցի այդ։

Հետաքրքրական է, որ Էնգելսն իր Անտի-Դյուրինգ և Բնության դիալեկտիկա աշխատություններում բնության թագավորությունների (և ոչ միայն թագավորությունների, այլև նույն թագավորության մեջ մտնող առանձին տեսակների) բացարձակ հակադրության մետաֆիզիկական ըմբռնումը ժխտելու համար, հիմնվելով ժամանակի բնագիտության նվաճումների վրա՝ փնտրում է միջանկյալ կապող օղակներ այդ թագավորությունների միջև, որպեսզի ապացուցի բնության դիալեկտիկան, ավելի ճիշտ՝ բնության դիալեկտիկական միասնությունը։ Այս հանգամանքը վառ ցույց է տալիս, որ Դիդրոն շատ էր



մոտեցել բնության դիալեկտիկական միասնության ըմբռնմանը։ Դ՚ Ալամբերի զրույցը Դիդրոյի հետ աշխատության մեջ նա ցույց է տալիս, որ օրգանական և անօրգանական բնության միասնությունն ի հայտ է գալիս ամեն օր, մեր աչքի առջև։

Այստեղ խոսքը վերաբերում է այն հայտնի օրինակին, երբ մարմարյա արձանը վերափոխվում է սննդի բույսերի համար, իսկ հետո բույսերը դառնում են սնունդ կենդանիների ու մարդկանց համար, այլ խոսքով՝ մարմարյա արձանը (անօրգանական մատերիան) դառնում է կենդանի մատերիա, ընդ որում այդ վերափոխման համար անհրաժեշտ չէ ժամանակի մեծ տևողականություն՝ որպես կյանքի ծագման անհրաժեշտ պայմանի (էվոլյուցիա)։ Եվ կարծես թե հաստատելով Դիդրոյի այս միտքը, ռուս մեծ գիտնական Կ. Ա. Տիմիրյազևը նկատի ունենալով ֆոտոսինթեզի պրոցեսը, գրում է. «Կանաչ տերևը կամ ավելի ճիշտ՝ քլորոֆիլի միկրոսկոպիկ կանաչ հատիկը հանդիսանում է տիեզերական տարածության այն ֆոկուսը, կիզակետը դեպի ուր մի ծայրից հոսում է արևի էներգիան, իսկ մյուս ծայրից երկրի վրա կյանքի բոլոր դրսևորումների սկիզբն է դրվում։ Բույսը միջնորդն է երկնքի և երկրի միջև։ Նա իսկական երկնքից կրակը առևանգող Պրոմեթևսն է։ Նրա կողմից առևանգված արևի ճառագայթը վառվում է և առկայծող մարխում, և էլեկտրականության կուրացուցիչ կայծում։ Արևի ճառագայթը շարժման մեջ է դնում և հսկայական շոգեմեքենայի հրեշավոր թափանիվը, և՛ նկարչի վրձինը, և՛ պոետի գրիչը» (К. А. Тимирязев, Избр. соч., т. 2, М., 1948, стр. 382—383)։

Աշխարհի նյութական միասնությունը Դիդրոյի փիլիսոփայության մեջ դրսևորվում է ո՛չ միայն նրա միասնական կառուցվածքում (քանի որ մատերիայի բոլոր ձևերը՝ կենդանի թե անկենդան, կազմված են մոլեկուլներից), ո՛չ միայն ձևի և բովանդակության դիալեկտիկական միասնության մեջ (հիշենք Դիդրոյի մտքերը ժամանակի, տարածության և կեցության միասնության մասին), ո՛չ միայն բնության նույն թագավորության շրջանակներում՝ մատերիայի ձևերի դիալեկտիկական փոխակերպման մեջ (էլեկտրականության, մագնիսականության փոխակերպումը միմյանց անօրգանական աշխարհում կամ որոշ տեսակների առաջացումը մյուսներից օրգանական աշխարհում), ո՛չ միայն մի թագավորության՝ մյուսի դիալեկտիկական վերափոխման մեջ (անօրգանական աշխարհի փոխակերպումը օրգանական աշխարհի՝ էվոլյուցիա և անօրգանական մատերիայի), ամենօրյա վերափոխումը օրգանական մատերիայի, այլև մատերիայի գոյության այնպիսի ընդհանուր հատկության դրսևորման մեջ, ինչպիսին նրա արտացոլման ունակությունն է։ Այս հարցում Դիդրոն ենթադրում է, որ զգայությունը մատերիայի համընդհանուր հատկությունն է և դասվում է մատերիայի այնպիսի հատկությունների շարքը, ինչպիսիք են տարածականությունը, ժամանակի մեջ գոյություն ունենալը, շարժումը։ Սակայն նա գտնում է, որ օրգանական աշխարհի զգայությունն արմատապես տարբերվում է անօրգանական աշխարհի զգայությունից։ Անօրգանական աշխարհին հատուկ է պոտենցիալ զգայականություն, որը միայն հնարավորություն է, իսկ օրգանական աշխարհին յուրահատուկ է ակտիվ զգայականություն, որն արդեն իրականություն է։ Ամբողջ մատերիայի զգայականության ընդունումը Դիդրոյի համար ուներ սկզբունքային նշանակություն այն իմաստով, որ զգալու բացարձակապես անընդունակ անօրգանական մատերիայից չէր կարող ծագել զգացող օրգանական մատերիան։

Վ. Ի. Լենինը այս հարցում լիակատար համամիտ է Դիդրոյի հետ, որ մա-



digitised by A.R.A.R.@

տերիայի հիմքում կարելի է ենթադրել այնպիսի հատկության գոյությունը, որ նման է զգայության (արտացոլում), որը պարզ արտահայտված ձևով դրսևորվում է միայն բարձր կազմակերպված մատերիայի մոտ։

Ապացուցելով աշխարհի նյութական միասնությունը և երևույթների համընդհանուր կապը, Դիդրոյի առաջ բնականորեն պետք է խնդիր ծառանար բնության մեջ բոլոր փոփոխությունները, մատերիայի բոլոր որակական ձևերի դրսևորման պատճառը փնտրել նյութական աշխարհում և ոչ թե նրա սահմաններից դուրս։ Նա ելնում է այն բանից, որ շարժումը մատերիայի ատրիբուտն է, էական հատկությունը, առանց որի մատերիայի ըմբռնումն անմիտ է, ինչպես անմիտ է առանց մատերիայի շարժման ըմբռնումը։ Նրա մոտ ասված է. «...շարժումն այնպիսի ռեալ հատկություն է, ինչպես երկարությունը, լայնությունը, խտությունը» (т. I, стр. 358)։ Եթե շարժումը մատերիայի ատրիբուտն է, այսինքն՝ մի հատկություն, առանց որի անհնար է մատերիայի գոյությունը, այստեղից ինքնըստինքյան տրամաբանորեն բխում է, որ բնության մեջ բացարձակ հանգիստ չի կարող լինել, որ հանգիստը հարաբերական է, իսկ շարժումը՝ բացարձակ։ Դիդրոն գրում է. «Ահա հանգստի և շարժման միջև եղած իսկական տարբերությունը. բացարձակ հանգիստը վերացական հասկացություն է, որը գոյություն չունի բնության մեջ...» (նույն տեղը, էջ 358)։ Շարժման և հանգստի հասկացությունների ըմբռնման մեջ նրա հայացքները համարյա ոչնչով չեն տարբերվում դիալեկտիկական մատերիալիզմի դրույթներից։

Սակայն բավական չէ սոսկ այն բանի ընդունումը, թե շարժումը մատերիայի ատրիբուտն է։ Անհրաժեշտ է նաև բացահայտել շարժման աղբյուրը։ Արդյոք շարժումը չի հաղորդվո՞ւմ մատերիային դրսից, եթե ոչ, ապա հանդիսանալով մատերիային ներհատուկ անբաժանելի հատկություն, ինչո՞վ է այն պայմանավորված, ի՞նչն է շարժում հարուցում։

Հայտնի է, որ Դեկարտն ընդունում էր, թե աշխարհում գոյություն ունեցող շարժման քանակը միշտ մնում է նույնը։ Նյուտոնն իր հերթին նույնպես գտնում էր, որ երկնային մեխանիկայի օրենքները բացարձակ են և հավերժ, այսինքն՝ տիեզերքում շարժման քանակը հավերժ է և հաստատուն։

Ինչպես երևում է, Դեկարտը և Նյուտոնը չնայած շարժումը չէին համարում մատերիայի ատրիբուտը, այնուամենայնիվ, ընդունում էին, որ այն մի հատկություն է, որը հավերժ անբաժան է մատերիայից։

Դեկարտի և Նյուտոնի դրույթն այն մասին, որ տիեզերքում շարժման քանակը, հաշված նրա ի հայտ գալու մոմենտից, մնում է նույնը և չի կարող գոյություն ունենալ առանց մատերիայի, իր բովանդակությամբ մոտենում է այն բանի ըմբռնմանը, որ շարժումը մատերիայի ատրիբուտն է, եթե ոչ անցյալ ժամանակներում, ապա հետագա ժամանակներում՝ հաշված շարժման ի հայտ գալու մոմենտից։ Բայց այն հարցին, թե որտեղի՞ց է ծագում շարժումը, ի՞նչն է դրա աղբյուրը, Դեկարտը և Նյուտոնն ունենալով մետաֆիզիկական պատկերացում մատերիայի վերաբերյալ, չկարողացան ճիշտ պատասխանել։ Նրանք մնացին անօգնական և խղճալի վիճակում և դրանից դուրս գալու համար ձեռքերը հանդիսավորությամբ մեկնեցին դեպի երկինք՝ արարչին։

Այսպես, շարժումը որպես մատերիայի ատրիբուտ ընդունելը դեռևս չի վճռում մատերիայի և շարժման կապի պրոբլեմն իր ամբողջ խորությամբ։ Փիլիսոփաների համար ամենագլխավորը մատերիայի շարժման աղբյուրի



ճիշտ բացատրությունն է։ Դիդրոն առաջինն էր, որ լարված փնտրում էր մատերիայի շարժման աղբյուրը հենց իր՝ մատերիայի մեջ, որով և մոտեցավ զարգացման երկու՝ մետաֆիզիկական և դիալեկտիկական կոնցեպցիաներին։ Նա հակված էր դիալեկտիկական ըմբռնմանը։

Դիդրոն ժխտում էր մատերիայի մասին մետաֆիզիկական պատկերացումը, որպես մեռած, իներտ, ինքնուրույն կյանքից բոլորովին զուրկ կույտ զանգվածի։ Նրա հայեցակետով այդպիսի պատկերացումը ո՛չ միայն վերացական է, քանի որ այն չի հիմնվում բնագիտության վրա, այլև բոլորովին կեղծ է։ Նա գրում է. «Մարմինը ոռոշ փիլիսոփաների կարծիքով ինքնին օժտված չէ ո՛չ գործողությամբ, ոչ ուժով։ Դա սարսափելի մոլորություն է, որը ուղղակի հակասում է ֆիզիկային և քիմիային։ Ինքնին, իրեն յուրահատուկ բնությամբ մարմինը լի է գործողությամբ և ուժով, միևնույն է կդիտենք այն մոլեկուլներում, թե մասսայում» (նույն տեղը)։ Դիդրոն բացահայտում է մատերիայի վերաբերյալ նման մետաֆիզիկական պատկերացման պատճառը. այն, որ մետաֆիզիկները մատերիան պատկերացնում են միատարր՝ հոմոգեն, որն իբր ինքնին չի կարող շարժվել։ Նա ծաղրում է այս հարցում մետաֆիզիկների տրամաբանորեն անթույլատրելի հակասությունը։ Եթե մատերիան հանգիստ է (հոմոգեն է), այդ դեպքում կրակը լինելով մատերիայի ձևերից մեկը, կարելի՞ է պատկերացնել հանգիստ (հոմոգեն), հարցնում է Դիդրոն։ Իհարկե, ոչ։ Եվ քանի որ կրակը մատերիայի մի առանձնահատուկ ձևը չէ, այն կազմված է նույն մոլեկուլներից, ինչպես մատերիայի մյուս ձևերը, հետևաբար մատերիայի մյուս ձևերը նույնպես հանգիստ (հոմոգեն) չեն, ինչպես և կրակը։

Այսպիսով, ժխտելով մետաֆիզիկական պատկերացումը մատերիայի հոմոգեն լինելու մասին, Դիդրոն առաջ է քաշում այն դրույթը, որ մատերիան տարասեռ է՝ հետերոգեն։ Մատերիայի փոքրագույն մասնիկները՝ մոլեկուլները, տարասեռ լինելով, նրանց միջև, նրա արտահայտությամբ, ստեղծվում է ո՛չ թե հանգստություն (այդ մենք տեսանք կրակի օրինակով), այլ անհանգստություն։ Ինչպես տեսնում ենք, այստեղ մեծ խելք չի պահանջվում, որպեսզի հասկանանք, որ տարասեռության հետևանքով առաջացած անհանգստությունն ոչ այլ ինչ է, քան հակադրությունների պայքարի յուրօրինակ ըմբռնումը։ Իհարկե, հակադրությունների պայքարի օրենքը նրա մոտ չի ձևակերպված որպես այդպիսին, բայց գլխավորն այն է, որ Դիդրոն հասկանում էր այդ օրենքի դրսևորման էությունը, որպես մատերիայի ինքնաշարժման ներքին անխափան աղբյուրի։

Դիդրոյի մոտ հանդիպում ենք մտքերի, որ մատերիայի փոքրագույն մասնիկները՝ մոլեկուլները, անթափանցելի, անբաժանելի են։ Ի՞նչն է այդպիսի ենթադրության պատճառը, արդյոք դա նշանակո՞ւմ է, թե նա մատերիայի կառուցվածքի պրոբլեմի հարցում մնաց XVIII դարի մետաֆիզիկական հայացքների մակարդակի վրա։ Իհարկե, ոչ։ Նախ պետք է նկատի ունենալ, որ XVIII դարում թեոլոգիան ամեն կերպ փորձում էր մատերիայի փոփոխականությունից հաստատել, որ նա կարող է ստեղծվել և ոչնչանալ։ Այդպիսի անհեթեթ պնդումների ժխտման համար մատերիալիստները կարիք ունեին հիմնվելու որոշակի անփոփոխ նյութական սուբստանցի վրա։ Դիդրոյի համար այդպիսի սուբստանց ծառայում էին անբաժանելի նյութական մասնիկները՝ մոլեկուլները։ Բայց նրա մոտ հանդիպում ենք մատերիայի կառուցվածքի վերաբերյալ նաև ավելի ճիշտ գաղափարի։ Նա գրում է. «Մինչև որ աստիճանի կարող է հասնել տարրական նյութի բաժանումը փորձերում կամ բնության գործունեու-



digitised by A.R.A.R.@

թյան մեջ։ Մենք չգիտենք...» (Дидро, Избр. философ. произв., стр. 130)։ Ինչի՞ մասին է խոսում Դիդրոյի այդ միտքը։ Այն, որ նա սկեպտի՞կ է. ոչ։ Դիդրոյին հայտնի է մատերիայի բաժանման աստիճանը փոքրագույն մասնիկների՝ մոլեկուլների։ Բայց այդ սահմանը չի բավարարում նրան և նա ցանկանում է թափանցել մատերիայի կառուցվածքի խորքը և այնտեղ բացահայտել նրա բաժանման նոր աստիճաններ։ Սակայն այս նպատակին հասնելու համար Դիդրոյին հնարավորություն չի ընձեռում նրա ժամանակի բնագիտության զարգացման մակարդակը։ Համենայն դեպս նա մոտենում է մատերիայի անսպառելիության գաղափարին։

Այն, որ Դիդրոն երբեք էլ համառորեն չէր պնդում մոլեկուլների բացարձակ անփոփոխելիությունը, կարելի է համոզվել կարդալով նրա հետևյալ տողերը. «Մատերիայի այս անվերջ օվկիանոսում մեկը մյուսի նման մոլեկուլ չկա, և յուրաքանչյուր հաջորդ վայրկյանում չկա մի մոլեկուլ ինքն իրեն նման» (Дидро, Собр. соч., т. I, стр. 391)։ Այստեղ տեսնում ենք դիալեկտիկայի փայլուն օրինակ ո՛չ միայն տիեզերքի համընդհանուր շարժման ու զարգացման իմաստով, այլև որպես մոլեկուլի ներքին դիալեկտիկական հակասություն, որը նույն վայրկյանում նման է ինքն իրեն և միևնույն ժամանակ պարունակում է իր մեջ ինչ-որ ուրիշ բան, որը ծնվում է յուրաքանչյուր հաջորդ վայրկյանում և այդպես շարունակ։

Ընդհանուրի և մասնակիի դիալեկտիկական միասնության յուրահատուկ մի արտահայտություն է Դիդրոյի հետևյալ միտքը. «Ատոմը շարժում է աշխարհը. այս դրույթից ճիշտ բան չկա, այս դրույթն այնպես ճիշտ է, ինչպես և այն, որ աշխարհն է շարժում ատոմը...» (նույն տեղը, էջ 359)։ Ինքնըստինքյան հասկանալի է, եթե աշխարհը կազմված է ատոմներից, որոնք ինքնին իրենց շարժման պատճառն են, հետևաբար նրանց շարժումը անպայման պետք է շարժի աշխարհը։

Նա ջանում էր ո՛չ միայն բացատրել մատերիայի շարժման էությունը, այլև նրա որակական ձևերը։ Ի հակադրություն շարժման մետաֆիզիկական ըմբռնման, Դիդրոն ուներ ավելի խոր հասկացողություն շարժման մասին։ Նա բացահայտեց, որ մեխանիկական շարժումը չի սպառում բնության մեջ տեղի ունեցող ամբողջ շարժումը։ Դա նշանակում է, որ մեխանիկական շարժումից բացի Դիդրոն ընդունում էր նաև շարժման այլ ձևերի գոյությունը։ Ավելին, նա չէր ընդունում, որ մեխանիկական շարժումն իբր շարժման գլխավոր ձևն է։ «Մարմնի տեղափոխությունը մի տեղից մյուսը,— գրում է Դիդրոն,— շարժում չէ, այլ նրա գործողությունը։ Շարժումը գոյություն ունի ինչպես շարժվող մարմնում, այնպես էլ անշարժ մարմնում» (նույն տեղը, էջ 368)։ Եթե դրան ավելացնենք նաև այն, որ նա շարժման հասկացության տակ հասկանում է նաև քիմիական տարրալուծումը, ապա չի կարելի չենթադրել, որ դա առնչվում է Էնգելսի այն դրույթին, որ շարժումը «դա փոփոխություն է առհասարակ» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, էջ 255)։

Դիդրոն ո՛չ միայն մոտեցավ մատերիայի շարժման ներքին աղբյուրի ճիշտ ըմբռնմանը, այլև փորձում էր ճիշտ բացատրել նաև բնության մեջ տեղի ունեցող որակական փոփոխությունները։ Սակայն ժամանակի բնագիտության թույլ զարգացման և այլ հանգամանքների հետևանքով նա չկարողացավ մինչև վերջ գիտականորեն բացահայտել որակական փոփոխությունների մեխանիզմը։ Ուստի, նա պնդում էր, որ բնության մեջ թռիչքներ չեն լինում։ Ի՞նչն էր



այդպիսի պնդման պատճառը։ Նախ այն, որ Դիդրոն դրանով ցանկանում էր ժխտել կրոնական դոգման աշխարհի ստեղծագործության մասին։ Ոչ միայն նա, այլև ֆրանսիական մյուս մատերիալիստներն ելնում էին շարժման անընդհատությունից, որը հավասարանշանակ էր շարժման անոչնչելիությանը։ Շարժման ընդհատելիության ընդունումը Դիդրոյի և նրա համախոհների համար կնշանակեր նրա ընդունումն որպես բոլոր տեսակի հրաշագործությունների ճանաչման հիմք։

Չնայած այն բանին, որ Դիդրոն չէր ընդունում թռիչքների գոյությունը բնության մեջ, այդ չի նշանակում, որ նա ընդհանրապես ժխտում էր առարկաների և երևույթների որակական փոփոխությունները։ Նա ոչ միայն չէր գտնըվում XVIII դարի մետաֆիզիկների մակարդակի վրա, որոնք ընդհանրապես ժխտում էին զարգացումը բնության մեջ, այլև բարձր էր կանգնած նաև զարգացման սկզբունքը ընդունող XIX—XX դարերի մետաֆիզիկներից։

Դիդրոն հասկանում էր զարգացումը ո՛չ թե մետաֆիզիկական իմաստով, որպես մեծացում կամ փոքրացում, որպես աճ, այլ դիալեկտիկական իմաստով, որպես որակական փոփոխություն, որպես բոլոր նյութական ձևերի ծագում և ոչնչացում։

Նա գրում էր. «Կեցությունն ընդգրկում է պատմությունը, նկարագրումը, ծագումը, պահպանումը և ոչնչացումը» (Дидро, Избр. филос. произвед., стр. 101)։ Ինչպես երևում է, Դիդրոն ո՛չ միայն զարգացումը չի ըմբռնում մետաֆիզիկորեն, այլև այն չի սահմանափակում ֆիզիկանության այս կամ այն բնագավառով։ Զարգացումը նրա հայեցակետով ամբողջ կեցության անքակտելի հատկությունն է։ Հետաքրքրական է, որ Դիդրոն զարգացման պրոցեսում ընդունում է նաև պահպանման որոշակի մոմենտ, այլ կերպ չէր լինի հենց իր զարգացման պրոցեսը, քանի որ, ինչպես նշում է Էնգելսը, շարժման և զարգացման պրոցեսում առանց հարաբերական կայունության չէր լինի որակական որոշություն, չէր լինի ոչ մի տարբերություն նյութական ձևերի միջև։ Զարգացման այդպիսի պատկերացումը վերացական է, քանի որ այն բնության մեջ գոյություն չունի։

Դիդրոն դեմ է մետաֆիզիկական այն պնդմանը, թե ոչինչ նոր բան չկա լուսնի տակ։ Նա գրում էր. «Եթե էակները հաջորդաբար փոխվում են, ձեռք բերելով ամենաաննկատ երանգներ, ապա մշտապես սահող ժամանակը պետք է վերջիվերջո հանդես բերի ամենամեծ տարբերություն շատ հեռավոր ժամանակներում գոյություն ունեցած ձևերի, այժմ գոյություն ունեցող ձևերի և հետագայում գոյություն ունենալիք ձևերի միջև. sil sub sole novum (արևի տակ ոչինչ նոր բան չկա) լոկ նախապաշարմունք է, որը հիմնվում է մեր օրգանների թուլության, մեր միջոցների ոչ կատարյալ լինելու և մեր կյանքի վաղանցիկության վրա» (նույն տեղը, էջ 129)։

Ինչպես տեսնում ենք, Դիդրոն զարգացման պրոցեսում ընդունում է միայն աննկատ փոփոխությունները և ժխտում է թռիչքների գոյությունը։ Այս աննկատ փոփոխությունները որոշ ժամանակի ընթացքում տալիս են նոր որակ։ Նա բացահայտում է բնության մեջ որակական փոփոխությունների մետաֆիզիկական ժխտման արմատը։ Ըստ Դիդրոյի, այդպիսի պատճառի հիմքը նախապաշարմունքն է, որը սնվում է մեր զգայական օրգանների թուլությունից և անկատարյալությունից, մեր կյանքի վաղանցիկ լինելուց։

Այն, որ Դիդրոն զարգացումը չէր ըմբռնում մետաֆիզիկորեն, այսինքն՝ որպես մեծացում կամ փոքրացում, վկայում է պրեֆորմիզմի էության մեր-



digitised by A.R.A.R.@

կացումը նրա կողմից, որը պնդում է, թե կենդանի օրգանիզմը մինիատյուրային մասշտաբով գոյություն ունի սեռական բջջի մեջ և որ զարգացումը որոշակի սահմաններում մինիատյուրային մասշտաբի մեծացումն է համապատասխան այդ տեսակի փթթմանը։ Ավելին, պրեֆորմիստները պնդում էին, որ սեռական բջջում պատրաստի ձևով պարունակվում է ո՛չ միայն տվյալ ինդիվիդի նախակերպարը, այլև նրան հաջորդող բոլոր սերունդների նախակերպարը։ Դ' Ալամբերի այն հարցին, «Դուք հետևաբար չե՞ք հավատում նախնական սաղմերի գոյությանը», Դիդրոն պատասխանում է՝ ո՛չ։ Այնուհետև Դիդրոն ծաղրում է պրեֆորմիզմի անհեթեթությունը։ Նա գրում է. «...ոչնչի նման չէ այն բանի պատկերացումը, որ ատոմում պարունակվում է լրիվ ձևավորված փիղը, իսկ այս փղի ատոմում ուրիշ փիղ և այդպես շարունակ մինչև անվերջություն» (Собр. соч., т. I, стр. 371)։ Դ' Ալամբերի հետևյալ հարցը այն մասին, թե առանց դրանց (առանց նախնական սաղմերի) անհնար է բացատրել կենդանիների առաջին սերնդի հանդես գալը, Դիդրոն պատասխանում է. «...Այդ տեղի է ունենում այն բանի հետևանքով, որ դուք ենթադրում եք, թե կենդանիներն եղել են այնպիսին, ինչպիսին մենք տեսնում ենք նրանց այժմ։ Ինչ անմտություն, չէ՛ որ բոլորովին անհայտ է, թե ինչ են իրենցից ներկայացրել նրանք նախկինում, հավասարապես անհայտ է նաև այն, թե ինչպիսին կլինեն նրանք հետագայում» (Նույն տեղը, էջ 372)։

Այսպիսով, Դիդրոն ո՛չ միայն ճիշտ մոտեցավ մատերիայի շարժման աղբյուրի մեկնաբանմանը, ոչ միայն ընդունում էր բնության մեջ տեղի ունեցող որակական փոփոխությունները, այլև հասկացավ, թե ինչի են հանգում այդ փոփոխությունները։ Նրա մոտ գտնում ենք օրգանական աշխարհի էվոլյուցիայի որոշ գաղափարներ։ Ամենից առաջ պետք է նշել, որ Դիդրոն օրգանական աշխարհի զարգացումը կապում էր անօրգանական աշխարհի հետ, ընդ որում բույսերը ծագել են հանքային, իսկ կենդանիները՝ բուսական աշխարհից։ Նա գրում է. «Բուսական աշխարհը հանդիսանում է և եղել է կենդանական աշխարհի առաջացման աղբյուրը՝ ինքը ծագելով հանքանյութերի աշխարհում, իսկ վերջինս առաջացել է համընդհանուր հետերոգենային մատերիայից (Собр. соч., т. 2, стр. 353)։

Ի հակադրություն տեսակների մշտականության մասին մետաֆիզիկական պնդումների, Դիդրոն նկատի ունենալով կենդանիներին, գրում է. «Չպետք է կարծել, թե իբր նրանք միշտ եղել են և մնում են այնպիսին, ինչպիսին մենք նրանց այժմ տեսնում ենք։ Դա անցած հսկայական ժամանակի արդյունքն է...» (Նույն տեղը, էջ 352)։ Ինչպես տեսնում ենք, Դիդրոն ո՛չ միայն ժխտում է տեսակների մշտականությունը, ո՛չ միայն ընդունում է տեսակների առաջացումն ու զարգացումը մինչև այժմ, այլև հավաստում է կենդանական աշխարհի հետագա զարգացումը։ Դա իսկապես հոյակապ էվոլյուցիոն գաղափար է։

Ճշմարիտ է, ինչպես նշեցինք վերևում, Դիդրոն ժխտում էր թռիչքները որակական փոփոխությունների պրոցեսում. նա ժխտում էր թռիչքները նաև նոր տեսակների առաջացման ընթացքում։ Այստեղ զարմանալու ոչինչ չկա։ Այսպես էր պնդում նաև Դարվինը։

Սակայն հանրահայտ է Էնգելսի գնահատականը Դարվինի ուսմունքի մասին։ Ըստ Էնգելսի նրա էվոլյուցիոն ուսմունքը XIX դարի բնագիտության երեք խոշորագույն հայտնագործություններից մեկն է, որոնք բնագիտական հիմք հանդիսացան դիալեկտիկական մատերիալիզմի հանդես գալու համար։ Բացի դրանից, Դարվինի էվոլյուցիոն ուսմունքը, որի մեջ իրենց պատվավոր տեղն



են գրավում Դիդրոյի մինչդարվինյան հանճարեղ կռահումները, ուժեղ հարված հասցրեց օրգանական աշխարհի մասին մետաֆիզիկական հայացքներին։

Դիդրոյի մոտ տեսնում ենք օրգանական աշխարհի ո՛չ միայն ընդհանուր էվոլյուցիայի գաղափարներ, այլև որոշ մտքեր այդ էվոլյուցիայի մեխանիզմի մասին։ Նա ելնում է տեսակների փոփոխականությունից։ Իսկ ինչպե՞ս են տեղի ունենում այդ փոփոխությունները, ինչո՞վ են դրանք պայմանավորված։ Պատասխանելով այդ հարցերին, նա գրում է. «...ընդհանուր կարգն անընդհատ փոփոխվում է։ Ինչպե՞ս այս անկայունության մեջ տեսակի գոյության տևողականությունը կարող է մնալ անփոփոխ» (Նույն տեղը, էջ 525)։ Նշանակում է տեսակների փոփոխությունը պայմանավորված է ընդհանուր կարգի, միջավայրի, բնական պայմանների փոփոխությամբ։ Իսկ այդպիսի փոփոխությունների ժամանակ ո՞ր տեսակներն են անհայտանում և ո՞ր տեսակները մնում։ Դիդրոյի կարծիքով, միջավայրի այդպիսի փոփոխության դեպքում անհետանում են միայն հակասական էակները, ընդ որում հակասական էակներ հասկացության տակ նա հասկանում է այնպիսի տեսակներ, որոնք անընդունակ են հարմարվելու բնության կարգի, կյանքի պայմանների, միջավայրի փոփոխմանը։

Այս առիթով Դիդրոն գրում է. «Դրանք այնպիսին են (խոսքը վերաբերում է հակասական, այսինքն՝ չհարմարվող էակներին — Ժ. Դ.), որոնց կառուցվածքը չի համապատասխանում մնացած տիեզերքին։ Կույր բնությունն արտադրելով նրանց, միաժամանակ ոչնչացնում է, թողնելով միայն նրանց, որոնք կարող են համերաշխ գոյություն ունենալ ընդհանուր կարգերի հետ... (Նույն տեղը, էջ 340)։ Ըստ էության տեղի է ունենում բնական ընտրություն տեսակների միջև։ Կյանքի պայմաններին հարմարվելու անընդունակ տեսակներն իրենց տեղը զիջում են ընդունակներին։

Այսպիսով, Դիդրոն որոշ չափով հասկացավ ո՛չ միայն բնական ընտրության դերը օրգանական աշխարհի տարերային զարգացման բնագավառում, այլև ուշագրավ մտքեր արտահայտեց նաև արհեստական ընտրության դերի, տարբեր էակների ասիմիլյացիայի միջոցով մարդու նոր տեսակների առաջացման վերաբերյալ։ Եվ նա ասում է. «Ես ենթադրում եմ, որ էակների հերթափոխությունը տեղի է ունենում աստիճանաբար, և որ հնարավոր է պատրաստել էակների ասիմիլյացիա, իսկ որպեսզի այդպիսի փորձերում ձեռք բերվի հաջողություն, անհրաժեշտ է սկսել հեռվից և սկզբում աշխատել կենդանիների մերձեցման վրա, նրանց դնելով գոյության միանման պայմանների մեջ» (Նույն տեղը, էջ 442)։

Այդպիսին են օրգանական աշխարհի էվոլյուցիայի մասին Դիդրոյի որոշ գաղափարները։ Նա, կարծես թե ամփոփելով իր հայացքները, տալիս է բնության հետևյալ ընդհանուր պատկերը. «Տիեզերքն անընդհատ ծնվում է և մահանում, ամեն մի վայրկյան նա գտնվում է ծագման և մահացման վիճակում։ Երբեք չի եղել այլ տիեզերք և երբեք չի լինելու մեկ ուրիշը» (Նույն տեղը, էջ 391)։

Դիդրոյի նկարագրած բնության ընդհանուր պատկերը համեմատենք Հերակլիտի ներկայացրած բնության ընդհանուր պատկերի հետ։ Հերակլիտը գրում է. «...Տիեզերքը, որը նույնն է գոյություն ունեցող ամեն ինչի համար, որևէ աստված կամ որևէ մարդ չի ստեղծել, այլ այն եղել է, կա և կլինի օրինաչափորեն բոցավառվող և օրինաչափորեն մարվող հավերժ կենդանի կրակ»



digitised by A.R.A.R.@

(Материалисты Древней Греции, М., 1955, стр. 44): Վ. Ի. Լենինը Հերակլիտի արտահայտած այս միտքը համարում է «Դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքների շատ լավ շարադրանք» (Երկեր, հ. 38, էջ 444): Թվում է, որ ամենևին էլ սխալ չի լինի նույն գնահատականը տարածել Դիդրոյի արտահայտած մտքի վրա: Սա նույնպես վկայում է այն մասին, որ Դիդրոն հեռու չի եղել դիալեկտիկայից:

Դիդրոյի այս և նման այլ դատողությունները հիմք են տալիս պնդելու, որ մինչմարքսյան դիալեկտիկան զարգացել է ո՛չ միայն Հերակլիտի, Հեգելի, այլև Դիդրոյի կողմից: Նա եղել է այն մտածողներից, որը դեռևս XVIII դարում դիալեկտիկական փայլուն մտքեր է զարգացրել:



## ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

Մեր ամսագրի 1965 թ. երրորդ համարում բանավեճի կարգով հրապարակվեց ժուռնալիստ Մ. Հակոբյանի «միայն աշակերտի իրավունքով» գրած «Իմ հույզերից» վերնագրով հոդվածը, որում հեղինակն արծարծում էր նոր սերնդի դաստիարակության մի քանի կարևոր հարցեր: Սակայն ուշագրավ և ճիշտ խորհրդածությունների հետ մեկտեղ, հոդվածագիրը ներկա չլինելով եղելությանը, նկարագրել էր Երևանի Ա. Ս. Պուշկինի անվան դպրոցի 8-րդ Ա. դասարանի աշակերտների մի աննշան միջադեպ և առանց հիմքի վիրավորել իր դրացի Ս. Նազարյանի աշակերտ-որդու ինքնասիրությունը:

Ստուգումից պարզվեց, որ հոդվածը գրելու ժամանակ Մ. Հակոբյանը Ս. Նազարյանի հետ գժտված է եղել բնակարանային հարցով: Հետևաբար, նա իրավունք չուներ խմբագրությունից թաքցնելու քաղաքացի Ս. Նազարյանի հետ ունեցած իր տևական գժտությունը և սուբյեկտիվ միտումով խախտելու ժուռնալիստական էթիկան:

---

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈԽՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Խմբագրության հասցեն՝ Երևան—16

Հեռախոսներ. գլխավոր խմբագիր՝ 7—16—90, պատասխանատու քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 22/VIII 1967 թ.:

ՎՖ 04170 Պատվեր 1670 Տիրաժ 9904 Գինը 25 կոպ.:

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ

### ԼԵՆԻՆԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՄԱՍԻՆ

Մեծ հեղափոխության ձայնը: Ժողովածու: *Մ., Քաղհրատ, 1967, 223 էջ:*

Պետրոգրադի զինվորական-հեղափոխական կոմիտե: *Փաստաթղթեր և նյութեր: 3 հատորով: Հատոր 3, Մ.,* «Наука» *հրատ., 1967, 743 էջ:*

Հոկտեմբերյան հեղափոխության մասին: *Արտասահմանցի մասնակիցների և ականատեսների հիշողությունները: Մ., Քաղհրատ, 1967, 319 էջ:*

Մասսաներին ցույց տրվող կուսակցական ղեկավարության լենինյան սկզբունքները սովետական շինարարության առաջին տարիներին *(1917—1923): Մ.,* «Мысль» *հրատ., 1967, 238 էջ:*

Հոկտեմբերի ուղիով: *Անդրկարպատյան ժողովուրդների պայքարը սոցիալական, ազգային ազատագրության և Սովետական Ուկրաինային վերամիավորվելու համար: Փաստաթղթերի ժողովածու, հ. 5, 1938—1944: Ուժգորոդ,* «Карпаты», *1967, 519 էջ:*

### ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՍՀՄ-ՈՒՄ

Հոկտեմբերից դեպի կոմունիզմի կառուցումը: *Հոդվածների ժողովածու: Մ.,* «Наука» *հրատ., 1967, 399 էջ:*

*ԻԳՆԱՏՈՎՍԿԻ Պ. Ա.—Սոցիալ-տնտեսական փոփոխությունները սովետական գյուղում: Մ.,* «Наука» *հրատ., 1967, 328 էջ:*

*ԿՈՒՄԱՆԵՎ Վ. Ա.—Սոցիալիզմը և համաժողովրդական գրագիտությունը: Անգրագիտության մասսայական վերացումը ՍՍՀՄ-ում: Մ.,* «Наука» *հրատ., 1967, 328 էջ:*

ՍՍՀՄ-ը և միութենական հանրապետությունները 1966 թվականին *(Ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանի կատարման արդյունքների մասին ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների վիճակագրական վարչությունների հաղորդագրություն): Մ.,* «Статистика», *1967, 263 էջ:*

ՌՍՖՍՀ թվերով 1966 թվականին: *Համառոտ վիճակագրական ժողովածու: Մ.,* «Статистика», *1967, 160 էջ:*

### ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԸ

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի տնտեսությունը: *4 հատորով: Հատոր 3: Սոցիալիստական աշխատանքի միջազգային բաժանումը, արտադրության տեղաբաշխումը սոցիալիստական համաշխարհային սիստեմում: Մ.,* «Мысль» *հրատ., 1967, 472 էջ:*

*ԲԵԼՅԱԵՎ ՅՈՒ. Ն., ՍԵՄԵՆՈՎԱ Լ. Ս. — Տնտեսական փոխօգնության խորհրդի (ՏՓԽ) երկրները համաշխարհային էկոնոմիկայում: Մ.,* «Международные отношения», *1967, 189 էջ:*

*ՎԻԿԵՆՏԵՎ Ա. Ի., ՄԻՐՈՇՆԻՉԵՆԿՈ Բ. Պ.—Սոցիալիզմի տնտեսական օրենքներն ու պլանավորումը տնտեսական փոխօգնության խորհրդի երկրներում: Մ.,* «Международные отношения», *1967, 304 էջ:*

Անցյալն ու ներկան: *Եվրոպական երկրների ժողովրդական դեմոկրատիայի պատմությունից: Մ.,* «Наука» *1967, 260 էջ:*

Գյուղացիական փոխօգնությունից դեպի սոցիալիստական գյուղատնտեսությունը ԳԴՀ-ում: *Հեղինակային կոլեկտիվ Գ. Գրյունբերգի ղեկավարությամբ: Թարգմ. գերմաներենից: Մ.,* «Прогресс», *1967, 295 էջ:*

*ԱՏԼԱՍ Մ. Ս.—*Սոցիալիստական երկրների բանկային սիստեմների զարգացումը: *Մ.,* «Финансы», *1967, 240 էջ:*

ԳԻՆԸ 25 Կ.

77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### *ՔԱՌԱՆԻՎ ՀԵԾԱՆԻՎ*

*Փոխանցող մեխանիզմով, տասը տեղանոց կոմպլեքսային քառանիվ հեծանիվ է հնարել ավստրալիացի 17-ամյա ուսանող Դեյվիդ Կլարկը։ Հեծանիվը դիմացկուն է, հեշտ է ղեկավարվում և զարգացնում է մոտ 24 կմ/ժամ արագություն։*

### *ՏԱՔ ԿՈՄԲԱՅՆ*

*Հացահատիկի չորացումը հենց դաշտում սովորաբար կատարում են նախօրոք՝ քիմիական նյութերի օգնությամբ։ Սակայն Գերմանական Դեմոկրատական Հանրապետության մասնագետները հնարել են սրամիտ միջոց՝ չորացումը հնձի հետ միաժամանակ կատարելու համար։*

*Նրանք առաջարկում են օգտագործել կոմբայններ՝ օդային պաղեցմամբ։ Կոմբայնի շարժիչը սառեցնելիս օդը տաքանում է և այդ տաք հոսանքն ուղղում են բույսերի վրա, որը հասցնում է չորացնել հասկերը, նախքան կոմբայնի դանակները կկտրեն դրանք։*

### *ՆՈՐ ԻՆՔՆԱԹԱՓ*

*Բելոռուսական ավտոմոբիլային գործարանը սկսել է թողարկել 27 տոննանոց* БеЛАЗ*—540—Ա մարկայի երկառանցքային ինքնաթափը, որն ունի 27—65 տոննա բեռնատարողություն։ Ավտոմեքենայում տեղադրված է 360 ձիաուժի նոր շարժիչ։*

*Ավտոմեքենան իր որակական ցուցանիշներով, հուսալիությամբ ու երկարակեցությամբ բնավ չի զիջում ամերիկական և ֆրանսիական նույնանման մեքենաներին, որոշ դեպքերում նույնիսկ գերազանցում է դրանց։*

### *ԵՐԿԱՆԻՎ ԼԻՄՈՒԶԻՆ*

*Այդ արտասովոր ավտոմեքենան կառուցվել է Չեխոսլովակիայում։ Չնայած երկանիվ լինելուն, ավտոմեքենան ընթացքի մեջ հավասարակշռությունը պահպանում է գերազանց և դյուրին է ղեկավարվում։ Մեկտեղանոց մեքենայի մաքսիմում արագությունը ժամում հասնում է 25 կիլոմետրի։*

### *ԿԵՆԴԱՆԻ ՀԵՐԲԻՑԻԴՆԵՐ*

*Հերբիցիդներ. այսպես են կոչվում այն նյութերը, որոնց օգնությամբ հողագործները ոչնչացնում են մոլախոտերը։ Վերջերս Հոլանդիայում առաջարկել են դրանք փոխարինել... ճագարներով։*

*Փորձարկումները կատարվեցին պոմիդորի մարգերում։ Չդիպչելով պոմիդորներին, կրծողները ամբողջովին «մաքրեցին» մոլախոտերը, որոնք աճել էին փորձարկվող տեղամասում։*

### *ԻՆՍԵԿՏԻՑԻԴ... ԹՂԹԻՑ*

*Սովորական տպագրական թուղթը պարունակում է նյութեր, որոնք ինսեկտիցիդի նման ունակ են կասեցնելու գյուղատնտեսական վնասատուների զարգացումը։ Գիտնականների կարծիքով այդ նյութերը թղթի մեջ անցնում են հումքից՝ սղոցափայտից։*

*Հնդկաստանի բամբակի պլանտացիաներում Հարվարդի համալսարանի պրոֆեսոր Վիլյամսի կողմից կատարված փորձերի ժամանակ օգտագործվել է թղթից ստացված ինսեկտիցիդ։*

*Պարզվել է, որ նոր միջոցառումը «կուռ վահան է» ամենավտանգավոր վնասատուներից մեկի դեմ, որը Հնդկաստանում խոշոր կորուստներ է պատճառում բամբակի պլանտացիաներին։*

### *ԱՌԱՆՑ ԾԽԻ*

*Անգլիական մասնագետների միջոցով նախագծվել է բարձրարտադրողական աղբակիզիչ, որը ոչ ծուխ է արձակում, ոչ հոտ։ Նրա մեջ քաշող խողովակ չկա, իսկ այրման ժամանակ առաջացող ծուխը, տաք վիճակում մնալով, մտնում է այրման խուցը, ուր մղվում է տաք օդ։ Այդպիսի ապարատի մեջ վառվում է ամեն մի թափոն։*